## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание







# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՈՐՈՇ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ*


Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

(Մոսկվա)


## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՏԵԳՈՐԻԱՆԵՐԻ ԵՐԿՈՒ ԽՈՒՄԲ

Գիտական կոմունիզմի օրենքները երկու խմբի բաժանելու սկզբունքը վերաբերում է նաև նրա կատեգորիաներին։

Ընդհանուր կատեգորիաների խմբին են պատկանում այն կատեգորիաները, որոնք արտացոլում են կապիտալիզմից կոմունիզմին անցնելու պայմաններում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցող զարգացման էական պրոցեսները։ Օրինակ, «սոցիալիստական հեղափոխություն» կատեգորիան արտացոլում է արմատական, որակական վերափոխությունները հասարակության քաղաքական, տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքում։ Գիտական կոմունիզմի ընդհանուր կատեգորիաների խմբին են վերաբերում՝ «անցումային ժամանակաշրջան», «սոցիալիզմ», «կոմունիզմ», «սոցիալիզմի համաշխարհային սիստեմ», «կոմունիստական ֆորմացիա» և այլ հասկացություններ։

Առանձնահատուկ սոցիալ-քաղաքական կատեգորիաներն արտացոլում են կապիտալիզմից կոմունիզմին անցման պայմաններում դասակարգերի, կուսակցությունների, ազգերի, պետությունների, գաղափարախոսությունների փոխհարաբերությունների, ինչպես նաև այդ նույն պայմաններում տեղի ունեցող մյուս սոցիալական պրոցեսների ու երևույթների էությունը։ Կատեգորիաների այդ խմբին են վերաբերում նախ և առաջ՝ «պրոլետարիատ», «միջազգային բանվորական շարժում», «կոմունիստական կուսակցություն», «համաշխարհային շարժում», «ստրատեգիա և տակտիկա», «համաշխարհային հեղափոխական պրոցես», «հեղափոխական իրադրություն», «պրոլետարիատի

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով», № 6։

դիկտատուրա», «սոցիալիստական պետություն», «սոցիալիստական դեմոկ-
րատիա», «Համաժողովրդական պետություն», «կոմունիստական հասարակա-
կան ինքնակառավարում», «սոցիալիստական ինտերնացիոնալիզմ», «ժողո-
վուրդների բարեկամություն», «անհատի բազմակողմանի զարգացում», «կո-
մունիստական հավասարություն»:

Գիտական կոմունիզմի օրենքների ու կատեգորիաների սիստեմը անհրա-
ժեշտ է քննարկել դրանց դիալեկտիկական զարգացման մեջ: Նախ և առաջ
հարկավոր է ընդգծել, որ հեղափոխական ճանապարհով հասարակությունը վե-
րափոխելու և այն կոմունիստական հասարակության վերածելու հիմնական
օրենքի կենսագործման պրոցեսում շատ կատեգորիաներ զգալիորեն փոփոխ-
վում են, խորանում, հարստանում, ծագում են նոր կատեգորիաներ: Այդ ա-
մենն ավելի լիովին են արտացոլում զարգացող իրականությունը: Առանց հաշ-
վի առնելու գիտական կոմունիզմի օրենքների ու կատեգորիաների այդ դիա-
լեկտիկան, կարելի է թույլ տալ երկու կարգի սխալ, որը մերթ կատարվում է
թե՛ գիտական, թե՛ մանկավարժական աշխատանքում:

Ոմանք, հասկացությունը նույնացնելով կատեգորիաների հետ, հրապար-
վում են վերջինների անհարկի հորինմամբ: Հայտնի է, որ «սոցիալիզմ» կա-
տեգորիան արտացոլում է կոմունիզմի առաջին էտապի լինելության և զար-
գացման տարբեր փուլերը՝ «սոցիալիզմի հիմունքները», «սոցիալիզմի կառու-
ցումը հիմնականում», «սոցիալիզմի լիակատար հաղթանակը», «սոցիալիզմի
վերջնական հաղթանակը», «զարգացած սոցիալիստական հասարակություն»:
Ա՛յդ բոլոր հասկացությունները ոչ թե ինքնուրույն կատեգորիաներ են, այլ
արտահայտում են սոցիալիզմի զարգացման տարբեր կողմերն ու ժամանա-
կաշրջանները: Հետևաբար, «սոցիալիզմ» կատեգորիան իր մեջ ընդգրկում է
այդ հասկացությունների ամբողջ գումարը:

Ոմանք էլ, կատեգորիան քննարկելով զարգացումից դուրս, կոմունիստա-
կան ֆորմացիայի լինելության պրոցեսում նոր կատեգորիաների ծագում չեն
տեսնում: Իսկ իրականում տարբեր կատեգորիաներ, ինչպես՝ «պրոլետարիա-
տի դիկտատուրա», «Համաժողովրդական սոցիալիստական պետություն», «կո-
մունիստական ինքնակառավարում»— իրենց ներքին պատմական ու տրամա-
բանական բոլոր կապերով արտացոլում են կոմունիստական ֆորմացիայի
ծագման ու զարգացման խոշոր էտապները: Նույնպես սխալ է ժամանակից
շուտ կոմունիստական ինքնակառավարման անցնելը նոր ֆորմացիայի զար-
գացման սկզբնականստադիայում, որովհետև այն հասարակական կյանքի
կառավարման ձև կլինի կոմունիզմի զարգացման բարձրագույն փուլում մի-
այն: Այդպիսի սխալ են թույլ տալիս հարավսլավյան տեսաբանները, գործնա-
կանում մեծ վնաս պատճառելով սոցիալիզմի շինարարության ընդհանուր
գործին:

Վերը քննարկված երկու խումբ օրենքների ու կատեգորիաների համա
ընդհանուրը նրանց միասնական սոցիալ-քաղաքական բնույթն է: Այլ կերպ ա-
սած, այդ երկու խմբի օրենքներն ու կատեգորիաները ոչ թե զուտ ընդհանուր-
սոցիոլոգիական են և ոչ էլ զուտ տնտեսական, այլ սոցիալ-քաղաքական: Ընդ-
հանուր օրենքների ու կատեգորիաների առաջին խումբը նույնիսկ սոցիալ-
քաղաքական ուղղություն ունի: Օրենքների ու կատեգորիաների այդ երկու
խմբի դիալեկտիկական միասնության մեջ դրսևորվում է գիտական կոմունիզ-



մի սոցիոլոգիական ասպեկտը: Գիտական կոմունիզմն ունի սոցիոլոգիական
ասպեկտ, բայց հատուկ սոցիոլոգիա չէ:

Գիտական կոմունիզմի օրենքների ու կատեգորիաների բնույթից բխում է
Գիտական կոմունիզմի օրենքների ու կատեգորիաների բնույթից բխում է
նաև մարքսիստական սոցիոլոգիայի հետ նրա հարաբերակցության հարցի
պատասխանը: Գիտական կոմունիզմը չի փոխարինում մարքսիստական սո-
ցիոլոգիային, որը հասարակական զարգացման առավել լայն օրենքներ է ու-
սումնասիրում: Գիտական կոմունիզմը հաջողությամբ զարգանալ կարող է այդ
ընդհանուր-տեսական և ընդհանուր-մեթոդոլոգիական բազայի վրա խարսխվե-
լով միայն: Մյուս կողմից, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու արդի
պրոբլեմների գիտական, բեղմնավոր սոցիալական և կոնկրետ-սոցիոլոգիա-
կան հետազոտություն լինել չի կարող առանց հաստատապես հենվելու գիտա-
կան կոմունիզմի տեսության վրա: Փաստերը ցույց են տալիս, որ արդի սո-
ցիալական պրոբլեմները գիտական կոմունիզմից դուրս և հակառակ նրա
սկզբունքների հետազոտելու ամեն մի փորձ անխուսափելիորեն կրախի է
մատնվում:

Ի մի բերելով ասվածը, կարելի է այն կարևորագույն մեթոդոլոգիական
հետևությունն անել, որ գիտական կոմունիզմի օրենքների ու կատեգորիաների
երկու հիմնական խմբերը, փիլիսոփայության ու քաղաքատնտեսության տրվ-
յալների հետ զուգակցվելով, տալիս են կոմունիստական ֆորմացիայի՝ որպես
սոցիալական օրգանիզմի բարձրագույն տիպի, ծագման ու զարգացման ողջ
պրոցեսի ամբողջական լուսաբանումը:

Կոմունիստական ֆորմացիայի կազմավորման ողջ բազմակողմանի պրո-
ցեսը մարքսիզմ-լենինիզմի բոլոր բաղկացուցիչ մասերի ու շատ այլ հասա-
րակական գիտությունների ուսումնասիրության օբյեկտն է: Բայց դրանցից
յուրաքանչյուրն ունի իր առարկան, այդ ընդհանուր օբյեկտի ուսումնասիրման
իր մոտեցումը: Մեր խնդիրն է պարզել գիտական կոմունիզմի յուրահատուկ
առարկան:

## ԴԱՐՁՅԱԼ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԱՌԱՐԿԱՅԻ ԵՎ ՄԵԹՈԴԻ ՄԱՍԻՆ

Գիտական կոմունիզմի օրենքների ու կատեգորիաների երկու խմբերից
տրամաբանորեն բխում է նրա առարկայի ու առանձնահատուկ մեթոդի բնո-
րոշումն ու բնույթը:

Այդ հարցի առթիվ բանավեճերը շարունակվում են և դրանք միանգամայն
փիլիսոփայությանն անհրաժեշտ են գիտական կոմունիզմի առարկայի շուրջը
հատկապես այն պահին, երբ ծավալվում է դրա ուսումնասիրությունն ու դա-
սավանդումը:

Յանկացած գիտության առարկայի բնորոշման դժվարությունն այն է, որ
այն պետք է առավել ընդհանուր լինի և կարելվույն չափ հակիրճ, կարողանա
ընդգրկել ամենագլխավորը և էականը: Գիտական կոմունիզմի առարկայի բնո-
րոշման լրացուցիչ դժվարությունն այն է, որ դա հասկացվում է բառիս լայն և
նեղ իմաստով: Ահա թե ինչու առավել ամփոփ բնորոշման մեջ անհրաժեշտ
է ընդգրկել դրանց միասնությունը:

Գիտական կոմունիզմը մի ուսմունք է կոմունիստական ֆորմացիայի նա-
խապատրաստման, ծագման և զարգացման ընդհանուր և արմատական սո-

ցիալ-քաղաքական օրինաչափությունների մասին: Այդ առավել ընդհանուր բնորոշումը կոնկրետացնելով, լրացնելով և զարգացնելով կարելի է ասել, որ գիտական կոմունիզմը պրոլետարիատի պատմական միսիայի տեսական արտահայտությունն է, ուսմունք՝ բուրժուազիայի դեմ մղվող նրա դասակարգային պայքարի օրենքների, կոմունիստական ստրատեգիայի և տակտիկայի մասին, ուսմունք սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության օրենքների ու ձևերի մասին:

Ինչպես մեկ, այնպես էլ մյուս բնորոշումն արտահայտում են մարքսիզմի երեք բաղկացուցիչ մասերի միասնությունն ու տարբերությունը, գիտական կոմունիզմի իրական տեղը հասարակական գիտությունների սիստեմում: Այդ բնորոշումներում պահպանված է և արդի դարաշրջանին համապատասխան հաշվի է առնված այն, ինչ որ գրել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները գիտական կոմունիզմի էության մասին: Հիշեցնենք նրանց մի քանի ասույթները, որոնց մեջ ընդգրկված են գիտական կոմունիզմի տարբեր կողմերը:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները գիտական կոմունիզմը բնորոշելիս միշտ ելակետ են ունեցել պրոլետարիատի պատմական միսիան: Այդ գլխավոր գաղափարն առանձնապես մանրամասն են մշակել Մարքսն ու Էնգելսը 1847 թվականին, երբ մարքսիստական միասնական ուսմունքի ձևավորման պրոցեսում դրա սոցիալ-քաղաքական մասը, այսինքն՝ գիտական կոմունիզմը, պատմական իրադարձությունների ընթացքով առաջին պլան քաշվեց: Այդ ժամանակին են վերաբերում Ֆ. Էնգելսի Կոմունիստական ճավատամքի խորճրդանիշը, որ միայն վերջերս է գտնվել, Կոմունիզմի սկզբունճները, Մարքսի և Էնգելսի ստեղծած առաջին ծրագրային փաստաթուղթը՝ Կոմունիստական կուսակցության մանիֆեստը: Հարկավոր է նշել, որ գիտական կոմունիզմի անմիջական պրոբլեմներով՝ դ.ա բնորոշմամբ, ապագա կոմունիստական հասարակության նպատակներով ու խնդիրներով, դրա բնորոշ գծերով այդ ժամանակաշրջանում Ֆ. Էնգելսը շատ է զբաղվել: Արդեն 1847 թվականին նա տալիս է գիտական կոմունիզմի կլասիկ բնորոշումը: «Կոմունիզմը,— գրում է Էնգելսը,— որքանով որ այն հանդիսանում է տեսություն, այս պայքարում (բուրժուազիայի դեմ,— Յ. Ստեփանյան) դիկտատուրայի դիրքորոշման տեսական արտահայտությունն է և պրոլետարիատի ազատագրման պայմաններում տեսական ամփոփումը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 282):

Գիտական կոմունիզմի էության վերաբերյալ այդ գլխավոր գաղափարը կարմիր թելի պես անցնում է Մարքսի և Էնգելսի բոլոր ստեղծագործություններով: Անտի Դյուրինգ գրքում, որտեղ առաջին անգամ տրվել է մարքսիզմի ծավալուն բաժանումը երեք բաղկացուցիչ մասերի, գիտական կոմունիզմը բնորոշվում է որպես ուսմունք պրոլետարիատի՝ կապիտալիզմի գերեզմանափորի և կոմունիզմ կերտողի պատմական միսիայի մասին: Պատկերավոր կերպով բնորոշելով կապիտալիզմից դեպի կոմունիստական հասարակություն կատարվող անցումը, որպես թռիչք անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորություն, Էնգելսն այնուհետև գրում է. «Կատարել աշխարհն ազատող այդ սխրագործությունը՝ այսպիսին է արդի պրոլետարիատի պատմական կոչումը: Հետազոտել պատմական պայմանները, իսկ դրա հետ միասին նաև այդ հեղաշրջման բուն էությունը և այդպիսով բացատրել այդ սխրագործության կատարմանը կոչված բայց այժմ ճնշվող դասակարգին նրա



սեփական գործի պայմաններն ու բնույթը. այսպիսին է գիտական սոցիալիզմի խնդիրը, որը հանդիսանում է պրոլետարական շարժման տեսական արտահայտությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 295):

Գիտական կոմունիզմի էությունը բնորոշելիս ամենից առաջ ընդգծվում է նրա դասակարգային, պրոլետարական ծագումը, որը կանխորոշում է հասարակության կոմունիստական վերափոխման գլխավոր ուղին: Գիտական կոմունիզմի այդ դասակարգային բնորոշման սերտ առնչությամբ Էնգելսն անհրաժեշտ էր համարում առանձնացնել նրա գլխավոր քաղաքական ֆունկցիան մարքսիստական ուսմունքի ընդհանուր սիստեմում: Իր կյանքի վերջին տարիներին Էնգելսը նորից էր ընդգծում, որ մարքսիզմին, որպես միասնական և զարգացող ուսմունքի, հարկավոր է մոտենալ «փիլիսոփայական, տնտեսական և քաղաքական տեսակետից» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 22, стр. 204—205):

Վ. Ի. Լենինը նույնպես գիտական կոմունիզմը դիտում էր որպես մարքսիզմի քաղաքական ուսմունք, որպես բուրժուազիայի դեմ մղվող պրոլետարիատի դիկտատուրայի դասակարգային պայքարի տեսություն: «Մարքսիզմի երեք աղբյուրները և երեք բաղկացուցիչ մասերը» հոդվածում Լենինը գրում է, որ գիտական կոմունիզմը հանձին արդի պրոլետարիատի գտել է այն հասարակական ուժը, որն իր սոցիալական դրության շնորհիվ պետք է և ունակ է ջնջելու հինը և ստեղծելու նորը» (В. И. Ленин, ПСС, т. 23, стр. 47):

Մարքսիստական-լենինյան միասնական ուսմունքը փիլիսոփայական, տնտեսական և սոցիալ-քաղաքական մասերի բաժանելը սևեռվել է ՍՄԿԿ ծրագրում:

Գիտական կոմունիզմի առարկայի հետ սերտ միասնության մեջ է նաև դրա մեթոդը: Ինչպես և ցանկացած գիտության մեթոդ, այն հետևանք է, նախ և առաջ, աշխարհի ճանաչման և փոփոխման համընդհանուր դիալեկտիկական մեթոդի կիրառման: Դրա հետ մեկտեղ այն արտացոլում է գիտական կոմունիզմի առարկայի, օրենքների և կատեգորիաների առանձնահատկությունը: Գիտական կոմունիզմի առանձնահատկությունից և դրա օրենքների ու կատեգորիաների երկու խմբից տրամաբանորեն հետևում են դրա մեթոդի երկու հիմնական առանձնահատկությունները:

Առաջին՝ կոմպլեքսային մոտեցում կոմունիզմի համար մղվող պայքարի բոլոր պրոբլեմներին: Այդպիսի մոտեցումը պահանջում է հաշվի առնել հեղափոխական ճանապարհով աշխարհի վերափոխման տնտեսական, քաղաքական և գաղափարախոսական խնդիրների միասնությունը: Դրանում է գիտական կոմունիզմի մեթոդի տարբերությունը իրականության նկատմամբ փիլիսոփայական, ընդհանուր սոցիոլոգիական և տնտեսական առանձնահատուկ մոտեցումից: Գիտական կոմունիզմի մեթոդի այդ առանձնահատկությունը կարելի է ցույց տալ կոմունիստական շինարարության հետևյալ հիմնական խնդիրները վերլուծելու օրինակով: Այսպես, եթե տնտեսագիտությունը մշակում է հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու ուղիներ, ապա գիտական կոմունիզմը կոմպլեքսայնորեն է մոտենում կոմունիստական շինարարության հիմնական խնդիրների լուծմանը: Գիտական կոմունիզմը նախ և առաջ ուղիներ ու մեթոդներ է մշակում բարձրացնելու կուսակցական ղեկավարության արդյունավետությունը հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում՝ դրանց միասնության և փոխադարձ կապի մեջ: Հենց այս տեսանկյու-

նից էլ կարելի է սոցիալիզմի ժամանակ կառավարման պրոբլեմները մշակելիս քննարկել քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի ֆունկցիաների միասնությունն ու տարբերությունը։ Քաղաքատնտեսությունը մշակում է հասարակական արտադրության կառավարման պրոբլեմները, իսկ գիտական կոմունիզմը կոմպլեքսայնորեն մշակում է սոցիալական կառավարման հիմնական պրոբլեմների ողջ գումարը։

Գիտական կոմունիզմի մեթոդի երկրորդ առանձնահատկությունը՝ սոցիալ-քաղաքական ասպեկտն է սոցիալիստական և կոմունիստական հասարակության ստեղծման ու զարգացման համար մղվող պայքարի գիտական ղեկավարության բազմապիսի պրոբլեմների ու խնդիրների հետազոտման մոտեցման մեջ։

Հայտնի են Լենինի բազմաթիվ ցուցումները՝ նոր հասարակության շինարարության բոլոր խնդիրները լուծելիս ոչ միայն էկոնոմիկայի որոշիչ դերի, այլև ճիշտ քաղաքականության, գիտականորեն հիմնավորված քաղաքական մոտեցման դերի մասին։ Կոմպլեքսային մոտեցումը դիալեկտիկորեն զուգորդել անցյալի, ներկայի և ապագայի ճանաչման և ուսումնասիրման գերազանցապես սոցիալ-քաղաքական ասպեկտի հետ. այդպիսին է գիտական կոմունիզմի մեթոդի էությունը։ Դա է գիտական կոմունիզմի ամենաբարդ տեսական և գործնական պրոբլեմների անսխալական լուծման անհրաժեշտ երաշխիքը։

Այդպիսի զուգորդման օրինակ են կուսակցության հիմնական խնդիրները, որոնք ժողովրդական մասսաներին մոբիլիզացնում են սոցիալիստական և կոմունիստական շինարարության արմատական պրոբլեմների լուծման համար։ Ներկայումս այդպիսի գլխավոր խնդիրը, ինչպես ասված է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվում, ողջ հասարակական արտադրության և աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացումն է։ Դա է հիմնական օղակը կոմունիստական շինարարության արդի բոլոր խնդիրների շղթայում։

## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀՐԱՏԱՊ ՈՐՈՇ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

ՍՄԿԿ և եղբայրական կուսակցությունների կոլեկտիվ ջանքերով գիտական կոմունիզմի արմատական հարցերն ավելի ստեղծագործաբար զարգացան XXIV համագումարում։ Հատուկ նշանակություն ունի բանվոր դասակարգի պատմական միսիան, կոմունիստական կուսակցության ղեկավար դերի աճման պրոբլեմների մշակումը։

Խորացված և ճշգրտված է սցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունների սպեցիֆիկ առանձնահատկությունների բնութագրությունը։ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սոցիալիզմի կառուցման հաջողությունները մեծապես կախված են հասարակական զարգացման գործում ընդհանուր և ազգային առանձնահատուկի ճիշտ զուգորդումից։ Այժմ մենք ոչ միայն տեսականորեն գիտենք, այլև գործնականում համոզվել ենք, որ սոցիալիզմի ուղին, նրա գլխավոր գծերը որոշվում են այն ընդհանուր օրինաչափություններով, որոնք հատուկ են բոլոր սոցիալիստական երկրների զարգացմանը։ Մենք գիտենք նաև այն, որ ընդհանուր օրինաչափությունների գործողությունը դրսևորվում է կոնկրետ պատմական պայմաններին, ազգային առանձնահատկություններին համապատասխանող տարբեր



ձևերով։ Չհենվելով ընդհանուր օրինաչափությունների վրա, հաշվի չառնելով յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական յուրահատկությունը, անհնար է սոցիալիզմ կառուցել։ Առանց այդ երկու գործոնները հաշվի առնելու անհնար է նաև ճիշտ զարգացնել սոցիալիստական պետությունների հարաբերությունները (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը կուսակցության XXIV համագումարին, «Հայաստան» հրատ., 1971 թ., էջ 8)։

Այդ դրույթների լույսի տակ ակներև է դառնում սոցիալիզմի զանազան մոդելների մասին նացիոնալիստական կոնցեպցիաների սնանկությունը։ ՍՄԿԿ և եղբայրական կուսակցությունների կոլեկտիվ ջանքերով ավելի լիովին են բացահայտված արդեն հաղթանակած և կառուցված սոցիալիզմի հիմնական օրինաչափություններն ու գլխավոր գծերը, կոնկրետացված են սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման ուղիները։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ առանձնացված է «Սովետական հասարակության սոցիալ-քաղաքական զարգացումը և կուսակցության խնդիրները» երրորդ հատուկ մեծ հատվածը, որտեղ քննարկված են գիտական կոմունիզմի այնպիսի առանձնահատուկ, այժմեական պրոբլեմներ, ինչպես՝ սովետական հասարակության սոցիալական կառուցվածքում կատարված փոփոխությունները և սովետական ժողովրդի միասնության ավելի ամրապնդումը, սովետական պետության ամրապնդումը և սցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, նոր մարդու ձևավորումը։ Համագումարում մեծ ուշադրություն նվիրվեց գաղափարախոսական պայքարի այնպիսի սոցիալ-քաղաքական պրոբլեմների վրա, ինչպես աջ և ձախ ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի, հակակոմունիզմի և հակասովետիզմի քննադատությունն է։ Իր զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց։ «Առաջվա նման հրատապ է աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի դեմ ուղղված պայքարը։ Ներկայումս բուրժուական գաղափարախոսներն, իրենց պրոպագանդան սոցիալիզմի ու կոմունիստական շարժման դեմ մղվող պայքարում, ամենից հաճույքով օգտագործում են հենց նացիոնալիստական միտումները և դրանց հատկապես այն մասը, որոնք հակասովետիզմի ձև են ընդունում» (Լ. Ի. Բրեժնև, Կենտկոմի հաշվետու զեկուցումը, «Հայաստան» հրատ., 1971 թ., էջ 32)։ Հակակոմունիզմի բոլոր դրսևորումների դեմ անհաշտ պայքարը կապված է աշխարհի ոչ սոցիալիստական մասի առաջադիմական զարգացման նկատմամբ աճող համաշխարհային սոցիալիզմի ազդեցության բազմազան ուղիների ու ձևերի լայն ցուցադրման և խոր բացահայտման հետ։

XXIV համագումարի նյութերի լույսի տակ մեծ հետաքրքրություն է ներկայացնում արդի հասարակական զարգացման որոշ հրատապ պրոբլեմների, սոցիալիզմի և կոմունիզմի պրոբլեմների քննարկումը։

Նախ և առաջ քննարկենք կոմունիստական ֆորմացիայի լինելության, նրա գլխավոր փուլերի, ինչպես նաև սոցիալիստական և կոմունիստական հասարակության հիմնական էտապների ու աստիճանների կենտրոնական պրոբլեմը։ Ներկայումս այդ պրոբլեմը, որը թելադրված է նոր հասարակության շինարարության պրակտիկայով, քննարկվում է սոցիալիզմի համարյա թե բոլոր երկրներում։ Ամբողջությամբ վերցրած այդ պրոբլեմի ճիշտ լուծման հետ մեկտեղ առանձին երկրներում տեսական բնագավառի աշխատողների մեջ տարբեր տեսակետներ կան մի շարք էական հարցերի շուրջը։ Ոմանք պնդում են, թե կոմունիստական ֆորմացիան, իր ծագումն առնելով պրոլետարիատի դիկտա-

տուրայի հաստատման պահից, կազմավորվում է առանց հատուկ սոցիալիստական փուլի զարգացման։ Ըստ այդ ըմբռնման, անցումային շրջանը ձգվում է մինչև կոմունիզմի բարձրագույն փուլը, իսկ սոցիալիզմը, կոմունիզմի առաջին փուլը դուրս է մղվում։

Ոմանք էլ գտնում են, թե սոցիալիստական փուլն առանձին ինքնուրույն հասարակական-տնտեսական ֆորմացիա է։ Երրորդները գտնում են, թե միաժամանակ կարելի է կառուցել կոմունիստական ֆորմացիայի երկու փուլ՝ և՛ սոցիալիզմ և՛ կոմունիզմ։ Այդ տեսական տարաձայնությունները կարելի է հաղթահարել մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործաբար կիրառման և նոր աշխարհի ծննդյան պատմական պրոցեսի իմաստավորման հիման վրա։

Սովետական Միության հսկայական տարածությունների վրա նոր հասարակության ստեղծման պատմական փորձը հաստատեց և հարստացրեց գիտական կոմունիզմի այն հիմնական դրույթը, որ կոմունիստական ֆորմացիան իր զարգացման ընթացքում երկու գլխավոր փուլեր է անցնում, որ սոցիալիստական հասարակության կառուցմամբ, նրա անշեղ ամրապնդմամբ ու զարգացմամբ սոցիալիզմը աստիճանաբար վերաճում է կոմունիզմի։ ՍՄԿԿ ծրագրում տեսականորեն ամփոփված է այդ փորձը։ Դրա հետ մեկտեղ մեր երկրում և սոցիալիզմի մյուս երկրներում նոր հասարակության զարգացումը վկայում է, որ կոմունիզմի երկու փուլերից ամեն մեկը ծագում է ոչ միանգամից, այլ անցնում է մի շարք հետևողական աստիճաններ։ Եվ գիտական կոմունիզմի այդ կենսական հարցը նույնպես քննարկվում է սոցիալիզմի շատ երկրներում։ Մեզ թվում է, որ Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների փորձի հիման վրա կարելի է խոսել սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության հետևյալ երեք հետևողական էտապների մասին։ Դեռևս անցումային ժամանակի պայմաններում ստեղծվում են սոցիալիզմի հիմքերը կամ բազան։ Անցումային ժամանակաշրջանն ավարտվում է սոցիալիստական հասարակության հիմքերի կառուցմամբ։ Այնուհետև տեղի է ունենում կոմունիզմի առաջին փուլի շինարարությունն ավարտելու երկարատև պրոցեսը, սոցիալիզմի ամրապնդումն ու կատարելագործումը, նրա հասունության նվաճումը, ինչը որ պայմաններ է ստեղծում կոմունիստական հասարակության հաջող շինարարության համար։

Կոմունիզմի բարձրագույն փուլի շինարարության պատմական պրոցեսը կանցնի մոտավորապես նույն հետևողական երեք աստիճանները։

Կոմունիստական ապագայի առաջնեկը՝ Սովետական Միությունը, այժմ գտնվում է զարգացած սոցիալիզմի փուլում և ընթանում է կոմունիզմի տնտեսական, սոցիալական և հոգևոր հիմունքների ստեղծման ուղիով, ամրապնդելով նրա նյութատեխնիկական բազան։ Հետագայում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակություն։

Այնուհետև կսկսվի լիակատար կոմունիստական հասարակության շինարարության ավարտման ժամանակաշրջանը։

Գիտական կոմունիզմի հաջորդ խոշոր պրոբլեմն ապագայի մարդկային հասարակության, կոմունիզմի տարածման հիմնական պատմական էտապների կանխատեսությունն է։

Այդ պրոբլեմով զբաղվել են դեռևս ուտոպիստ-սոցիալիստները, այնուհետև, գիտականորեն՝ մարքսիստ-լենինյանները։ Բուրժուական գաղափարախոսները, երկար ժամանակ անտեսել, դեռ ավելին՝ քամահրել են այդ պրոբ-



լեմը, քանի որ նրանք ելնում էին այն համոզմունքից, թե կապիտալիզմը բացարձակապես անձեռնմխելի է։ Ներկայումս մենք ապագա մարդկային հասարակության կանխագուշակության փութաջանություն ենք նկատում։ Անընդհատ փոփոխվում են մոդայական կոնցեպցիաները։ Յուրաքանչյուր միջազգային սոցիոլոգիական կոնգրեսում առաջին պլան է քաշվում որևէ նոր կոնցեպցիա։ VII կոնգրեսում գործի դրվեց «պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիան։ Տարբերություններ թվացնելով հանդերձ, բուրժուական կոնցեպցիաների էությունը մեկ է՝ հավերժացնել կապիտալիզմը, նույնիսկ կապիտալիզմ բառանունից հրաժարվելու գնով*։

Վերջապես, գիտական կոմունիզմի այժմեական պրոբլեմ է գիտատեխնիկական հեղափոխության սոցիալ-քաղաքական հետևանքների պարզումը։ Համաշխարհային գիտատեխնիկական հեղափոխությունը հակադիր սոցիալական հետևանքներ ունի կապիտալիզմի և սոցիալիզմի պայմաններում։ Իր զարգացման ընթացքում այդ հեղափոխությունը քայքայում է կապիտալիզմի հիմքերը, սրելով նրա հին և նոր հակասությունները։ Մինչդեռ սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացը զարգացման լայն ասպարեզ է ստանում, արագացնելով կոմունիզմի շինարարության պրոցեսը։

Գիտատեխնիկական հեղափոխության ծավալման հետ կապված բազմապիսի պրոբլեմներից առաջնակարգ հետաքրքրություն է ներկայացնում գիտական կոմունիզմի արմատական առանձնահատուկ պրոբլեմը՝ բանվոր դասակարգի դրության փոփոխումը, նրա դերի աճումը արդի աշխարհում։ Այդ հանգուցային հարցի շուրջն անհաշտ պայքար է մղվում կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև։

Ինչպես հայտնի է, առանց բանվոր դասակարգի ծագման ու զարգացման չէր լինի մարքսիզմը, այդ թվում նաև գիտական կոմունիզմը, չէին լինի այն արմատական սոցիալական վերափոխումները, որոնք տեղի ունեցան XX դարում։ Առանց բանվոր դասակարգի հետագա զարգացման, նրա ղեկավար դերի բարձրացման անհնարին է կապիտալիզմի վերջնական ջախջախումը և կոմունիզմի լիակատար հաղթանակը։ Պատահական չէ, որ անցյալում և այժմ կոմունիզմի հակառակորդները տարբեր կողմերից՝ աջից ու ձախից, փորձում են աղճատել բանվոր դասակարգի էությունն ու բնույթը, նրա դերը հասարակության մեջ։

Աջ օպորտունիստների համար մեթոդոլոգիական տեսակետից բնորոշը հասարակության մեջ բանվոր դասակարգի դերը զուտ քանակական տեսակետից քննումն է։ Կաուցկին, բաուերները և նրանց նմանները բանվոր դասակարգի դերը կապում էին բնակչության կազմում նրա քանակի հետ։ Նրանք սոցիալիզմին անցնելու ոչ մի հնարավորություն չէին ընդունում, եթե երկրում պրոլետարիատը չէր գերակշռում։ Վճռական պայքար մղելով այդ օպորտունիստական կոնցեպցիայի դեմ, Վ. Ի. Լենինը մշտապես ընդգծում էր, որ պրոլետա-

* Սոցիալական պրոցեսների կանխագուշակման պատմության ու տեսության արդի ֆուտուրոլոգիական կոնցեպցիաների քննադատության մասին կարելի է կարդալ «Ապագա մարդկային հասարակությունը» գրքում, որը մեր կուսակցության XXIV համագումարի առթիվ տպագրության է պատրաստել գիտական կոմունիզմի սեկտորը։ Այդ գրքում շարադրված է նաև մեր կոնցեպցիան ամբողջ մարդկության կոմունիստական ապագայի և նրա լինելության ու տարածման պատմական էտապների առանձնահատկությունների մասին։

րիատի սոցիալիստական կարողությունը «պատմական շարժման մեջ անհամեմատ ավելի է, քան նրա մասը բնակչության զանգվածում»։

Ձախ օպորտունիստների, աղանդավորության, անարխիզմի շատ տարատեսակությունների համար բնորոշ է բանվոր դասակարգի քանակական դերի անտեսումը ընդհանրապես։

Պայքարելով երկու ճակատում, գիտական կոմունիզմը դիալեկտիկորեն է քննում բանվոր դասակարգի քանակական և որակական կողմերը, բանվոր դասակարգի քանակությունը, նրա կազմակերպվածությունը, էկոնոմիկայի և աշխատավորների ողջ զանգվածի հետ նրա կապը վերցնում է իր միասնության մեջ։ Բուրժուազիայի համեմատությամբ, բանվոր դասակարգի քանակությունը, աշխատավորների զանգվածի հետ նրա կապն անհամեմատ ավելի է կապիտալիզմի ամեն մի երկրում։

Բանվոր դասակարգի նկատմամբ դիալեկտիկական-մատերիալիստական մոտեցումը պահանջում է հաշվի առնել նրա զարգացման մեջ եղած երկու հակասական տենդենցները։

Առաջին՝ դա այն հեղափոխական նկրտումն է, որ արտահայտվում է կապիտալիզմի դեմ բոլոր աշխատավորների պայքարը գլխավորելու, սոցիալիստական հեղափոխության, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության համար նրանց համախմբելու և առաջնորդելու անհաղթահարելի ուժի մեջ։ Այդ նկրտումը կոմունիստական կուսակցության ծագման ու զարգացման, հասարակության հեղափոխական փոխակերպման մեջ բանվոր դասակարգի ղեկավար դերի օբյեկտիվ հիմքն է։

Երկրորդ՝ դա օպորտունիստական նկրտումն է կապիտալիզմի պայմաններին հարմարվելու, այնտեղ հանդուրժելի տեղ բռնելու բանվոր դասակարգի մի որոշակի մասի ձգտումներում՝ չդիպչելով նրա հիմքերին։ Այդ նկրտումն օպորտունիստական և ռևիզիոնիստական կուսակցությունների ու հոսանքների ծագման ու գոյության օբյեկտիվ հիմքն է։ Խորապես սխալ կլիներ այդ տենդենցները բացարձակ դարձնել և չտեսնել հեղափոխական շարժման հիմնական ուղիները։ Այդ երկու հակադիր տենդենցների միջև մղվող պայքարն էլ հենց կազմում է միջազգային բանվորական շարժման պատմության բովանդակությունը։ Շատ երկրներում հաղթում է առաջինը՝ հեղափոխական տենդենցը, որոշ երկրներում՝ մի առ ժամանակ՝ օպորտունիստականը։

Առաջին տենդենցի տիրապետության և հաղթանակի առավել ցայտուն արտահայտությունը Հոկտեմբերյան հեղափոխության և սոցիալիզմի հաղթանակն է մեր երկրում, իսկ այնուհետև՝ համաշխարհային սոցիալիստական համագործակցության մյուս երկրներում։ Սրանից հետևում է, որ երկու տենդենցների պայքարում անխուսափելիորեն հաղթանակում է պրոլետարիատի պատմական միսիան խորապես և լիովին արտահայտող հեղափոխական տենդենցը։

Ուսումնասիրելով գիտական կոմունիզմի ծագման ու զարգացման ավելի քան հարյուրամյա պատմությունը և կանխատեսելով ամբողջ աշխարհում նրա լիակատար հաղթանակի հետագա հեռանկարները, մենք պետք է կրկին ու կրկին իմաստավորենք բանվոր դասակարգի պատմական միսիան։ Բանվոր դասակարգի, որպես կոմունիզմ կերտողի, պատմական միսիայի վերաբերյալ գիտական կոմունիզմի արմատական դրույթը լիովին հաստատվեց և ավելի հարստացավ արդի աշխարհի հեղափոխական վերափոխման պրոցեսում։ Պատմությունը ցույց է տվել, որ ապագա հասարակության մասին մինչմարքսյան



բազմաթիվ ուտոպիական տեսությունները կրախի մատնվեցին այն պատճառով, որ դրանք հանձին արդյունաբերական պրոլետարիատի չէին տեսնում այն միակ հասարակական ուժը, որն իր սոցիալական դրության շնորհիվ ունակ է միավորելու աշխատավոր մասսաներին և կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նրանց տանել դեպի սոցիալիզմի և կոմունիզմի լիակատար հաղթանակը։ Հասարակության հեղափոխական վերափոխման, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության համար մղվող պայքարի պրոցեսում, հատկապես գիտատեխնիկական հեղափոխության ծավալման կապակցությամբ, անշեղորեն աճում է բանվոր դասակարգը ինչպես քանակական, այնպես էլ որակական տեսակետից, որը, բնականաբար, ավելի է բարձրացնում նրա ստեղծագործական և ղեկավար դերը։

Սովետական Միության օրինակով աշխարհն առաջին անգամ տեսավ բանվոր դասակարգի աճող ստեղծագործական դերը՝ հին հասարակարգը հեղափոխական ճանապարհով ոչնչացնելու, նոր հասարակություն ստեղծելու և ներքին ու արտաքին թշնամիների բազմաթիվ հարձակումներից պաշտպանելու նրա դերը։ Բանվոր դասակարգի ստեղծագործական ուժի շնորհիվ նախ և առաջ ստեղծվեց սոցիալիստական պետության ինդուստրիալ և պաշտպանական հզորությունը, տեխնիկական բազա՝ հողագործության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի սոցիալիստական վերափոխության համար։ Եվ այժմ էլ, գիտատեխնիկական առաջընթացի հարաճուն պայմաններում նախ և առաջ բանվոր դասակարգի ձեռքերով ու բանականությամբ են զարգանում ինդուստրիայի այն առաջատար ճյուղերը, առանց որոնց հնարավոր չէ վճռել կոմունիզմի կառուցման գլխավոր և որոշիչ խնդիրը՝ նրա նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ Բանվոր դասակարգի ստեղծարար դերն անտեսող մարդիկ ընդգծում են միայն գիտության դերը, հատկապես «մեծ գիտության» գործիչների դերը, գիտակցաբար թերագնահատելով տեխնիկայի նշանակությունը, տեխնիկան ստեղծողների և կիրառողների դերը։ Մինչդեռ մենք ապրում ենք գիտատեխնիկական, այլ ոչ թե միայն գիտական առաջընթացի ժամանակաշրջան։ Գիտության և տեխնիկայի այդ հարաճուն օրգանական միասնությունից անխուսափելիորեն հետևում է աշխատանքի ու գիտության մարդկանց կապերի ուժեղացումը, որի մասին հանճարեղ խորաթափանցությամբ խոսում էր Վ. Ի. Լենինը։ Նա ընդգծում էր, որ նոր հասարակության անցնելու պայմաններում «գիտության ներկայացուցիչների և բանվորների համագործակցությունն ի վիճակի է ոչնչացնելու աղքատության, հիվանդությունների, կեղտի ամբողջ ճնշումը...», որ «գիտության ներկայացուցիչների, պրոլետարիատի և տեխնիկայի հանդեպ ոչ մի խավար ուժ չի դիմանա» (В. И. Ленин, ПСС, т, 40, стр. 189):

Մեր ժամանակում արտասահմանի խավար ուժերը փութաջանաբար փորձում են գիտության ներկայացուցիչներին հակադրել բանվոր դասակարգին, ողջ ժողովրդին։ Այդ նպատակով նրանք նորից են ծնունդ տալիս վաղուց ջախջախված «ստեղծագործ ընտրախավի և անտարբեր մասսայի» վերաբերյալ կոնցեպցիային։ Աղճատված մեկնաբանելով գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքները, բուրժուական գաղափարախոսները համառաբար տարածում են այն գաղափարիկը, թե բանվոր դասակարգը վերանում է և ծագում է «բանականների նոր դասակարգը», որը որոշում է աշխարհի ժողովուրդների ճակատագիրը։

Այդ գաղափարիկը առավել ցայտուն արտահայտություն է ստացել բուրժուական սոցիոլոգիայի «վերջին խոսքում»՝ այսպես կոչված «պոստինդուստրիալ հասարակության» տեսության մեջ։ Այդ տեսությունը հնարողներից մեկը, ամերիկյան սոցիոլոգ Դանիել Բելը, ԱՄՆ-ի գիտությունների ակադեմիային առընթեր 2000 թվականի հանձնաժողովի ղեկավարը; գրում է, թե պոստինդուստրիալ հասարակությունը «կազմակերպվում է գիտության ու գիտելիքների շուրջը», թե այդ բանում գլխավորողի և ղեկավարի դերը կզբաղեցնեն բանականները՝ «գիտնականները, մաթեմատիկները, տնտեսագետներն ու սոցիոլոգները, այն բանական տեխնոլոգիայի պրակտիկները, որը ծնվում է հաշվիչ մեքենաների երևան գալու շնորհիվ»։

«Բանականների նոր դասակարգի» վճռական և ղեկավար դերի վերաբերյալ այդ այսպես կոչված տեսությունից խիկույն ևեթ կառչեցին չեխոսլովակյան հակասոցիալիստական և ռևիզիոնիստական ուժերը, որոնք, ժխտելով բանվոր դասակարգի և նրա կոմունիստական ավանգարդի ղեկավար դերը, փորձում էին երկրում հաստատել յուրահատուկ «Բանականների դիկտատուրա»։

Դժբախտաբար այդ կոնցեպցիային արձագանքեցին մեր որոշ, տեսականորեն թույլ թարգացած գիտական աշխատողները։ Որպես օրինակ կարող է ծառայել աշխարհագրական գիտությունների դոկտոր, գրող Ի. Ն. Զաբելինի «Մարդ և մարդկություն» գիրքը, որ լույս է ընծայել «Սովետսկի պիսատել» հրատարակչությունը 1970 թվականին։ Գրքի համառոտ բնութագրում ասվում է, թե հեղինակը «ամենաբարդ պրոբլեմներ» է բարձրացնում։ Մինչդեռ Զաբելինը վերանայում է գիտական կոմունիզմի՝ մարքսիզմի կողմից վաղուց վճռված և հասարակական պրակտիկայով հաստատված արմատական դրույթները։ Խոսքը վերաբերում է բանվոր դասակարգի ղեկավար դերին և մտավորականության տեղին՝ ընդհանրապես, հասարակական զարգացման, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարությանը՝ մասնավորապես։

Ի. Զաբելինն իր երկար դատողություններում գրում է. «Բանվոր դասակարգը իշխանության գլուխ անցավ, որպեսզի պատմական թատերաբեմում իր տեղը զիջի մտավորականությանը՝ մտավորականների դասակարգին։ Մենք ընտելացել ենք մտավորականությանն անվանել որպես խավ, այլ ոչ որպես դասակարգ, և դա արդարացի է անցյալի նկատմամբ։ Հայտնի է, սակայն, որ այժմ մեր կյանքի բոլոր կողմերը ներթափանցած գիտությունը դարձել է անմիջական արտադրաուժ, որ ծագել է հզոր բանական ինդուստրիա և արդեն այդ պատճառով էլ մտավորականությունը դադարել է «խավ» լինել (էջ 166)։ Այնուհետև, խորացնելով և պաշտպանելով այդ սխալական դրույթը, հեղինակն ընդգծում է, որ «այժմ գլխավորող հեղափոխական դասակարգը, որը ծագել է տիեզերական դարագլխի նախօրեին, դարձել է մտավորականությունը, որի բազմապիսի գործունեությունը փոփոխվում և նախորոշում է երկրների և ժողովուրդների ճակատագիրը»։

Գրքի եզրափակման մեջ, դարձյալ անդրադառնալով իր նույն այդ «հայտնագործությանը», հեղինակը խրատում է. «Բանական ինդուստրիան մտավորականությանը դարձնում է այն միակ դասակարգը, որին պատկանում է ապագան» (էջ 236)։

Մարքսիստ-լենինյանների համար առանձին դժվարություն չի ներկայացնում ցույց տալ այդ խորապես սխալական կոնցեպցիայի տեսական սնանկությունը, որ շրջում է մեր ոչ միայն գիտական, այլև գեղարվեստական մտավորականության որոշ ներկայացուցիչների շրջանում։



Նման կոնցեպցիաների պատճառները բացահայտելու համար նախ և առաջ անհրաժեշտ է իմանալ երկու սիստեմների պայքարի օրենքները։ Մի կողմից, գնալով ավելի է աճում մարքսիստական գաղափարախոսության ազդեցությունը կապիտալիստական աշխարհի ինտելիգենցիայի առաջադիմական մասի վրա, որոնք հասկանալով մեր դարաշրջանի իմաստը, լքում են բուրժուազիային և մշտապես անցնում բանվոր դասակարգի կողմը։ Մյուս կողմից, այդ պայքարում բուրժուական գաղափարախոսությունն ազդեցություն է թողնում մեր հասարակության առանձին անկայուն տարրերի վրա։ Դա ակներև է Ի. Ն. Զաբելինի գրքի վերը բերված դրույթներից։

Բացի այդ սոցիալ-դասակարգային պատճառներից, մտավորականության նոր ղեկավար դասակարգի վերաբերյալ գոյություն ունեն նաև սխալական կոնցեպցիաների իմացաբանական արմատներ։ Բացարձակացնելով մտավորականության, հատկապես այսպես կոչված «մեծ գիտության» ներկայացուցիչների գնալով աճող նշանակությունը և այդ դերը խզելով բանվոր դասակարգի և բուրժուազիայի, սոցիալիզմի և կոմունիզմի միջև համաշխարհային ասպարեզում տեղի ունեցող պայքարից, տեսականորեն չպատրաստված առանձին մարդիկ հանգում են այն խորապես սխալ և քաղաքականապես վնասակար հետևությանը, թե վերանում է բանվոր դասակարգի ղեկավար դերը և առաջանում է մտավորականության նոր ղեկավար դասակարգը։

Պաշտպանելով գիտական կոմունիզմի արմատական դրույթները բանվոր դասակարգի ղեկավար դերի մասին, մենք դրա հետ մեկտեղ ճանաչում և բարձր ենք գնահատում խիկական ժողովրդական սոցիալիստական մտավորականության պրոգրեսիվ դերը։

Կապիտալիզմի երկրներում առաջավոր մտավորականությունն ավելի ու ավելի է մերձենում բանվոր դասակարգին, ընդարձակելով և խորացնելով իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի սոցիալական բազան։ Սոցիալիզմի երկրներում ժողովրդական մտավորականությունը կյանքի նոր ձևերի ակտիվ իրավահավասար ստեղծողն է։ Դեռ ավելին, գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում մտավորականության ակտիվության վերընթաց է տեղի ունենում սոցիալիզմի և կոմունիզմի տեխնիկական բազայի ստեղծման, տիեզերքի հաջող յուրացման գործում։ Այստեղից հարց է ծագում. մեթոդոլոգիապես ինչպե՞ս ճիշտ գնահատել առաջավոր մտավորականության սոցիալ-քաղաքական դերն արդի աշխարհում՝ ընդհանրապես, սոցիալիզմի պայմաններում՝ մասնավորապես։ Առաջադիմական մտավորականությունը ավելի ու ավելի աճող ակտիվություն է ցույց տալիս բանվոր դասակարգին նրա պատմական միսիան իրականացնելու՝ կոմունիզմի լիակատար հաղթանակը նվաճելու գործում։

Այս հետևությունը բխում է դասակարգային պայքարի բազմադարյա զարգացման դասերից, տարբեր երկրների աշխատավորների հաղթանակների ու պարտությունների դասերից, չեխոսլովակյան և այլ երկրների իրադարձությունների դասերից, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության խոր իմացությունից։ Ղեկավարվելով գիտական կոմունիզմի տեսությամբ, կոմունիստական կուսակցությունը բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորներին վստահորեն առաջ է տանում դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակը։

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ՀԱՄԱԿԵՐՊՎՈՒՄ Է*

Բ. Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Կապիտալիզմի համակերպումը սոսկ «ներքին միջավայրի» սահմաններում «ինքնակարգավորում» չէ։ Այն առավել ևս չի կարելի հանգեցնել տեղայնորեն-բարձր կազմակերպված արտադրական մեխանիզմի ձևավորմանը, քանի որ վերջինս չի լուծում հասարակական և կապիտալիստական սիստեմի համաշխարհային կառուցվածքի արմատական հակասությունները։ Բուրժուական սեփականության տիրապետության պայմաններում սոցիալական կառուցվածքի «ինքնակարգավորման» հնարավորությունները չափազանց սահմանափակ են։ Դրանք սպառվում են բուրժուական կարգերի չիրացված կարողությունների կիսատ-պռատ շրջանակներում։

Արտահայտելով հասարակական զարգացման օբյեկտիվ պրոցեսի պահանջները, կապիտալիզմի հարմարումը չի հանգում միայն արտադրության կազմակերպման հարցերին։ Թեև դրանցից առավել էականները խիստ ազդեցություն են թողնում հասարակության կյանքի տարբեր կողմերի վրա, դրանով, այնուամենայնիվ, չի սպառվում կապիտալիզմի հարմարվելու երևույթների ամբողջ հաջորդաշարքը։ Այն, ինչ տեղի է ունենում նյութական արտադրության ասպարեզում, որպես յուրահատուկ «կիսաշրջանակաձև», բացահայտվում է հասարակության կյանքի մյուս ոլորտներում։

Սակայն պատմական «պարադոքսն» այն է, որ հսկայական չափով զարգացնելով հասարակական աշխատանքի արտադրողական ուժերը, կապիտալիզմը չի կարող հաղթահարել սեփական սիստեմի բացասական հետևանքները։

Ո՛չ ձեռքբերված մակարդակը, ո՛չ առավել ևս, արտադրության համակենտրոնացման հեռանկարները համատեղելի չեն կապիտալիստական սեփականության հետ։ Վերջինը շատ թե քիչ հետևողական կարգավորման չի ենթարկվում։ Իսկ արտադրության նվաճված մակարդակի առկայությամբ, տեղի ունեցող գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում՝ առանց կարգավորման, կարգավորումից դուրս, կամ սոցիալական կառուցվածքները՝ իրենց ֆունկցիաներով հանդերձ, նույնիսկ մինչև մի որոշ սիստեմ ունեցող մակարդակի հասնելով (ազգային և միջազգային մասշտաբներով), ապագա չունի հասարակական կառուցվածքի ո՛չ մի տիպ և ո՛չ մի ձև։

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով», № 6։



Դա առավել զտված ձևով է արտահայտվում կապիտալիզմի բարձր զարգացած երկրներում։ Ի հակադրություն ինտեգրացիայի ուժերի, որոնք առանձնահատուկ կերպով են արտահայտում արտադրության համակենտրոնացման օբյեկտիվ պրոցեսի պահանջները, այստեղ գործում են ապաինտեգրացիայի գործոնները։ Մասնավոր սեփականության վրա խարսխված այդ կենտրոնախույս ուժերը բացառում են արդի կապիտալիզմի պատմականորեն խարխլված շենքի տարբեր մասերի կառուցվածքա-ֆունկցիոնալ սինխրոնիզացումը։ Այստեղից էլ՝ փոխադարձաբար բացառող սկզբունքների փոխադարձաբար ժխտումը (ինտեգրացիա և ապաինտեգրացիա), բազմապատկելով իմպերիալիստական հակասությունների «շիթերն» ու «ներկերը», խորացնում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը։

Դրա հետ միասին այն պայմանները, որոնց սահմաններում տեղի է ունենում կապիտալիզմի հարմարվելն ըստ լայնքի, առավել տարողականությամբ, ավելի հարուստ է «ներքին միջավայրից»։ Դրանք ներառնում են նաև «արտաքին միջավայրը»։ Վերջինս, ներծծելով այն ամենը, ինչը որ բարձր զարգացած կապիտալիզմի (աշխարհի բացարձակ մեծ մասի) երկրների շեմին ավելի բովանդակալից է «ներքին միջավայրից»։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվորական և կոմունիստական շարժումը, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարն օբյեկտիվորեն համախմբվում են հակաիմպերիալիզմի բևեռում։ Կազմելով առաջավոր ուժերի բնապատմական դաշինք, նրանք նոր իրադրություն են ստեղծում աշխարհում։

«Ներքին միջավայրում» կատարվող տեղաշարժերը հարմարումներ չեն ապահովում, այդ սիստեմի համար հեռանկարներ չեն ստեղծում։ Դասակարգային տիրապետությունը պահպանելու և նույնիսկ հավերժացնելու, մասսաներին իր գաղափարական և քաղաքական վերահսկողության տակ պահելու իմպերիալիստական բուրժուազիայի ձգտումը դետերմինացնում է նրա ակտիվ հարմարվողականացնող գործունեությունը։ Հսկայական չափով աճում է սուբյեկտիվ գործոնի դերը փոփոխվող «արտաքին միջավայրի» նկատմամբ կապիտալիզմի հարմարվելու գործում։

Կապիտալիստական դասակարգի հարմարվողական գործունեությունը, որ հաշվվում է պատմության շատ տասնամյակներով, հարստանում է բովանդակությամբ և նշանակությամբ։ Եթե մինչիմպերիալիստական դարաշրջանում, երբ բուրժուազիան խորտակում էր ֆեոդալական պետության շենքը, նրա էությունը դրական էր, ապա այժմ տեղի է ունենում բնորոշ կերպափոխություն։ Կառավարող դասակարգերի գործունեությունը վերածել, դարձել է բացասական, իր սուր ծայրով ուղղվելով դեպի սոցիալիզմ ընթացող մարդկության դեմ։ Այն մաքառում է բուրժուական սիստեմն ինքնաբավ դարձնելու համար։ Իմպերիալիստական բուրժուազիայի հարմարվողական գործունեությունը արագացնելով սոցիալական պրոցեսները, օբյեկտիվորեն մոտեցնում է կապիտալիստական ֆորմացիայի վերջնական խորտակումը։

Կապիտալիզմը աշխարհի նոր պայմաններին հարմարեցնելու գործում կառավարող շրջանները վճռականապես օգտագործում են իմպերիալիստական պետությունը։ Օլիգարխիական վերնախավերի իշխանության այդ հզոր լծակի միջոցով տիրապետող դասակարգերը հասարակական կյանքի բոլոր ոլորտնե-

րում լայն միջամտությամբ փորձում են կարգավորման ենթարկել արդի կա-
պիտալիզմի բարդ փոխհարաբերություններն ու ֆունկցիաները։ Իմպերիալիս-
տական պետության պարտականությունների մեջ մտնում է մի դեր, որն ան-
համադրելի է այն դերին, որ բուրժուական պետությունը կատարում էր կլասիկ
կապիտալիզմի դարաշրջանում։ Էականորեն ընդարձակելով պետության ոլոր-
տը, ֆինանսական օլիգարխիան, կարգավորման պրոցեսներին իր անմիջա-
կան մասնակցությամբ փորձում է անսասան պահել իր դասակարգային շա-
հերը։ Այդ նույն նպատակներով փորձում են իմպերիալիստական պետության
հարմարվողական գործունեությանը հաղորդել համապարփակ և բազմակող-
մանի բնույթ։

Բուրժուական պետությունը միշտ էլ միջամտել է տնտեսական կյանքին։
Բայց նա երբեք համակերպողի ֆունկցիա չի կատարել, քանզի առաջներում
երբեք այնպիսի իրադրություն չի եղել, որի սահմաններում առանց հարմարվե-
լու անհնարին լիներ ոչ միայն արտադրության զարգացումը, այլև նրա պարզ
վերարտադրությունը։ Ո՛չ տեղայնացած արտադրությունը (առանձին ձեռնար-
կություն կամ ֆիրմա), ո՛չ էլ, ամբողջությամբ վերցրած, կապիտալիստական
արտադրությունը պետության անմիջական խնամակալության կարիքը չէին
զգում։ «Ինքնակարգավորման» ռեալ հնարավորություններ գոյություն ունեին։
Այժմ, սակայն, դրությունը շեշտակիորեն փոխվել է։ Առանց պետության մի-
ջամտության, ընդ որում, ակտիվ և արմատական միջամտության, կապիտա-
լիստական արտադրությունը դարձել է անհնարին։ Եվ արդեն առհասարակ բա-
ցառվում է նրա աճման շատ թե քիչ զգալի տեմպերի ապահովումը։ Արտա-
դրության մասշտաբները, հատկապես դրանց կարողությունները, դամված
մնալով կապիտալիստական շուկային, միակ ելքը որոնում են պետական կար-
գավորման մեջ, որ կենսագործվում է հանուն շահագործողների շահերի։

Ուստի և բնական են իմպերիալիստական երկրների կառավարող շրջան-
ների փորձերը՝ պետության, պետական կարգավորման միջոցով կանխելու կա-
պիտալիստական սիստեմի անկումը տնտեսական տեսակետից, ապահովելու
իմպերիալիզմի արտադրողական ուժերի զարգացումը։

Դեռևս ցարական Ռուսաստանը նկատի ունենալով, Լենինը գրում էր, որ
պետությունը «արդեն այն ժամանակ վերահսկում, կարգավորում է արտադրու-
թյունը՝ հօգուտ մագնատների, հարուստների»։ Մեր օրերում այդ պետական-
մոնոպոլիստական տենդենցը խիստ ուժեղանում է կառավարող ընտրախավի
նպատակասլաց գործունեությամբ։ Դա տեղի է ունենում, առաջին, որպես իմ-
պերիալիզմի արձագանքում արդի արտադրողական ուժերի պահանջներին, ու-
ժեր, որոնց լիակատար զարգացման համար անհրաժեշտ է սոցիալիստական,
որակապես բարձր արտադրահարաբերությունների մակարդակ։ Երկրորդ, որ-
պես իմպերիալիզմի դիրքերի հաստատման միջոց հակադիր սոցիալական և
համաշխարհային սիստեմների միջև մղվող պայքարի սրման պայմաններում,
երբ տնտեսական բնագավառում իմպերիալիզմի ետ մնալը հավասարազոր
կլիներ կապիտալիստական սիստեմի պարտությանը՝ տեղի ունեցող վիթխարի
սոցիալ-տեխնիկական հեղափոխության ֆոնի վրա։

Պետական-մոնոպոլիստական տենդենցի հնարավորությունների օգտա-
գործումը մեծ դեր խաղաց կապիտալիզմի ետպատերազմյան զարգացման
գործում։ Սոցիալիզմի ամբողջ դեմոկրատական ազգերի ազատագրական
շարժման դեմ կռվելու համար իմպերիալիստական բուրժուազիան շատ ջան-



քեր է թափել, շատ միջոցներ վատնել։ Մանրելով հասարակական կյանքի բո-
լոր ոլորտներում, նա մոբիլիզացրել է հսկայական նյութական միջոցներ,
մոնոպոլիաների ուժերը սերտորեն միահյուսել է պետության ուժերի հետ և հա-
սել տնտեսական աճի արագացրած տեմպերի, հատկապես 50-ական թվական-
ների վերջերից մինչև 70-ական թվականների սկիզբն ընկնող ժամանակաշրջա-
նում։ 60-ական թվականներին հիմնական կապիտալիստական երկրների ազ-
գային համախառն եկամտի աճը հասավ տարեկան 4—5%-ի։ Զգալի արդյունք-
ների հասնելով գիտության և տեխնիկայի ասպարեզում, ԱՄՆ-ն մեծացրեց իր
տնտեսական պոտենցիալը։ Երկրի ազգային արդյունքի աճը վերջին հինգ տա-
րիներին կազմեց 18%։

Այդպիսին է հիմնական կա՛պիտալիստական երկրների տնտեսական զար-
գացման պատկերը, որպիսի հանգամանքը որոշակի չափով պետական-մոնո-
պոլիստական տենդենցի գործողությունների հետևանք է։ Կապիտալիստական
վերարտադրությանը, շուկայական տատանումներին, աշխատանքի և կապի-
տալի միջև եղած հարաբերություններին պետության միջամտության ձևով ար-
տահայտված պետական-մոնոպոլիստական տենդենցը մի շարք երկրներից
բացի, ունի նաև երկու էական ոլորտներ տանող ելք։ Առաջին, դեպի գիտա-
տեխնիկական հեղափոխություն տանող և գիտությունը անմիջական արտա-
դրողական ուժ դարձնող ոլորտը և, երկրորդ, դեպի արտադրության համա-
կենտրոնացում տանող և կապիտալի կենտրոնացման օբյեկտիվ պրոցեսներն
անշեղորեն զարգացնող ոլորտը՝ ազգային էկոնոմիկայի սահմաններում և վեր-
ջինից դուրս (ինտերնացիոնալացում, ընդհուպ մինչև ինտեգրացիա)։

Այդ երկու բնութագրական երևույթների դերի և դրանցում պետության
գրաված տեղի մասին համոզչորեն վկայում են հետևյալ թվերը. Վերջին 60 տա-
րում գիտնականների և ինժեներների թիվը 75 անգամ ավելի արագ է աճել,
քան աշխարհի բնակչությունը։ 1950-ից մինչև 1969 թ. սկիզբը գիտության վրա
կատարված ծախսերը աճել են ԱՄՆ-ում 3 միլիարդից մինչև 20—25 միլիարդ
դոլար, Արևմտյան Եվրոպայում՝ 2-ից մինչև 11 միլիարդ դոլար, ինչը որ համա-
պատասխանաբար կազմում է պետական ծախսերի 21 և 20 տոկոսը։

Բուրժուական պետության մասնակցությամբ ինտենսիֆիկացվում են ար-
տադրության ու կապիտալի համակենտրոնացումն ու կենտրոնացումը։ Ընդ
որում՝ ոչ միայն առանձին երկրի սահմաններում։ Տեղի է ունենում տարբեր
երկրների արտադրության ու կապիտալի փոխներթափանցում։ Այդ է վկա-
յում, մասնավորապես, ամերիկյան կորպորացիաների արտասահմանյան մաս-
նաճյուղերի տարեկան արտադրանքի արժեքի աճը։ Եթե 1966 թվականին այդ
արժեքը արտահայտվում էր 110 միլիարդ դոլար գումարով, ապա 1969 թվա-
կանին այն հասավ 200 միլիարդ դոլարի։ Արևմտյան Եվրոպայում Միացյալ
Նահանգների ուղղակի մասնավոր ներդրումները 1960 թ. մինչև 1969 թ. սկիզ-
բըն ընկնող ժամանակաշրջանում ավելացան 3,9 անգամ։ Լատինական Ամե-
րիկայի, Ասիայի և Աֆրիկայի երկրների լեռնահանույթային և մետալուրգիա-
կան արդյունաբերության մեջ ամերիկյան ներդրումները աճեցին 20%-ով, իսկ
մշակող արդյունաբերության մեջ՝ 2 անգամ։ Արդեն 1966 թվականին լատի-
նա-ամերիկյան երկրների արդյունաբերական արտադրանքների արտածման
41%-ը արտադրվել էր ԱՄՆ-ի «տրանսնացիոնալ» ֆիրմայի դուստր ձեռնար-
կություններում։ «Տրանսնացիոնալ» արդյունաբերական-ֆինանսական միա-
վորումների բուռն աճը վկայում է արդի արտադրաուժերի հանրայնացումը,

այլև այն, որ ինտեգրացիոն պրոցեսները չեն սպառվում միջազգային միավորումների մասնակիցների մոնոպոլիստական խմբերով: Նրանք գործնականապես ներառնում են բոլոր իմպերիալիստական տերությունների մոնոպոլիաները և դրանց «պետականացման» տարբեր մակարդակներում զարգանում են համաշխարհային կապիտալիստական սիստեմի նաև այլ մասերում:

Կյանքի կոչելով արդի արտադրաուժերի վիթխարի զարգացմամբ և փոփոխություններ առաջացնելով կապիտալիզմի միջազգային արտադրահարաբերություններում՝ ինտեգրացիոն պրոցեսներն արագանում են գիտատեխնիկական առաջադիմության պահանջներով, խոշոր տեխնիկա-տնտեսական նվաճումներով և աշխատանքի միջազգային բաժանման մեջ կատարված տեղաշարժերով: Այդ վերջին գործոնները իրենց հերթին կազմում են արտադրության միջազգային մասնագիտացման ու ինտերնացիոնալացման նոր ձևերի ծագման և զարգացման օբյեկտիվ հիմքը՝ առավել բարդ գիտատեխնիկական խնդիրներ լուծելու համար: Իբրև դրա օրինակ են ծառայում եվրոպական մի շարք երկրների ուժերի միավորումը՝ համատեղ կերպով բազմատեղանոց ռեակտիվ ինքնաթիռներ կառուցելու նպատակով, գերձայնային «Կոնկորդ»-ի անգլո-ֆրանսիական համատեղ արտադրությունը, ԳՖՀ, Անգլիայի և Նիդերլանդների համագործակցությունը հարստացված ուրանի արտադրության գործում և այլն:

Մեր օրերում իմպերիալիստական պետության գլխավոր սոցիալական ֆունկցիան ավելի լայն է և բովանդակալից, քան դա կար պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման ժամանակներում: Պետական-մոնոպոլիստական տենդենցն այսօր՝ իմպերիալիստական պետության անմիջական մասնակցությունն է ամբողջ կապիտալիստական էկոնոմիկայի վերարտադրությանը, հետևապես՝ նաև ծառայությունը մասնավոր սեփականության սկզբունքներին: Իսկ կապիտալիստական էկոնոմիկայի կարգավորումը ոչ այլ ինչ է, քան պետության կողմից կապիտալիստական արտադրության և կապիտալիստական սիստեմի հարմարեցում արդի արտադրաուժերի բարձրությանը՝ հանուն հիմնական արտադրամիջոցների մասնավոր կապիտալիստական սեփականության ամրապնդման: Ինչպես ընդգծում էր ԱՄՆ-ի խոշորագույն բիզնեսի ժուռնալ «Ֆորչուն»-ը, բոլոր «խոսակցությունները «ուղղություն տվող էկոնոմիկայի» վերաբերմամբ, որոնք երբեմն խրախուսվում են իրենց վաշինգտոնյան ղեկավարների պնդումներով, հասցրել են այն կեղծ պատկերացումներին, թե այդպիսի էկոնոմիկա նվաճել կարելի է ֆեդերալ իշխանությունների օգնությամբ: Արագ տնտեսական աճը (մի կողմ թողնելով մեծ պատերազմները) դեռևս կախված է մասնավոր էկոնոմիկայի ներսում գործող ուժերից»:

Չնայած նրան, որ պետական-մոնոպոլիստական հարաբերությունները դառնում են իմպերիալիստական կապիտալիզմի առավել հիմնական առանձնահատկությունների թիվը, իսկ պետական-մոնոպոլիստական տենդենցները անշեղորեն ուժեղանում են մեր օրերում, կապիտալիզմի էությունը չի փոխվում:

Նույնիսկ առավել զարգացած կապիտալիստական պետությունները, չկարողացան խուսափել լուրջ տնտեսական ցնցումներից: ԱՄՆ-ը, օրինակ, 1960—1965 թվականների համեմատաբար բարենպաստ կոնյունկտուրայից հետո մտան տնտեսական աճի դանդաղման մի շրջան, որը 60-ական թվականներին վերաճեց հերթական տնտեսական ճգնաժամի՝ որն ամենատևականն էր



երկրում երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանում: Ներկա տարվա սկզբին երկրում անգործության էր մատնված բոլոր արտադրակարողությունների շուրջ քառորդ մասը: Էկոնոմիկայի զարգացումը ցիկլայնությունից չխուսափեց այնպիսի երկրում, ինչպես Ճապոնիան, որի արդյունաբերական արտադրանքի աճման տեմպերը անցած տասնամյակում ամենաբարձրն են եղել ամբողջ կապիտալիստական աշխարհում:

Պետության հարմարվողական գործունեությունը կապիտալիզմի էկոնոմիկան չբուժեց նաև այլ հիվանդություններից: Վերջին տարիներին նշվել են կապիտալիզմի վալյուտային-ֆինանսային սիստեմի լուրջ ճգնաժամ, ինֆլյացիայի և գների աճ, բյուջետային դեֆիցիտի մեծացում կապիտալիստական աշխարհի առաջավոր երկրում՝ ԱՄՆ-ում: Պետական գործողությունների ծավալուն սիստեմը չկարողացավ կանխել գործազրկությունը: Զարգացած կապիտալիզմի երկրներում ներկայումս հաշվվում է մոտ 8 միլիոն գործազուրկ: ԱՄՆ-ում գործազրկությունը 1971 թվականին հասավ երկրի ինքնագործ բնակչության ընդհանուր թվի 6%-ին:

Պետական մոնոպոլիստական տենդենցը, դրա դրսևորումները միջպետական հարաբերություններում՝ պետական մոնոպոլիստական ինտեգրացիայի պրոցեսները, համաշխարհային սոցիալիզմի դեմ մղվող պայքարում ջանքերը միավորելու իմպերիալիստների դասակարգային շահագրգռվածության մերկացումը և իմպերիալիստական պետությունների համապատասխան գործողությունները չվերացրին իմպերիալիստական պետությունների միջև եղած հակասությունների պայքարը: 70-ական թվականների սկզբներին պարզորոշ դրսևորվեցին իմպերիալիստական մրցակցության հիմնական գծերը: ԱՄՆ—Արևմտյան Եվրոպա (նախ և առաջ «ընդհանուր շուկայի» երկրների վեցյակը)—Ճապոնիա: Սրանց միջև ավելի ու ավելի սուր տնտեսական և քաղաքական պայքար է ծավալվում՝ Եվրոպայից և Ճապոնիայից շատ ապրանքների ներմուծման արգելման, եվրոպական երկրների կողմից ամերիկյան կապիտալի շահագործողական նկրտումներին հակադրելու ձևով:

Դարաշրջանի հիմնական հակամարտ ուժերի՝ բանվոր դասակարգի և իմպերիալիստական բուրժուազիայի, նրանց ստեղծած սոցիալական ինստիտուտների ու ռեժիմների որակապես նոր հարաբերությունները ժամանակակից կապիտալիզմի կառավարողներին ստիպում են վերանայել պայքարի մեթոդները: Կապիտալիզմի պատմական նախաձեռնության կորուստը բնորոշող նոր իրականությունը կանխորոշում է նոր լուծումների անհրաժեշտությունը: Բռնության միջոցով դասակարգային տիրապետության ուղղագիծ, ավանդույթային իրականացումը բացահայտեց իր սնանկությունը: Իսկ բռնության որակապես նոր միջոցների՝ մասսայական ոչնչացման զենքի ստեղծումը, այլև այն փաստը, որ այդ զենքին տիրապետում են հակամարտ կողմերը, հարցերի անհետաձգելի լուծում են պահանջում: Վերջինների սոցիալական հետևանքները պայմանավորվում են դրանց գործողությունների լուսապատկերի լայնությամբ: Նրանք «աշխատում են»՝ փորձեր կատարելով լուծելու կապիտալիզմի, նրա ներքին ու արտաքին զարգացման բոլոր հակասությունները:

Այստեղից էլ՝ հարկադրական տեղաշարժերը կառավարող իմպերիալիստական դասակարգի գործունեության մեթոդներում. շրջադարձ՝ մերկապարանոց դասակարգային բռնությունից դեպի նրա ձևերի երկատումը: Չհրաժարվելով հրամայական ավանդույթային ձևերից, իմպերիալիզմը 50-ական թվա-

կանների կեսերին սկսեց մշակել իր դասակարգային տիրապետությունն իրականացնելու ձևերի նոր, ճկուն, առաձգական տեսություն, սքողելով իր ներքին քաղաքականության շահագործողական և արտաքին քաղաքականության ագրեսիվ բնույթը։ Ընդ որում, եթե դասակարգային հարկադրանքի ավանդույթային ձևերի իրականացնելու գործում իմպերիալիզմի կառավարող շրջանները խիստ հետևողական են, ապա նրանց գործունեության նոր ձևերի իրականացման ընթացքում նրանց հաղթահարում է երկչոտությունը։ Եվ եթե հանգամանքները թույլ են տալիս, նրանք պատրաստակամությամբ ետ-ետ են գնում անսահմանափակ բռնության ծեծված արահետով։

Այնուամենայնիվ դասակարգային պայքարի՝ մասսայական հեղափոխական շարժման վերաճելու հանդեպ իր ունեցած սարսափի մեջ իմպերիալիստական բուրժուազիան հարկադրված է ճկունություն ցուցաբերել։ Ներքին քաղաքականության մեջ նա ծանրության կենտրոնը բացարձակ հավելյալ արժեքի արտադրությունից տեղափոխում է հարաբերական հավելյալ արժեքի արտադրության ոլորտ։ Ուշադրությունը սևեռելով աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորմանը, աշխատանքի հարկադրական ռիթմերի, նրա նորմավորման ու վարձատրության հատուկ սիստեմի կիրառմանը, գործնականապես կազմակերպում է աշխատավորների «գիտական շահագործումը» գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օգնությամբ։ Իսկ երբ ուժեղանում է պրոլետարական հակաիմպերիալիստական ալիքը, բուրժուազիան հանդես է գալիս աննշան, բայց լայնորեն ազդարարվող մասնակի սոցիալական զիջումներով, բոլոր գույների օպորտունիստների աջակցությամբ ձեռք է բերում «տեղատվություն», ժամանակավոր, թեկուզ և անկայուն հավասարակշռություն։

Սակայն դա սոցիալական «անհողմություն» չի ապահովում։ Բանվոր դասակարգի գլխավորությամբ աշխատավորների գրոհն ուժեղանում է։ Ընդ որում այժմ այդ գրոհն ուղղվում է ոչ միայն կապիտալիստների առանձին խմբերի, այլև պետական-մոնոպոլիստական տիրապետության ամբողջ սիստեմի դեմ։ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և Իտալիայում, ԳՖՀ-ում և Ճապոնիայում դասակարգային պայքարը հասնում է բարձր չափի լարվածության, իր շարքերում ընդգրկելով հակամոնոպոլիստական շարժման մեջ միավորված աշխատավորների ավելի լայն խավեր։ Այդ պայքարի թափը տարակուսանք չի առաջացնում, որ արդի կապիտալիզմի միջնաբերդերում բանվոր դասակարգի այժմյան գոտեմարտերն անխուսափելիորեն կհասցնեն հիմնական վերափոխությունների, որ իմպերիալիզմի հարմարվողական գործունեությունը չի կարող խափանել մյուս աշխատավորների հետ դաշնակցած բանվոր դասակարգի իշխանության հաստատմանը։

Արդի աշխարհի իրականությունը հարկադրում է իմպերիալիստական տերություններին, ամենից առաջ Միացյալ Նահանգներին՝ տանջալիորեն վերագնահատելու ետպատերազմյան արտաքին քաղաքական կուրսի որոշ արժեքները։ Սովետական Միության, մյուս սոցիալիստական երկրների հաջողություններից շշմած իմպերիալիզմի զորակայանը, սոցիալիզմի հետ հարաբերությունները հավորելիս զրկվեց ռազմական հզորությունը, «ատոմային դիվանագիտությունը», «ուժի քաղաքականությունը» արդարացնելուց։ Դանդաղ և իմպերիալիզմի համար տանջանքով սկսվեց նոր արտաքին քաղաքական կոնցեպցիաների հորինումը։ Իսկ 60-ական թվականների կեսերին մշակվեց Միաց-



ցյալ Նահանգների նոր արտաքին քաղաքականություն։ Նրա գերակշռող մոտիվը հարմարվողականության երկու ուղղություններն են։

Առաջինը՝ գլխավորապես ըստ մեթոդների և ձևերի հարմարվելն է, որը նախատեսում է միջազգային հարաբերություններում լարվածությունը ապահովելու, ռազմական ավանտյուրաները շարունակելու կուրսի իրագործման հնարամիտ եղանակներ։ Երկրորդը՝ հայտնի է բուն քաղաքականության խմբագրությանը, իսկ արդի աշխարհի իրականության հաշվառումը՝ ըստ ձևի։ Բայց այնպես ստացվեց, որ ԱՄՆ-ում կողմնորոշվեցին ոչ թե բանակցությունների միջոցով վիճելի հարցերը լուծելու ուղղությամբ, այլ ռազմական մեքենայի «կիրառումն» ընդլայնելու, բազմաթիվ ռազմա-քաղաքական բլոկներում դաշնակիցների զինված ուժերի օգտագործման ու ամրապնդման ուղիներ որոնելու ուղղությամբ։ Դրա հետ միասին, նրանք քիչ ջանքեր չեն ներդրել երկրի ներսում օպոզիցիան խեղդելու և ձեռքերի ազատություն ապահովելու միջազգային ագրեսիայի քաղաքականության մեջ։

ԱՄՆ այդպիսի ոչ ռեալիստական արտաքին քաղաքական կուրս է անցկացնում Հարավ-արևելյան Ասիայում, Վիետնամում, Մերձավոր Արևելքում. շարունակվում է արաբա-իզրայելական կոնֆլիկտի բորբոքումը, լարվածություն պահպանելով ստրատեգիական սպառազինման մրցավազքում, Սովետական Միության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցում, եվրոպական անվտանգության պրոբլեմը լուծելիս և այլն։

Այսպիսով, հարմարվելը մի հասկացություն է, որը կարող է վերաբերել կապիտալիզմի տիրապետության սիստեմին, այդ տիրապետությունն իրականացնելու մեխանիզմների կառուցվածքին և ֆունկցիաներին, բայց ոչ բուն տիրապետությանը։

* * *

Արդի կապիտալիզմն աշխարհի նոր իրադրությանը հարմարեցնելը, ինչպես ընդգծել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ, զարգանալով սոցիալիզմի հետ հակամարտությունը, տեղաշարժեր է առաջացնում իմպերիալիզմի կառավարող շրջանների պայքարի տակտիկայում։ Դասակարգային պայքարի՝ մասսայական հեղափոխական շարժման վերաճելու սարսափի հանդեպ բուրժուազիան դրսևորում է ձըգտում «կիրառել աշխատավորների շահագործման և ճնշման ավելի քողարկված ձևեր, նրա պատրաստականությունը՝ մի շարք դեպքերում դիմելու մասնակի ռեֆորմների, որպեսզի մասսաներին ըստ կարելվույն պահի իր գաղափարական և քաղաքական վերահսկողության ներքո։ Մոնոպոլիաները գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները լայնորեն օգտագործում են իրենց դիրքերն ամրապնդելու, արտադրության արդյունավետությունն ու զարգացման տեմպերը բարձրացնելու, աշխատավորների շահագործումն ու ճնշումը ուժեղացնելու համար (Լ. Ի. Բրեժնև, Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, «Հայաստան» հրատ., 1971 թ. էջ 22)։

Այնուամենայնիվ արդի կապիտալիզմը դրսևորում է անընդունակություն իր հիմնական պրոբլեմների լուծման գործում։ Եվ այսօր, երբ սեփական պատմության «ջիբրալտարյան ժայռերի» առջև կապիտալիզմը հուսադրող պատասխան չի տալիս ճակատագրի ողբերգակի «լինել թե չլինել» մեծ հարցին, ՍՄԿԿ ժողովուրդներին վստահորեն առաջ է տանում հասարակական առաջադիմության ուղիներով։

# ՄՈԴԵԼԱՎՈՐՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԻ ԳԻՏԱԿԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

Լ. Հ. ՔՈՉԱՐՅԱՆ

Ժամանակակից գիտության բնորոշ հատկանիշներից է մոդելավորման մեթոդի կիրառումը իմացության ամենատարբեր բնագավառներում։ Մոդելավորման սկզբունքները լայն գործածություն են գտել նաև գիտության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են՝ կենսաբանությունը, տնտեսագիտությունը, հոգեբանությունը, մանկավարժությունը և այլն։

Փիլիսոփայական միտքը բոլոր ժամանակներում ձգտել է թափանցել մարդկային իմացության գաղտնարանները, բացահայտել վերջինիս օրենքները, ճանաչողության պրոցեսի կառուցվածքը, հնարներն ու մեթոդները։ Այժմ մոդելավորման պրոբլեմների քննումը չի սահմանափակվում նեղ մասնագիտական վերլուծությամբ, այն ձեռք է բերել տեսական, փիլիսոփայական նշանակություն։ Այդ է վկայում վերջինիս շուրջը ստեղծվող փիլիսոփայական գրականությունը։ Չնայած իմացաբանական առումով հետազոտված պրոբլեմները պատշաճ լուծում են ստացել, սակայն, դեռևս կան չպարզաբանված հարցեր, լուրջ տարաձայնություններ։

Մոդելավորման մեթոդաբանության հարցերն իդեալիզմը և մատերիալիզմը մեկնում են տարբեր դիրքերից։ Ժամանակակից իդեալիզմը մոդելները չի դիտում որպես օբյեկտիվ աշխարհի արտացոլման միջոց, այն համարելով պայմանական, մարդկային սուբյեկտի արգասիք։

Մոդելավորման դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնումը ժամանակակից գիտության մեթոդոլոգիական հիմքն է, տեսական ընդհանրացումների հուսալի կռվանը։

## I

Իմացության պրոցեսն ընդգրկում է նաև այնպիսի օբյեկտներ, որոնց անմիջական ուսումնասիրությունն անհնար է։ Նման դեպքերում կիրառվում է ուսումնասիրման միջնորդավորված եղանակ։ Ելնելով երկու օբյեկտների որոշակի համապատասխանությունից, հայտնիի օգնությամբ կառուցվում է անհայտի մոդելը և առաջինի հետազոտության միջոցով ինֆորմացիա է ստացվում վերջինիս վերաբերյալ։ Այստեղ գործածվում է մոդելավորման սկզբունքը։

Իմացության պրոցեսում մեծ մասամբ մոդելավորման պահանջ է առաջանում այն ժամանակ, երբ ուսումնասիրվող օբյեկտը չունի մշակված տեսու-



թյուն և որի անմիջական ուսումնասիրումն անհնար է նրա տարածաժամանակային պարամետրերի անսովոր մեծության պատճառով՝ օբյեկտի չափերը շատ մեծ կամ շատ փոքր են (տիեզերական մարմին, միկրոօբյեկտ և այլն), մեծ հեռավորության վրա են գտնվում, այնտեղ կատարվող փոփոխությունների ժամանակի մասշտաբներն անհամատեղելի են մարդկային կյանքի տևողությանը և այլն։

Տեսության բացակայության պայմաններում, մոդելը կարևոր միջոց է կուտակված գիտական փաստերի բացատրության և սիստեմավորված՝ տվյալ օբյեկտի վարքի կամ հատկությունների որոշ կանխատեսումների համար և դրանով, կարևոր քայլ է նրա տեսության ձևավորման ու զարգացման ճանապարհին։ Այսպես, 1911 թվականին հայտնագործելով ատոմի միջուկը, Ռեզերֆորդը կառուցեց ատոմի մոլորակային մոդել արեգակնային համակարգության անալոգով։ Նման սկզբունքը բխում էր այն իրողությունից, որ մոլորակային համակարգն ունի կենտրոնական մասսիվ մարմին, իսկ ատոմը՝ մասսիվ միջուկ, որոշակի համանմանություն գոյություն ունի նաև դրանք ձևավորող ուժերի միջև (հակադարձ համեմատական են հեռավորության քառակուսուն)։ Ելնելով այդ համանմանությունից Ռեզերֆորդը ենթադրեց, որ էլեկտրոնները միջուկի շուրջը պտտվում են այնպես, ինչպես մոլորակները՝ Արեգակի շուրջը։ Մոլորակային մոդելը հետագայում մեծ դեր խաղաց կուտակված փաստերի բացատրության և ատոմի տեսության ստեղծման գործում։

Մոդելի օգտագործումն անհրաժեշտ է նաև ուսումնասիրվող օբյեկտի տեսության առկայության դեպքում։ Տեսության անմիջական կիրառումը նկարագրվող օբյեկտի վերլուծության համար լուրջ բարդությունների հետ է կապված։ Ֆիզիկայում այդպիսի իրադրություն առաջանում է դաշտի քվանտային տեսության որոշ հավասարումներ լուծելիս։ Նման դժվարությունների հաղթահարման ռեալ հնարավորություն է ընձեռում առանձին մոդելների ուսումնասիրումը։

Մոդելը նաև ֆորմալ տեսությունների մեկնաբանման կարևոր միջոց է։ Այստեղ այն միջանկյալ օղակ է տեսության և իրականության միջև։

Առկա են նաև այնպիսի իրադրություններ, ուր մոդելավորման կիրառումը պայմանավորված է այլ հանգամանքներով։ Մոդելների օգտագործման նշված օրինակները ցույց են տալիս դրանց բազմատեսակ կիրառման տարբերակները։ Վերջիններս այնքան զգալի են, որ մոդելի բնորոշման վերաբերյալ գիտնականների շրջանում տակավին միակարծություն չկա։

Մոդելի բնորոշման համար էական են ո՛չ թե տարբերությունները, այլ այն, ինչ ընդհանուր է բոլոր գիտական մոդելների համար։ Ի. Տ. Ֆրոլովը իրավացիորեն նկատում է, որ մոդելավորման պրոցեսում մենք գործ ունենք արհեստական վերարտադրության հետ (И. Т. Фролов. Гносиологические проблемы моделирования биологических систем, ВФ 1961, № 2, стр. 26)։ Սակայն ոչ ամեն վերարտադրությունն է մոդել։ Օբյեկտն արհեստականորեն վերարտադրվում է տարբեր նպատակներով։ Այսպես, օբյեկտի վերարտադրությունը կարող է կատարվել սոսկ պրակտիկ բնույթի հարցերի լուծման համար։ Այդ պարագայում օգտագործվում են վերարտադրվող օբյեկտի մի շարք հատկություններ, որոնք ունեն այս կամ այն պրակտիկ նշանակությունը։ Օրինակ. «մեղուզայի ականջ» կոչվող սարքը տեխնիկապես վերարտադրելով մեղուզայի համապատասխան օրգանի մի շարք հատկություններ, մարդուն հնարավորու-

թյուն է տալիս նախապես իմանալու մոտեցող փոթորկի մասին։ Օբյեկտն արհեստականորեն վերարտադրվում է նաև ուսուցողական նպատակներով։ Այդպիսիք են զանազան ցուցադրող սարքերը, մակետները, գծագրերը և այլ պարագաներ, որոնց օգտագործումը հետապնդում է պատրաստի գիտելիքների տիրապետելու նպատակ։ Հետազոտական առումով, վերարտադրության խնդիրը վերարտադրվող օբյեկտի վերաբերյալ նոր գիտելիքների ստացումն է։ Միայն այս դեպքում է մոդելավորումը դրսևորվում որպես գիտական իմացության մեթոդ։ Ուստի, մոդելն արհեստական վերարտադրության այն տեսակն է, որը վերարտադրվող օբյեկտի վերաբերյալ նոր գիտելիքների ստացման միջոց է (տե՛ս Б. А. Глинский, Б. С. Грязнов, Б. С. Дынин, Е. П. Никитин. Моделирование как метод научного исследования. Изд. МГУ, 1965, стр. 11—12)։

Այս տեսակետից չի կարելի իրավացի համարել այն հեղինակներին, որոնք գիտական մոդելների դասի մեջ ներառնում են նաև պրակտիկ կիրառման սարքերը և ցուցադրման միջոցները։ Այսպես. Ի. Բ. Նովիկը գտնում է, որ «իմացության պրոցեսում իրենց ունեցած դերից մոդելները պետք է բաժանել երկու դասի. ցուցադրական-մեթոդական և էվրիստիկ» (И. Б. Новик. Наглядность и модели в теории элементарных частиц, сб. «Философские проблемы физики элементарных частиц», М., 1964, стр. 309)։ Զուր լայնացնելով մոդելների դասը, նա այնտեղ ներառնում է նաև ոչ-էվրիստիկ բնույթի ցուցադրական մոդելները։

Մոդելավորման համար անմիջական հիմք են ծառայում նույնության հարաբերությունները, որոնք կարող են ամենատարբեր բնույթի լինել։ Օբյեկտների միջև նույնության հարաբերություններ հաստատվում են մտածողության աբստրահող գործունեության հիման վրա։ Մարդու պրակտիկ գործունեության ընթացքում իրականության տարբեր օբյեկտները որոշ հատկությունների ու ֆունկցիաների տեսակետից իրարից չեն տարբերվում։ Տարբեր անհատական օբյեկտների միատեսակ կառուցվածքն ու ֆունկցիաները հնարավորություն են ընձեռում վերանալ դրանց տարբերություններից։ Լինելով մի շարք հարաբերություններում նույնական օբյեկտներ, վերջիններս որոշ հետազոտական խնդիրներ լուծելիս կարող են փոխարինել միմյանց։ Այստեղից հետևում է, որ նույնացման աբստրակցիան մոդելավորման անհրաժեշտ պայման է։ Մոդելավորման մեթոդի առավելությունը ո՛չ միայն նրանում է, որ այն հնարավորություն է ընձեռում միջնորդված եղանակով իրականացնել անմիջական ուսումնասիրման անմատչելի օբյեկտների իմացությունը, այլ հնարավոր է դարձնում այդ սահմաններում վերանալ ուսումնասիրվող սիստեմի այնպիսի հատկություններից ու հարաբերություններից, որոնք տվյալ պարագայում, լինելով ոչ-էական, կարող են բարդություններ առաջացնել։ «Տիեզերքի ոչ մի էական մաս այնքան պարզ չէ, որ կարելի լինի ըմբռնել և կառավարել առանց աբստրակցիայի։ Աբստրակցիան տիեզերքի ուսումնասիրման ենթակա մասն է նրան նման, բայց ավելի պարզ մոդելով փոխարինված»— գրում են կիբեռնետիկայի հիմնադիրներ Ն. Վիները և Ա. Ռոզենբլյուգը (В. А. Штофф. Моделирование и философия М-А, 1966, стр. 159)։ Այստեղից հետևում է, որ ցանկացած մոդելն ավելի պարզ է, քան իր օրիգինալը։

Հայտնի է, որ սկզբնական շրջանում մոդելները մեծ մասամբ առարկայական բնույթի էին։ Շենքերի, նավերի ու այլ կառույցների դիմացկունության ու



կայունության խնդիրները լուծելիս, ուսումնասիրության համար ստեղծվում էին դրանց փոքրացված պատճեն-մոդելները։ Բնական գիտությունների ձևավորմանը զուգընթաց սկսեցին կարևոր դեր խաղալ նաև մտային մոդելները։ Գալիլեյի ժամանակներից սկսած ֆիզիկայում իմացական նշանակություն ստացան մտային դիտողական մոդելները, որոնք լայնորեն կիրառվում էին դասական ֆիզիկայում։ Ժամանակակից ֆիզիկայի համար բնութագրական են մաթեմատիկական մոդելները, սակայն, իրենց ճանաչողական նշանակությունը չեն կորցրել նաև դիտողական մոդել-պատկերացումները։ Որոշ հեղինակներ այդ կարևոր հանգամանքը հաշվի չեն առնում։ Մոդելավորման հարցերի մի շարք մասնագետներ գտնում են, որ մտային մոդելը կարող է լինել միայն դիտողական։ Այդ տեսակետի կողմնակիցները դեմ են այն բանին, որ մաթեմատիկական հավասարումը կարող է մոդելի ֆունկցիա կատարել և բացասում են մաթեմատիկական մոդելների գոյությունն այն պատճառով, որ նրանք օբյեկտների դիտողական անալոգը չեն։ Այդպիսի տեսակետի եռանդուն պաշտպան է, օրինակ, Գ. Ա. Շտոֆֆը (նույն տեղը, էջ 284—285)։

Մոդելների թվից մաթեմատիկական մոդելների բացառումը ո՛չ միայն իրավացի չէ, այլև հակասում է ժամանակակից գիտության մեջ մոդելների օգտագործման պրակտիկային։ Մոդելի դեր կարող է կատարել առարկայացված և մտային ցանկացած օբյեկտ, որի ուսումնասիրությունից հնարավոր է նոր գիտելիքներ ստանալ հետաքրքրող օբյեկտի մասին։ Մտային մոդելը կարող է լինել ինչպես դիտողական, այնպես և զուրկ լինել դիտողականությունից։ Հետևապես, արդի գիտության մեջ մոդելների օգտագործման ռեալ իրադրությանը ամենից ավելի համապատասխանում է հետևյալ բնորոշումը. մոդելը ցանկացած բնույթի (առարկայական և մտային) օբյեկտ է, որը, փոխարինելով հետազոտվող օբյեկտին, նոր գիտելիքներ է տալիս վերջինիս մասին։

Մոդելավորման պրոցեսի առաջին էտապում իրականացվում է հետազոտության օբյեկտին (որին այսուհետև կանվանենք օրիգինալ) համապատասխան մոդելի ընտրությունը կամ կառուցումը։ Այդ էտապում հետազոտողը որոնում է օրիգինալին որոշակի հարաբերությամբ անալոգ օբյեկտ, որը կարող է նրան փոխարինել տվյալ իմացական խնդիրները լուծելիս։ Դրանով իրագործում է մոդելավորման պրոցեսի կարևորագույն առաջադրանքներից մեկը։ Երբեմն դժվար է միանգամից կողմնորոշվել, թե օրիգինալին տվյալ հարաբերությամբ անալոգ օբյեկտներից որն ավելի արդյունավետ կկատարի մոդելի իր դերը, քանի որ հաճախ թվում է, թե նրանցից ամենահարմարները հավասար արժանիքներ ունեն։ Այստեղ շատ կարևոր է ֆիզիկոս տեսաբանի ճիշտ կողմնորոշումը։ «Օրիգինալին փոխարինողի որոնումները հնարավոր են ինչպես ինտուիտիվ, այնպես և խիստ տրամաբանական հիմքի վրա»։ Մոդելավորման պրոցեսը մոդելի ընտրությամբ չի սահմանափակվում, նրան հաջորդում է մյուս կարևոր էտապը՝ մոդելի ուսումնասիրումը որպես օրիգինալին փոխարինողի։ Մոդելավորման այս էտապում մոդելը ենթարկվում է էքսպերիմենտալ ուսումնասիրման կամ տեսական վերլուծության։ Մոդելի հետազոտությունից ստացված գիտելիքները դեռևս մեր որոնածը չեն, հետազոտողի անմիջական նպատակն է մոդելի ուսումնասիրման միջոցով գիտելիքներ ստանալ օրիգինալի մասին։ Ուստի, մոդելավորման հաջորդ էտապում իրականացվում է մոդելի ուսումնասիրումից ստացված գիտելիքների փոխանցումն օրիգինալի վրա։ Մոդելավորման պրոցեսն ավարտվում է օրիգինալի վերաբերյալ ստացված ին-

ֆորմացիայի ստուգմամբ։ Փորձով ստուգվելուց հետո այն դառնում է գիտելիք
օրիգինալի մասին։
Մոդելավորման մեթոդի համեմատաբար անբավարար մշակումը իդեա-
լիստական մեկնությունների տեղիք է տալիս։
Մոդելն ըմբռնելով ֆիզիկական անալոգիայի կամ ձևի իմաստով, Շլիկը
պնդում է, թե «դիտողականության հետևանքով մոդելները չունեն գիտական
իմացական նշանակություն, նրանց ստեղծումը պոետների կամ փիլիսոփանե-
րի գործն է»։ Իսկ է. Կասիրերն այն կարծիքին է, թե մոդելավորման մեթոդը
վնասակար է գիտության համար, քանի որ «գիտական կանխատեսությունները
ոչ թե անմիջականորեն վերաբերում են իրերի բնական կարգին, այլ միայն՝ մեր
մոդելներին» (Э. Кассирер — Познание и действительность. СПб, 1912,
стр. 121)։
Հանդես գալով ընդդեմ ֆիզիկայում դրսևորվող սուբյեկտիվիզմի՝ Մաքս Բորնը
գրում է. «Մոդելները ոչ թե ֆանտազիայի արդյունք են, այլ ռեալ իրերի ներ-
կայացուցիչներ» (М. Борн, Физическая реальность, УФН, т. 62, вып. 2,
1957, стр. 130)։ Իմացության պրոցեսում մոդելների դերի դիալեկտիկա-մա-
տերիալիստական ըմբռնման մշակման գործում կարևոր ներդրում ունի սովե-
տական ականավոր ֆիզիկոս Ս. Ի. Վավիլովը։ Նա խստորեն քննադատում է
մոդելավորման մեթոդի մեխանիստական բացարձականացման տենդենցը,
սակայն, դիտողական մոդելները հնացած չի համարում ու չի բացառում ֆիզի-
կական իմացության ոլորտից։ Ս. Ի. Վավիլովը խորությամբ ու նրբությամբ
ըմբռնեց և ճիշտ նշեց այն տեղը, որ ունեն տարբեր մոդելներ միկրոաշխարհի
իմացության գործում, միաժամանակ արժանի գնահատական տալեց դիտողա-
կան մոդելներին (С. И. Вавилов. соч. т. 3, М., 1956, стр. 156)։
Այս տեսակետը հետագայում զարգացրին սովետական ֆիզիկոսներն ու
փիլիսոփաները, որոնք, դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից, բացա-
հայտեցին մոդելավորման վերաբերյալ գոյություն ունեցող հակագիտական
տեսությունների իդեալիստական էությունը։

II

Մոդելավորման հիմքը նույնացման աբստրակցիան է, որի ամենապարզ
տեսակներից է անալոգիան։ Սովորաբար անալոգիան օբյեկտների նույնաց-
ման այն մասնակի դեպքն է, որը դրսևորվում է. «...առարկաների որևէ հատ-
կությունների ու հարաբերությունների նմանության մեջ» (А. И. Уемов. Ана-
логия, «фил. ЭНУКЛ, т. 1, 1960, стр. 56)։ Որոշ ինֆորմացիա ունե-
նալով հետազոտության օբյեկտի մասին և այն համեմատելով արդեն հայտ-
նի այլ առարկայի հետ, ակներև է դառնում, որ դրանք մի շարք հատկություն-
ների ու հարաբերությունների տեսակետից նույնական են։ Այդպիսով, այդ
առարկաների միջև հաստատվում է որոշակի անալոգիա։ Տվյալ առարկայի
մոտ հայտնաբերված նոր հատկությունը ամենայն հավանականությամբ բնո-
րոշ է նաև հետազոտվող առարկային։ Տրամաբանության մեջ նման հետևու-
թյունը ստացել է մոտահանգում ըստ անալոգիայի անվանումը։ Եթե տրամաբա-
նության մեջ գործն ավարտվում է անալոգիայի հիման վրա կայացած հետե-
վությամբ, ապա ֆիզիկական անալոգիայում այն ստուգվում է փորձով։
Անալոգիան մոդելավորման անհրաժեշտ պայման է։ Մոդելի էվրիստիկ
նշանակությունն ի հայտ է գալիս այն բանում, որ մոդելի ու օրիգինալի մի



շարք ընդհանուր հատկությունների առկայության շնորհիվ հետազոտողն օրի-
գինալին վերագրում է մի նոր հատկություն, որը հայտնաբերված է մոդելն ու-
սումնասիրելիս։ Սակայն ոչ ամեն անալոգիա է մոդելավորում հանդիսանում։
Երկու երևույթների միջև անալոգիա անցկացվում է ամենատարբեր նպատակ-
ներով. «Բայց միայն այն դեպքում, երբ տարբեր օբյեկտների միջև անալոգիա-
յի հիմնավորման բազայի վրա նրանցից մեկը ենթարկվում է հետազոտության
որպես մյուսի նմանակ, և, եթե այդ դեպքում մի օբյեկտի մասին ստացած գի-
տելիքներն անհրաժեշտ նախադրյալ են մյուսի մասին հետևությունների հա-
մար, մենք գործ ունենք մոդելավորման հետ» (А. А.Зиновьев, И. И. Рез-
зин. Логическая модель как средство научного исследования, ВФ
1960, № 1, стр. 83)։
Ֆիզիկական անալոգիայի համար հիմք կարող է հանդիսանալ նաև երկու
երևույթների մաթեմատիկական ձևերի նմանությունը։ Թվում է, թե ոչինչ ընդ-
հանուր չի կարող լինել արեգակնային համակարգի շարժման և ալեկոծության
ժամանակ նավի ճոճումների միջև։ Եթե առանց բառերի գրվի միայն այդ շար-
ժումները նկարագրող հավասարումները, ապա հնարավոր չի լինի նրանց տար-
բերել։ Մատերիայի շարժման էապես տարբեր տիրույթների օրենքների մաթե-
մատիկական ձևերի նմանությունը պատահական չէ, նրանում բացահայտվում
է աշխարհի մատերիական միասնությունը. «Բնության միասնությունը երևան
է գալիս երևույթների զանազան բնագավառներին վերաբերող դիֆերենցիալ
հավասարումների «զարմանալի անալոգության» մեջ»,— գրում է Վ. Ի. Լենինը
(Երկեր, հ. 14, էջ 386)։
Ֆիզիկայի պատմությունից հայտնի է, որ ճիշտ հիմնավորված անալոգիա-
ները և դրանց հիման վրա կառուցված մոդելները հաճախ հանդես են եկել որ-
պես նոր հիպոթեզների ու գիտական տեսությունների մշակման, փորձնական
փաստերի բացատրման ու ընդհանրացման անհրաժեշտ միջոցներ։ Իհարկե,
չպետք է անտեսել այն կարևոր հանգամանքը, որ մինչև մեր դարը անալոգիան
հիմնականում հենվում էր սուբյեկտիվ զգացողության և անձնական տպավո-
րությունների վրա ու մեծ մասամբ ուներ արտաքին ու սահմանափակ բնույթ։
Վերջին մի քանի տասնամյակների ընթացքում մշակվեցին երևույթների միջև
ճիշտ ու որոշակի անալոգիաների հիմնավորման գիտական մի շարք եղանակ-
ներ, որոնք թույլ են տալիս նաև քանակական մոտեցում։ Հիմնականում դրա
շնորհիվ է, որ անալոգիան և մոդելների մեթոդը լայն կիրառում են գտնում
ժամանակակից գիտության համարյա բոլոր տիրույթներում։
Հարկ է նկատել, որ անալոգիաները երբեմն լինում են խիստ մակերեսա-
յին ու սահմանափակ և որպես իմացության միջոց ամենազոր ու անթերի չեն։
Մոդելավորման պրոցեսում օգտագործվող նույնացման հարաբերություն-
ների դրսևորումներից է իզոմորֆիզմը, որը հնարավոր է քանակական ուսում-
նասիրության ենթարկել։ Իզոմորֆ, կոպիտ ասած, նշանակում է նմանություն
ըստ ձևի։ Դա մաթեմատիկական տերմին է, որն արտահայտում է բազմու-
թյունների հարաբերություններ։ Գոյություն ունեն սիստեմների իզոմորֆիզմի
տարբեր բնորոշումներ։ Այսպես, երկու բազմություններ իզոմորֆ են, եթե մի
բազմության տարրերը միանշանակորեն համապատասխանում են մյուսի տար-
րերին և եթե առաջին բազմության տարրերի միջև եղած որոշակի հարաբերու-
թյուններն ի հայտ են գալիս մյուս բազմության տարրերի միջև նույն հարա-
բերությունների տեսքով։ Այստեղ էական չէ, թե ինչպիսին է այդ բազմու-

թյունների տարրերի կամ հարաբերությունների բնույթը։ Հարցի պարզաբանման նպատակով Ու. Ռ. Էշբին բերում է նեգատիվի ու նրանից կատարված տպվածքի իզոմորֆիզմի փաստը։ Սևանկարն ու տպվածը իզոմորֆ են, եթե խոսքը վերաբերում է գծագրի ձևին։ Իրոք, սևանկարի վրա եղած քառակուսիները, շրջանագծերը կամ զուգահեռագծերը պահպանում են իրենց տեսքը նաև տպվածի վրա, բացի այդ, սևանկարի մասերի հարաբերությունները տպվածի վրա ի հայտ են գալիս մասերի նույն հարաբերությամբ։ Առանձնապես հետաքրքրական է մեխանիկական, էլեկտրական և մաթեմատիկական երեք սիստեմների իզոմորֆիզմի դեպքը, որը քննարկում է Էշբին։ Նա ցույց է տալիս, թե ինչպես մեխանիկական, էլեկտրական սարքերը և դիֆերենցիալ հավասարումը կարող են իզոմորֆ լինել իրենց «մուտքերի» ու «ելքերի» տեսակետից, որ այդ երեք սիստեմներից և ոչ մեկը հատուկ առավելություն չունի, որ նրանցից յուրաքանչյուրը կարող է փոխարինել մյուս երկուսին ու հանդես գալ որպես նրանց մոդել (տե՛ս У. Р. Эшби. Введение в кибернетику. ИЛ. М. 1959, стр. 137—147)։

Իզոմորֆիզմից բացի, մոդելավորման պրոցեսում օգտագործվում է նաև հոմոմորֆիզմը, որը երկու բազմությունների մեկ-բազմանշանակ համապատասխանության դեպքն է։ Հոմոմորֆ սիստեմներից մեկը հանդես է գալիս որպես մյուսի պարզեցված պատճեն։ Այլ կերպ ասած, երկու սիստեմները հոմոմորֆ են, երբ նրանք դառնում են նույնական, նրանցից մեկի պարզեցման դեպքում։ Այսպես, ատոմի կամ միջուկի դիտողական մոդելները նրանց հոմոմորֆ ձևերն են։ Իզոմորֆիզմի ու հոմոմորֆիզմի հասկացությունները մոդելավորման համար կարևոր նշանակություն ունեն ո՛չ միայն այն պատճառով, որ համեմատաբար կոնկրետացնում ու ճշտում են օրիգինալի ու մոդելի միջև նույնացման հարաբերությունները, այլև նրանց տալիս են ավելի ընդհանրական բնույթ և թույլատրում են քանակական ուսումնասիրություն։

III

Մոդելների օգտագործման գիտա-տեխնիկական պրակտիկան տվել է դրա տեսակների խիստ բազմազանություն։ Բնականաբար, առաջանում է մոդելների դասակարգման անհրաժեշտություն։ Մասնագիտական գրականության մեջ առանձնացվում են մոդելների երկու հիմնական տիպ՝ նյութական և մտային։

Նյութական մոդելների դասին պատկանում են այնպիսիք, որոնք մարմնավորված են որևէ նյութական առարկայում, օրինակ, նավի, գոմնային վառարանի, ամբարտակի մոդելը և այլն։ Նյութական մոդելների յուրահատկությունն այն է, որ դրանք մեկ անգամ արդեն պատրաստված կամ ընտրված լինելով մարդու կողմից, այնուհետև գործում են իրենց ֆիզիկական բնույթին համապատասխան օրենքներով և այդ իմաստով անկախ են մարդու գործունեությունից։ Նյութական մոդելները դասակարգելիս, սովորաբար, առանձնացվում է երեք տեսակ. բնօրինակային, ֆիզիկական և մաթեմատիկական։ Այդպիսի բաժանում կատարում են մոդելավորման պրոբլեմներին նվիրված համարյա բոլոր աշխատություններում։ Մի շարք հեղինակներ նյութական մոդելավորման երրորդ տեսակին «մաթեմատիկական մոդելավորում» անվանելը իրավացիորեն անհաջող են համարում։

Մտային մոդելների դասին վերագրվում են պատկերացումները կամ նշանային սիստեմները։ Մտային մոդելների համար բնութագրական է, որ նրանց



հետ բոլոր տիպի գործողությունները կատարվում են մտայնորեն, մարդու գի-
տակցության մեջ։ Այսպիսի մոդելների օրինակ կարող են ծառայել Ս. Կառ-
նոյի իդեալական շոգեմեքենան, ատոմի, միջուկի տարրական մասնիկների
բազմատեսակ մոդելները, քիմիայի կառուցվածքային բանաձևերը, զանազան
սխեմաներ, գծագրեր և այլն։ Գրականության մեջ առաջարկվում են մտային
մոդելների տարբեր դասակարգումներ։

Գիտական մոդելների դասից մաթեմատիկական մոդելների բացառումը ի-
րավացի չէ և չի համապատասխանում արդի գիտության մեջ մոդելների օգ-
տագործման պրակտիկային։ Իսկ ինչ վերաբերում է մաթեմատիկական մոդել-
ները նշանային մոդելների դասին վերագրելուն, պետք է ասել, որ այս տեսա-
կետի կողմնակիցները հաշվի չեն առնում այն կարևոր հանգամանքը, որ մա-
թեմատիկական նշանների սիստեմները իրենցից մի շարք յուրահատկություն-
ներով էապես տարբերվում են նշանային այլ սիստեմներից։ Միանգամայն ի-
րավացի է Ի. Բ. Նովիկը, երբ նշում է, որ «մաթեմատիկական մոդելները էա-
պես տարբերվում են այլ տեսակի նշանային մոդելներից, և այդ տարբերությու-
նը բխում է այն բանից, որ մաթեմատիկական լեզուն ունի իր սեփական
տրամաբանությունը, որը հարաբերականորեն ինքնուրույն է ֆիզիկական պրո-
ցեսի տրամաբանությունից և այդ պատճառով ֆիզիկական բովանդակությունը
վերարտադրում է միջնորդված ճանապարհով։ Իսկ նշանային մոդելներն ան-
միջականորեն ֆիկսացնում են մոդելավորվող օբյեկտի կառուցվածքը և այդ
կառուցվածքից դուրս իմաստ չունեն» (И. Б. Новик. Наглядность и модели
в теории элементарных частиц. Сб. «философские проблемы физики
элементарных частиц», М., 1964, стр. 312)։

Մոդել-պատկերացումները անհամեմատ ավելի աչքի ընկնող դեր են խա-
ղացել ֆիզիկայում, հատկապես նրա զարգացման վաղ շրջանում։ Դասական
ֆիզիկան, տարբեր իմացական խնդիրներ լուծելիս, լայն չափով օգտագործում
էր մոդելներ, որոնց կառուցվածքային տարրերը պատկերացումներ են։ Գազը
պատկերվում էր մանր, բացարձակ պինդ, առաձգական գնդերի սիստեմի տես-
քով, էլեկտրական հոսանքը՝ հոսող հեղուկի և այլն։ Մոդել-պատկերացումների
կարևորագույն յուրահատկությունն այն է, որ դրանք հանդես են գալիս որպես
ուսումնասիրվող երևույթների դիտողական անալոգներ։ Հայտնի է, որ, ի տար-
բերություն զգայության և ընկալման, պատկերացման մեջ օբյեկտը ձևավոր-
վում է զգայական օրգանների վրա առարկայի ազդեցության բացակայության
պայմաններում։ Այդ պարագայում անմիջական զգայական ձևը օբյեկտի նկատ-
մամբ դառնում է հարաբերականորեն ինքնուրույն և կարող է որոշ փոփոխու-
թյունների ենթարկվել։ Գիտակցության սինթետիկ գործունեությամբ, հնարա-
վորություն է ընձեռվում ստեղծել տարբեր զգայական տարրերի այնպիսի կոմ-
բինացիա, որպիսին անմիջական զգայական ընկալումը օբյեկտիվ իրականու-
թյան տվյալ տիրույթում չի գտնում։ Այլ հանգամանքների հետ միասին, այս
մոմենտը պայմանավորում է պատկերացման յուրահատուկ դերը իմացու-
թյան պրոցեսում։ Գիտական պատկերացումների համար բնութագրական է,
որ դրանք ո՛չ միայն զգայական ընկալման, այլև աբստրակտ մտածողության
գործունեության արդյունք են։ Բացարձակ պնդության, առաձգականության,
անսեղմելի հեղուկի ու այլ պատկերացումներ անմիջական զգայական ընկալ-
ման մեջ տրված լինել չեն կարող, դրանք մտային գործողության արգասիք են։
Հատկանշական է, որ իմացության պրոցեսում դրա զգայական կողմը միշտ

հարստանում ու հագենում է աբստրակտ տարրերով։ Գիտական պատկերաց-
ման մեջ օբյեկտը տրված չէ իր հատկությունների ու հարաբերությունների ողջ
բազմազանությամբ։ Սակայն այն, ինչ տրված է, նրանում ներքնապես կապ-
ված է ու հանդես է գալիս որպես միասնական ամբողջություն։ Ինչի՞ շնորհիվ
իմացության պրոցեսում այդպիսի զգայական ձևը կարող է փոխարինել ռեալ
օբյեկտներին։ Դրանով հնարավորություն է առաջանում, օբյեկտի հետ նյութա-
կան գործունեության փոխարեն, մտայնորեն գործառնել պատկերացումներով,
որոնք, հենց, հանդես են գալիս որպես մոդելներ։ Մոդել-պատկերացումները
կարևոր տեղ ունեն նաև միկրոաշխարհի իմացության գործում։

Նշանային մոդելը պայմանական նշան կամ նշանների սիստեմ է, որի ի-
մաստը բոլորովին տարբեր է դրա զգայորեն ընկալելի ձևից։ Այսպիսի օբյեկտ-
ներն օգտագործվում են ո՛չ թե իրենց ֆիզիկական հատկությունների, այլ այն
իմաստի տեսակետից, որը պայմանականորեն նրանց է վերագրվում։ Նշանա-
յին մոդելներին հատուկ է աբստրակցիայի ու ընդհանրացման շատ բարձր աս-
տիճան։ Դա պայմանավորված է նրանով, որ դրանք ոչ մի ձևով կապված չեն
մատերիայի շարժման այս կամ այն տեսակի յուրահատկությունների հետ և
արտացոլում են ուսումնասիրվող օբյեկտի ընդհանուր հարաբերությունները։

Մաթեմատիկական մոդելներ. «Յանկացած մոդել կառուցվում է որոշակի
տեսական սկզբունքներով և իրացվում է ինչ-որ միջոցներով։ Մաթեմատիկա-
կան տեսության սկզբունքներով կառուցված, մաթեմատիկական միջոցներով
իրացված մոդելը կոչվում է մաթեմատիկական մոդել» (И. А. Акчурин;
М. Ф. Сачков. Познавательная роль математического моделирования.
М., «Знание», 1968, стр. 10)։

Որոշակի հարաբերությունների տեսակետից մեխանիկական, էլեկտրական
սարքերի ու դիֆերենցիալ հավասարման միջև հիմնավորելով իզոմորֆիզմը էշ-
բին եզրակացնում է, որ այդ հարաբերությունների տեսակետից, դրանցից ոչ
մեկը մյուսի հանդեպ որևէ առավելություն չունի և որոշակի իմացական խըն-
դիրներ լուծելիս կարող են փոխարինել միմյանց։ Մաթեմատիկական մոդելնե-
րը մեծ հաջողությամբ ու լայնորեն կիրառվում են գիտության բազմազան բնա-
գավառներում և իմացական մեծ արդյունք են տալիս։ «Կենսական պրոցեսների
մաթեմատիկական մոդելավորումը» թեմայով, 1966 թ. Մոսկվայում կայացած
տեսական կոնֆերանսում, իր ելույթում ակադեմիկոս Բ. Է. Բիխովսկին ընդ-
գծում է, որ «Մաթեմատիկական մոդելավորումը վերջինիս մյուս տեսակներից
տարբերվում է իր կուռությամբ և պարզությամբ։ Մաթեմատիկական մոդելա-
վորման պրակտիկ արժեքը շատ մեծ է։ Նա լայն հնարավորություն է բաց ա-
նում կենդանի աշխարհի զարգացումը կանխորոշելու համար (Տե՛ս, օրինակ,
ВФ 1966, № 2, стр. 148)։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ մաթեմատիկա-
կան մոդելները ճանաչողական մեծ արժեք ունեն նաև ժամանակակից ֆիզի-
կայում։ Իրոք, Դիրակի, Շրեդինգերի հավասարումները, քվանտային մեխա-
նիկայի ֆորմալ ապարատը, Լիի խումբը և մաթեմատիկական այլ սիստեմներ
հաջողությամբ հանդես են գալիս որպես ատոմային ու ենթաատոմային օբ-
յեկտների մոդելներ և կարևոր դեր են խաղում նրանց իմացության գործում։

Մոդելավորման իմացաբանության շատ հարցեր դեռևս սպասում են ի-
րենց լուծմանը, որին մեծապես կնպաստի դրա հետ առնչվող փիլիսոփայական
պրոբլեմների մշակումը։

# ԿԵՆԴԱՆՈՒԹՅՈՒՆ ՈՒ ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Մ. ՍԱՐԳՍՅԱՆ

Կենսաբանական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

Վերջին տարիներին զգալիորեն մեծացել է հետաքրքրասիրությունը կյանքի երևույթների ուսումնասիրության գիտական տեղեկությունների նկատմամբ, որոնք բազմաթիվ (ինչպես և ճշգրիտ) գիտամասնաճյուղերի գործիչների աշխատանքի արդյունքն են։ Մարդուն և հասարակությանը հուզող հարցերի լուծման առումով այս ասպարեզում կատարված հայտնագործությունների նշանակությունը գերազանցում է նույնիսկ մեր բոլոր սպասելիքները։

Մարդու գիտակցորեն ձեռնարկած բոլոր միջոցառումների նպատակը պետք է լինի ապահովել անձի և հասարակության գոյությունը, այս է կենսաբանական հայտնագործությունների նշանակության գնահատման ելակետը մեր օրերում։ Այդ նպատակին հասնելու համար հարկ է ապահովել մարդու գոյահիմքը կազմող ու կյանքի երևույթով պայմանավորված առողջությունը, ապրուստի համար անհրաժեշտ միջոցների առկայությունը։

Առողջություն հասկացողությունն ընդգրկում է անձի գոյության այն վիճակը, որը պայմանավորված է կենսագործունեությունների որոշակի կոմպլեքսով ու դրանց ընթացքի որոշակի մակարդակով։ Այս տեսակետից կյանքի ու նրա դրսևորման երևույթների (կենսագործունեության) խոր ճանաչումը խիստ կարևոր է մարդու հիվանդագերծ կեցությունն ու ակտիվ երկարակեցությունն ապահովող գիտականորեն հիմնավորված կանոնների ստեղծման համար։ Մեծ նշանակություն ունեն և կյանքի ուսումնասիրությունից ստացված տեղեկությունները մարդու համար անփոխարինելի սննդամթերքների արտադրության գործում։ Այդ մթերքները, ինչպես հայտնի է, ստացվում են օրգանական այն ձևերից, որոնք նույնպես կյանքի առկայության արգասիքն են։

Բնության բազմահազար տեսակների (կենդանիների, բույսերի, միկրո-օրգանիզմների) գոյությունն ու զարգացումն նույնպես կարող են նպատակասլաց կառավարվել միայն կյանքի ու կենսագործունեության ուսումնասիրություններից ստացվող տեղեկությունների հիման վրա մշակված մեթոդներով։ Պարզվել է, որ տասնյակ հազարավոր տարիներ առաջ, քարայրներում ապրող մեր նախնիներն ունեցել են որոշակի կենսաբանական տեղեկություններ իրենց շրջապատի կենդանիներն ու բույսերը ճանաչելու, դրանք օգտագործելու կամ դրանցից պաշտպանվելու համար և, պետք է ասել, բավական մանրակրկիտ են եղել այդ գիտելիքները։ Սակայն, նշված ժամանակաշրջանի, ինչպես և հետագա հազարավոր տարիների ընթացքում կուտակած կենսաբանական տեղեկությունները կրել են նկարագրական, կարգաբանական կամ, լավագույն դեպքում՝ անատոմիական բնույթ։

Կյանքի երևույթի բուն էությունը, որով կենդանի մարմիններն ու կյանքի երևույթները տարբերվում են անկենդան աշխարհի առարկաներից ու երևույթներից, մնում էր բնության գաղտնիքների խորքում, միստիցիզմով քողարկված։

Կենսաբանության հետամնացությունը՝ իր բուն առարկայի ճանաչման իմաստով, պայմանավորված էր, գլխավորապես, գիտական ու տեխնիկական մտքի հետամնացությամբ, որոնք, տվյալ դեպքում, կոչված էին ստեղծելու կենդանի նյութի կառուցվածքի ու կյանքի խորքը թափանցելու ուղիներ ու միջոցներ։

Միայն մեր հարյուրամյակի վերջին տասնամյակներում, ստեղծված տեխնիկական միջոց-

Մոլեկուլային կենսաբանական հայտնագործությունների տվյալներով, ցայտուն ու հոյակապ է արտացոլվում սպիտակուցային մոլեկուլի սպեցիֆիկ դերը կենդանությանը բնորոշ երևույթի՝ կծկողականության (շարժողականության) դրսևորման գործողությունում:

Մանրակրկիտ ուսումնասիրություններով պարզվել է, որ կենդանի մարմնում մկանային կծկումը, կամ առհասարակ կծկումը, որի շնորհիվ տեղի է ունենում կենդանության հիմնական երևույթներից մեկը՝ շարժումը, պայմանավորված է սպիտակուցային երկու սպեցիֆիկ մոլեկուլների՝ ակտինի ու միոզինի փոխներգործությամբ: Ըստ էության, կծկումը երևան է գալիս այն բանի շնորհիվ, որ ակտինի թելանման մոլեկուլն իր լիցքավորված բաղկացուցիչ խմբերի միջոցով «հպվում» է միոզինի մոլեկուլի թելիկներում եղած լիցքավորված խմբերի հետ ու «սահում» վերջինիս երկարությամբ, իր հետևից ձգելով այն հենաթիթեղը, որին ինքը կպած է: Հետաքրքրական է, որ այդ երկու յուրատիպ սպիտակուցներն ի վիճակի են դրսևորելու կծկման պատկերը նույնիսկ կենդանի մարմնից դուրս՝ փորձանոթում: Պարզվել է նաև, որ նշված սպիտակուցների կոմպլեքսն օժտված է և որոշակի ֆերմենտատիվ ունակությամբ, որի շնորհիվ իրականացվում է կենդանի համակարգում էներգիայի աղբյուր հանդիսացող ԱԵՖ-ի ճեղքումը և կծկման գործողության էներգամատակարարումը:

Կծկվող սպիտակուցային թելիկների փոխներգործության, ինչպես և այլ սպիտակուցների ֆունկցիոնալ գործունեության ֆիզիկա-քիմիական կողմերի բացահայտումը ցույց է տալիս, որ կենդանության երևույթները կարող են դրսևորվել նուկլեինաթթուների առկայությունից անկախ: Այդ փաստը վկայում է, որ սկզբունքորեն հնարավոր է պատկերացնել կյանք առանց նուկլեինաթթուների, չնայած գործնականորեն կյանքի այդպիսի ձևը չի կարող հարատևել ու ծավալվել, քանի որ այն չի կարող վերարտադրվել (բազմանալ) առանց գենետիկական ակտիվ նուկլեինաթթվային միացությունների մասնակցության (այդ են ցույց տալիս մեր առկա տվյալները):

Ամփոփելով վերոհիշյալը՝ հանգում ենք այն եզրակացության, որ կյանքի ժամանակակից ձևն ունի երկու, մոլեկուլային տարբեր պայմանավորվածություն ունեցող կողմ՝ դրանցից մեկը դրսևորվում է կենդանությամբ, մյուսը՝ ինքնավերարտադրմամբ (բազմացմամբ):

Կյանքի բուն իմաստը կազմող երևույթներից կենդանությունը պայմանավորված է սպիտակուցային միացությունների ֆունկցիոնալ գործունեությամբ, իսկ վերարտադրությունը՝ նուկլեինաթթվային մոլեկուլի ինքնավերարտադրվելու (ռեպլիկացիոն) ունակությամբ: Իսկ նուկլեինաթթուները ոչ թե թելադրում կամ հսկում են կենդանի համակարգության ինքնավերարտադրումը, այլ օգտագործվում են կյանքով օժտված համակարգության կողմից իրենց վերարտադրության համար:

Ինձ մոտ ստեղծվում է այն տպավորությունը,— նկատում է ականավոր կենսաքիմիկոս Վ. Ա. Էնգելգարդը, որ ժամանակակից մոլեկուլային գենետիկայում երևան է գալիս մի բավականին անճիշտ, դույզն և վտանգավոր տենդենց, այսինքն զգացվում է ձգտում՝ վերագրել նյութերից մեկին՝ ԴՆԹ-ին լիիշխող վեհապետի դեր: Մինչդեռ,— շարունակում է հեղինակը,— ԴՆԹ-ն ինքն իրեն ի վիճակի չէ իրականացնելու այն ֆունկցիաները, որոնք վերագրվում են նրան իբրև իշխող դեր ունեցողի (см. Энгельгардт В. И. Перспективы молекулярной генетики, сб Актуальные вопросы современной генетики, 1966 г.): Նման վերջաբանը նպատակ չունի անտեսելու կամ, նույնիսկ, նսեմացնելու նուկլեինաթթվի չափազանց կարևոր դերը կյանքի երևույթում:

Նուկլեինաթթուները, մասնավորապես ԴՆԹ-ն, հանդիսանում են կենդանի համակարգության այն բաղկացուցիչ միացությունները, որոնց օգնությամբ նյութի գոյության այդ եղանակը պահպանում է իր հարատևությունը, մահվան անխուսափելիության պայմաններում:

Կյանքի երևույթում նուկլեինաթթուներին իշխող դեր վերագրելը զուրկ է փաստարկումից, իսկ կյանքի էնգելսյան բնորոշման վերանայման կամ ճշտման անհրաժեշտությունն արտահայտող պահանջները այդ կապակցությամբ անհիմն:

Ֆ. Էնգելսը՝ ինքն է նշել, որ կյանքի տված իր բնորոշումն անբավարար է (Ֆ. Էնգելս Անտի-Դյուրինգ): Հետևապես, չի բացառված այն հնարավորությունը, որ երբևիցե գիտության կուտակած տվյալները կարող են օգտագործվել կյանքի էնգելսյան բնորոշման լրացման կամ ճշտման նպատակով: Սակայն, գիտության ներկայիս տվյալները կապված նուկլեինաթթուների գենետիկական դերի հայտնաբերման հետ, չեն թելադրում այդ անհրաժեշտությունը:



# ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Մեր երկրի էկոնոմիկայի հետագա վերելքն ապահովելու գործում վճռական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության պլանավորման, արտադրության կառավարման ու տնտեսական խթանման սիստեմի հետագա կատարելագործումը:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշվում է. «Ժողովրդական տնտեսության պլանավորման գործը և կառավարումը կատարելագործելու նպատակով ապահովել տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների լայն կիրառում, էլեկտրոնային-հաշվողական և կազմակերպական տեխնիկայի և կապի միջոցների օգտագործում... Հետևողականորեն ընդլայնել և անշեղորեն բարելավել կադրերի՝ բոլոր մակարդակներում արտադրության կազմակերպիչների, ներառյալ բարձրագույն ղեկավար կադրերի և, առաջին հերթին, մարքս-լենինյան տնտեսագիտական տեսության, կառավարման տեսության ու պրակտիկայի, աշխատանքի գիտական կազմակերպման, պլանավորման ու տնտեսական խթանման նոր մեթոդների, տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների և ժամանակակից հաշվողական տեխնիկայի կիրառման բնագավառի կադրերի պատրաստման ու վերապատրաստման սիստեմը»:

Կառավարումն ու պլանավորումը համապատասխան վարչատնտեսական օրգանների ու արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարության ֆունկցիաների մեջ ամենաբարդն է ու ամենապատասխանատուն: Դրանց բնույթով է, ամենից առաջ, պայմանավորված առաջադրված նպատակների իրագործումը: Երկար ժամանակ պլանավորումն ու կառավարումը մնում էր որպես մարդու մենաշնորհը՝ իր համապատասխան գիտելիքներով, փորձով և ինտուիցիայով: Ժամանակակից արտադրության հսկայական աճը, տեխնիկական առաջադիմության բարձր տեմպը, աշխատանքի բաժանման մեծ մասշտաբները, ձեռնարկությունների մասնագիտացումն ու կոոպերացումը և այլն, օրեցօր բարդացնում են կառավարումն ու պլանավորումը՝ վերջիններս դառնում են ոչ պակաս բարդ, քան արտադրությունը: Ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիայի անընդհատ աճող բարդությունն ու դինամիկությունը, ձեռ-

նարկությունների մասշտաբների, տեխնոլոգիական եղանակների ու արտադրանքի տեսակների թվի աճը, տնտեսական առանձին օբյեկտների, ճյուղերի միջև ու դրանց ներսում արտադրական ու տնտեսական փոխադարձ կապերի բարդացումը, դրանցով պայմանավորված տնտեսագիտական ինֆորմացիայի հոսանքների ու դրանք ստանալու, մշակելու, հաղորդելու համար անհրաժեշտ հաշվողական և այլ աշխատանքների ու գործողությունների հսկայական ծավալները արմատական տեղաշարժեր են հարուցում կառավարման ու պլանավորման մեջ։

Հետազոտելով կառավարման պրոցեսները, հեշտ է տեսնել, որ ըստ էության դրանք ամբողջովին հանգում են ինֆորմացիայի հոսանքների ստացմանը, մշակմանը և հաղորդմանը։ Այստեղ ինֆորմացիա ասելով հասկանում ենք տարբեր տեսակի տվյալների, ցուցանիշների, տեղեկությունների, զեկույցների, ամփոփագրերի, հաշվետվությունների ամբողջությունը, որոնք բնութագրում են կառավարվող օբյեկտն ամբողջությամբ։ Սրան համապատասխան կառավարումն իր մեջ բովանդակում է հետևյալ չորս մոմենտները.

Նախ՝ կառավարման պրոցեսն իրագործելու անհրաժեշտ պայմաններից մեկը այդ օբյեկտի վիճակի մասին ինֆորմացիայի ստացումն է։ Հենց դրանից էլ սկսվում է կառավարման պրոցեսը։ Երկրորդ՝ կառավարումը ենթադրում է գործողության նպատակի (որակի հայտանիշի) առկայություն։ Այդպիսի նպատակ կարող է լինել կամ ընտրվել, օրինակ, առկա ռեսուրսների օպտիմալ օգտագործումը (հատկապես, եթե դրանք դեֆիցիտային են), սարքավորումների ռացիոնալ օգտագործումը (եթե արտադրության «նեղ տեղ» են սարքավորումները), արտադրանքի առավելագույն քանակի ապահովումը (եթե մեծ է արտադրանքի նկատմամբ պահանջարկը), առավելագույն շահույթի ապահովումը և այլն։ Երրորդ՝ կառավարվող օբյեկտի վիճակը բնութագրող ինֆորմացիայի մշակման շնորհիվ ստացված արդյունքների հիման վրա վճիռների ընդունումը՝ առաջադրված գործողության նպատակին համապատասխան։ Վճիռները կարող են ստացվել ինչպես տրամաբանական, այնպես էլ մաթեմատիկական ճանապարհով, ընդ որում, ինֆորմացիայի մշակման պրոցեսում կարևոր է իմանալ, թե անհրաժեշտ վերջնական ցուցանիշների (որոնց հիման վրա որոշակի վճիռ է կայացվում) ստացման համար ինչպիսի՞ տրամաբանական ու մաթեմատիկական գործողություններ պետք է կատարվեն, ի՞նչ հաջորդականությամբ և այլն։ Չորրորդ՝ ընդունված որոշման կամ վճռի հիման վրա կառավարման հրամանների, կամ, այլ կերպ ասած, հրաման-ինֆորմացիայի հաղորդումը համապատասխան կատարողներին։ Կառավարման հրամանների կատարման ընթացքի ու արդյունքների մասին նոր ինֆորմացիայի ստացմամբ սկսվում է կառավարման պրոցեսի հաջորդ ցիկլը և այդպես շարունակ։

Վերջին հաշվով, կառավարումը հանգում է նրան, որ ընդունված վճիռների հիման վրա տրվող հրաման-ինֆորմացիայի միջոցով ազդելով կառավարվող օբյեկտի կամ սիստեմի վրա, այն մի վիճակից առաջադրված նպատակին համապատասխան, բերում է մի այլ վիճակի։ Բարդ սիստեմների համար, ինչպիսին արտադրությունն է, բնութագրական է նրա բազմաթիվ տարբեր վիճակների գոյության ու մեկից մյուսին անցնելու հնարավորությունը։ Անցումը մի վիճակից մի քանիսին նպատակահարմար կամ ձեռնտու կարող է չլինել ընտրված նպատակին հասնելու տեսանկյունից, մյուսներին՝ ավելի ձեռնտու և նպատակահարմար։ Հետևաբար, բոլոր հնարավոր ելքերից, պարզ է, որ պետք է



ընտրվի անցումն այնպիսի վիճակին, որն ապահովում է առաջադրված նպատակի իրագործումը։ Այս առումով ընտրված նպատակի իրագործումն ապահովող վճիռն անվանում են օպտիմալ, իսկ այն ստանալու համար անհրաժեշտ տրամաբանական և հաշվողական գործողությունների ամբողջությունը՝ կառավարման ալգորիթմ։

Արտադրական ձեռնարկություններում և սրանց հաջորդող պլանավորման և կառավարման առանձին աստիճաններում անընդհատ ստացվող ինֆորմացիայի հոսանքները խիստ ծանրաբեռնում ու լուրջ դժվարությունների առջև են կանգնեցնում համապատասխան մարմինների աշխատողներին։ Մասնավորապես մի շարք ձեռնարկությունների հետազոտությունները ցույց են տվել, որ դրանց արտադրական ինֆորմացիայի փաստացի հոսանքները մոտ 4—5 անգամ գերազանցում են այն ընկալելու և մշակելու մարդու նորմալ կարողություններին. միջին հաշվով մեկ մարդուն վայրկյանում ընկնում է 8—10 բիտ*) (2—4 տասնորդական նիշ) ինֆորմացիա։ Հերթափոխի վերջում նրա ծանրաբեռնվածությունն ավելանում է էլի 1,5—2 անգամ։ Դեռ ավելին, արտադրության ծավալների հետագա աճը, ինչպես նաև կառավարման օպերատիվության նկատմամբ պահանջների մեծացումն օրեցօր պայմանավորում են համապատասխան ինֆորմացիայի հոսանքների աճ և դրանց ստացման, մշակման և հաղորդման (պատույտի) ժամանակի կրճատման անհրաժեշտություն։

Պլանավորման և կառավարման ոլորտում շրջանառվող ինֆորմացիայի ծավալն աճում է նույնիսկ շատ ավելի արագ, քան արտադրությունը։ Օրինակ, ՈՒՍՍՀ գիտությունների ակադեմիայի կիբեռնետիկայի ինստիտուտում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ արդյունաբերական արտադրության ներկայիս աճը, որն ուղեկցվում է ժողովրդական տնտեսության առանձին օղակների միջև ներքին և արտաքին տնտեսական փոխադարձ կապերի բարդացմամբ, պայմանավորում է անհրաժեշտ ինֆորմացիայի աճ, գրեթե երկրաչափական պրոգրեսիայի օրենքով։ Միևնույն ժամանակ կառավարման, պլանավորման, հաշվառման ոլորտներում ինֆորմացիայի հաղորդման և մշակման տեմպը (հետևաբար և այդ ոլորտներում աշխատանքի արտադրողականության տեմպը) զգալիորեն ցածր է, քան նյութական արտադրության ոլորտում. բավական է այդ կապակցությամբ նշել, որ պլանավորող օրգաններում, առանձնապես սկզբնական հաշվառման սիստեմում դեռևս հաշվողական միջոցներն են մնում արիֆմոմետրը և հաշվիչը։ Ստացվում է, որ ինֆորմացիայի հսկայական ծավալները հաղորդելու և մշակելու գոյություն ունեցող միջոցներն առավել ևս ետ են մնում դրանց աճի տեմպից, հետևաբար և դադարում են դրանք հաղորդելու և մշակելու օբյեկտիվ պահանջին համապատասխանելուց։

Ինֆորմացիայի ներկայիս աճող հոսանքների և դրանց ստացման, հաղորդման գոյություն ունեցող միջոցների և մշակման տեխնիկայի անհամապատասխանությունը հանգեցնում է ինֆորմացիայի հապաղմանը, հետևաբար և նրա կորստին։ Հատկապես ինֆորմացիան մշակելու համար անհրաժեշտ կարողության բացակայության պայմաններում, այն, ինչպես պատկերավոր

*) Բիտ— ինֆորմացիայի միավոր է՝ այնպիսի ինֆորմացիա է, որը պարունակվում է երկու միատեսակ հավանական հնարավոր ելքեր ունեցող երևույթի արդյունքի մասին հաղորդագրության մեջ։ Օրինակ, տեղեկությունը, որ վեր նետած մետաղյա դրամը կընկնի գետնին զերբի կողմով, պարունակում է 1 միավոր (բիտ) ինֆորմացիա։

արտահայտել է ակադ. Ա. Մ. Բերգը, «հերթի է կանգնում» և կորցնելով այնտեղ իր թարմությունն ու օգտակարությունը, փաստորեն վերածվում է անպետք, «մեռած» ինֆորմացիայի։ Իսկ ինչի՞ն է հանգեցնում ինֆորմացիայի այդպիսի կորուստը։ Պլանավորման և կառավարման ամեն մի օղակում (ստորինից մինչև վերինը) ինֆորմացիայի այդպիսի «մահը» հանգեցնում է նրան, որ արտադրության, բաշխման և սպառման անմիջականորեն պրոցեսների կառավարման ցածր աստիճաններում ծնվող ինֆորմացիայի միայն աննշան մասն է հասնում պլանավորման և տնտեսական ղեկավարման բարձր աստիճանին, իսկ ոչ լրիվ ինֆորմացիայի հիման վրա կարող են կայացվել և փաստորեն կայացվում են միայն մոտավոր և ինտուիտիվ որոշումներ։

Թե որքան ժողովրդա-տնտեսական նշանակություն ունի և կենսական անհրաժեշտություն է ինֆորմացիայի հաղորդման ու ավտոմատ մշակման տեխնիկայի ստեղծումն ու կիրառումը, մասնավորապես ցույց են տալիս ներքոհիշյալ օրինակները։

Սահմանված է, որ մարդը միջին հաշվով վայրկյանում կարող է կատարել մոտ 10 թվաբանական կամ տրամաբանական գործողություն, սակայն տարբեր գործոնների ազդեցության տակ նրա այդ ունակությունը գործնականում պակասում է մոտ 4 անգամ։ Եթե համեմատության համար նշենք, որ ժամանակակից ամենակատարյալ էլեկտրոնային հաշվողական մեքենան վայրկյանում կատարում է մի քանի միլիոն գործողություն, ապա պարզ կդառնա, թե այսօրվա պայմաններում որքան սահմանափակ են մարդու սեփական հնարավորությունները օպտիմալ պլանավորման և կառավարման խնդիրների լուծման ճանապարհին։

Գործնականում մարդու համար բոլորովին անիրագործելի խնդիր է առանց հաշվողական մեքենայի, օրինակ, հաշվեկշռված ժողովրդա-տնտեսական պլանի մշակումը, որն ընդգրկում է մոտ $10^{16}$ թվաբանական և տրամաբանական գործողություն։ Ավտոմատ արիֆմոմետրի վրա փորձված հաշվողը տարեկան 300—400 հազար գործողություն կատարելու պայմանով այդպիսի պլանի հաշվարկները կարող է կատարել... 25—30 միլիարդ տարվա ընթացքում, մինչդեռ դա միանգամայն իրագործելի խնդիր է մեծ հիշողությամբ ու արտադրողականությամբ ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենաների համար։

Ըստ «Наука и жизнь» (տե՛ս № 6, 1970, էջ 5) ամսագրի տվյալների, ժողովրդատնտեսական տարեկան պլանի մեկ տարբերակ կազմելու համար պահանջվում է կատարել 60 միլիարդ թվաբանական գործողություն. եթե ամեն մի գործողության հատկացվի 1 վայրկյան, ապա այդ բոլոր հաշվարկները կատարելու համար կպահանջվի 10000 մարդու 200 օրվա աշխատանք՝ 8 ժամյա աշխատանքային օրվա հաշվով։

Անչափ ավելի բարդ իրադրություններ են գոյանում, հատկապես, արտադրության կառավարման ոլորտներում։ Նույնիսկ նրանցից ամենապարզի համար էլ լուծումների հնարավոր տարբերակների թիվն արտակարգ մեծ է։ Օրինակ, 20 տեսակի դետալներ մեկ հաստոցի վրա մշակելու բոլոր հնարավոր հաջորդականությունների տարբերակների թիվը կազմում է մոտ $2.10^{18}$, իսկ եթե յուրաքանչյուր դետալ մշակվի երկու տեսակի հաստոցի վրա, ապա այդ պրոցեսի կազմակերպման տարբերակների հնարավոր թիվը կկազմի մոտ $2.10^{36}$։ Կառավարման նպատակից (որակի հայտանիշից) ելնելով, պետք է այս «աստ-



ղաբաշխական» թվով տարբերակներից ընտրվի մեկը— լավագույնը։ Դարձյալ հանգում ենք «անզեն» մարդու համար անլուծելի խնդրի։

Ժամանակակից ինքնաթիռի մեջ տեղակայված են մոտ 2 հազար տարբեր տեսակի ավտոմատ սարքեր— «ինֆորմատորներ», որոնք տեղեկություններ են հաղորդում թռիչքի պայմանների, բարձրության, ինքնաթիռի արագության, նրա ամենակարևոր կենսական կենտրոնների վիճակի մասին և այլն։ Սահմանված է, որ մի օդաչուն կարող է հետևել ոչ ավելի, քան 10 սարքերի ցուցմունքներին։ Եթե սարքերի հաղորդած ինֆորմացիան մշակվեր ձեռքով՝ օդաչուի կողմից, ապա ամեն մի ինքնաթիռի համար կպահանջվեր 200 շարքային օդաչու, մոտավորապես 50 ղեկավար անձինք՝ օդաչուների աշխատանքը կոորդինացնելու և 50 մարդ՝ այդ 250 մարդկանց սպասարկելու համար (տե՛ս Берг А. М., Черняк Ю. Н. «Информация и управление», 1967)։

Այս և նման բազմաթիվ օրինակներից հետո արդեն զարմանալի չէ, թե ինչու պլանավորումն ու տնտեսական կառավարումը մեծ ու լուրջ դժվարություններ ու բարդություններ հաղթահարելու հետ է կապված։

Արտադրության հետագա աճին զուգընթաց, նրանից եկող մշակման ենթակա ինֆորմացիայի ծավալը մեծանում է (հետևաբար մեծանում են նաև պլանավորման և կառավարման դժվարությունները), որի մշակումը պահանջում է լրացուցիչ մարդիկ։ Մինչև վերջին տարիներս ձեռնարկություններում աճող ծավալի ինֆորմացիայի մշակումն իրագործվում էր ավելի շատ մարդիկ ներգրավելու միջոցով։ Մոտավոր հաշվումները ցույց են տվել, որ պլանավորման ներկայիս որակի և պլանավորման կառավարման ու հաշվառման ոլորտների տեխնիկական զինվածության մակարդակի անփոփոխ մնալու դեպքում արդեն 1980 թ. այդ ոլորտներում անհրաժեշտ կլինի ընդգրկել երկրի ողջ չափահաս (16 տարեկանից բարձր) աշխատունակ բնակչությանը, իսկ 1975 թ. դրանց թիվը պետք է կազմի 35—40 միլիոն մարդ (տե՛ս «Возможное и невозможное в кибернетике», 1964, стр. 199)։

Սակայն նույնիսկ տնտեսական կառավարման ոլորտում գրասենյակային աշխատողների թվի անսահման մեծացումն ինքնին չի կարող լուծել պրոբլեմը։ Բանն այն է, որ ինֆորմացիա մշակող ամեն մի աշխատող ինքն էլ ինֆորմացիա է ծնում, նրա աշխատանքը կարիք է ունենում ղեկավարվելու և մյուսների աշխատանքի հետ համաձայնեցվելու ու կոորդինացվելու։ Հետևաբար, հիմնարկության աշխատողների թվի համար պետք է գոյություն ունենա մի որոշ կրիտիկական, օպտիմալ սահման, որին գերազանցելու դեպքում արդեն ինֆորմացիայի մշակման մեջ ձեռնարկության կարողությունը չի աճում, այլ ընդհակառակը, ծագում են ինֆորմացիայի բազմաթիվ կրկնվող հոսքեր, հոսքերի բազմաթիվ զուգահեռ ճյուղավորումներ և այլն։

Մոսկվայի մի շարք գործարանների օրինակով կատարված նախնական հաշվարկները ցույց են տվել, որ նրանց մեկ տարվա աշխատանքի ընթացքում սկզբնական տվյալների մշակման համար անհրաժեշտ է կատարել մոտ 720 միլիոն հաշվարկումներ ու տրամաբանական գործողություններ։ Եթե հաշվի առնենք, որ ինֆորմացիան հիմնականում մշակվում է ձեռքով և որ որակավորված տնտեսագետը մեխանիզացիայի փոքր միջոցների կիրառությամբ ժամում կարող է կատարել մոտ 600 թվային ու տրամաբանական գործողություն, ապա այդ ծավալի գործողությունները կատարելու համար կպահանջվի 1,2 միլիոն

մարդ-ժամ կամ 170 հազար մարդ-օր որակավորված ինժեներ-տնտեսագետի աշխատանք։ Նրանց աշխատանքը վարձատրելու համար կպահանջվեր ծախսելու 850 հազար ռուբլի։ Գործնականում այդպիսի մեծ ապարատ ունենալը հնարավոր չէ։ Դա ո՛չ միայն մեծ ծախսերի հետ է կապված, այլև պայմանավորված է աշխատանքային ռեսուրսների խիստ սահմանափակությամբ։ Բավական է նշել միայն, որ այժմ մեր երկրում աշխատունակ բնակչության 90 տոկոսից ավելին ընդգրկված է աշխատանքում կամ սովորում է։ Այս պայմաններում կառավարման ու պլանավորման կատարելագործումը՝ ինֆորմացիայի հոսանքների հաղորդման ու նրանց մշակման ժամանակակից միջոցների, ամենից առաջ, էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի և դրանց հետ անմիջականորեն կապված պլանավորման և կառավարման նորագույն գիտական մեթոդների կիրառության հիման վրա, կենսական անհրաժեշտություն է դառնում։

Համապատասխանաբար համապետական նշանակություն է ստանում ժողովրդական տնտեսության կառավարման հիմնական օղակներում էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի, ինֆորմացիայի հոսանքների հաղորդման տեխնիկական միջոցների ու կառավարման և պլանավորման գիտականորեն հիմնավորված մեթոդների ստեղծման ու կիրառության խնդիրը։ Վերջին տարիներս կուսակցության և կառավարության սահմանած տնտեսական միջոցառումները գլխավորապես միտում են հենց այդ կարևոր ու հրատապ խնդրի լուծումը։

Այդ նպատակով մեր երկրում ակնհայտ քայլեր են կատարվել վերջին տասնամյակում։ Էլեկտրոնային հաշվողական տեխնիկան աստիճանաբար սկսել է թափանցել ժողովրդական տնտեսության ամենատարբեր ճյուղերը՝ դառնալով տեխնիկական առաջադիմության և արտադրության արդյունավետության բարձրացնելու կարևոր լծակներից մեկը։ Օրեցօր մեծանում է նրա նշանակությունը։

ԷՀՄ ստեղծումն ու կիրառումը ապահովում են գործնականում իրականացնելու այնպիսի բարդ հաշվարկները, ինչպիսիք են, օրինակ, միջճյուղային հաշվեկշռի լրիվ ծախսերի գործակիցների ստացումը, հաշվեկշռված ժողովրդատնտեսական պլանի մշակումը, ծրագրավորման տարբեր խնդիրների լուծումները և այլն։

Սկզբնական շրջանում ԷՀՄ ստեղծումը կապված էր տեխնիկական, ինժեներական խնդիրներ լուծելու հետ, ուստի, դրանք բավականաչափ պիտանի չէին տնտեսական հաշվարկների համար։ Տեխնիկական և ֆիզիկո-մաթեմատիկական խնդիրների համար հատկանշական է ինչպես սկզբնական, այնպես էլ լուծման ընթացքում ստացված տվյալների համեմատաբար փոքր քանակը՝ հաշվումների մեծ թվի դեպքում։ Տնտեսագիտական հաշվարկները բնութագրվում են ստացվող և ԷՀՄ մտցվող ինֆորմացիայի շատ մեծ ծավալով և համեմատաբար ոչ բարդ հաշվողական ալգորիթմներով։ Ներկայումս մշակվում են հատուկ ալգորիթմներ, որոնք հնարավորություն են ընձեռում լուծելու տնտեսագիտական մեծ ծավալի խնդիրները գոյություն ունեցող ԷՀՄ վրա (օրինակ, բլոկային ծրագրավորման մեթոդները)։ Միաժամանակ ստեղծվում են մեծ հիշողությամբ և հաշվարկման ավելի մեծ արագությամբ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ։

Մեծ հիշողությունը, արագագործությունը, տարբեր հաշվարկային մեթոդներ կիրառելու առումներով նրանց լայն հնարավորությունները թույլ են տա-



լիս համեմատաբար շատ կարճ ժամկետներում ստանալու միևնույն պլանային պրոբլեմի լուծման բազմաթիվ տարբերակները՝ նայած առաջադրված պայմաններին և ձևակերպված նպատակին։

ԷՀՄ արդյունավետ օգտագործելու տեսակետից ամենառացիոնալ ուղին իրար հետ փոխադարձաբար կապված մասնագիտացված հաշվողական կենտրոնների ստեղծումն է, որոնք կսպասարկեն միաժամանակ տնտեսական կառավարման բոլոր օրգանների (տվյալ ճյուղում կամ տերիտորիայում գործող) պահանջը։ Այդ կապակցությամբ խնդիր է դրված՝ ստեղծել հաշվողական կենտրոնների միասնական պետական ցանց՝ ժողովրդական տնտեսության պլանավորմանը և կառավարմանը սպասարկելու համար։ Կապի ժամանակակից միջոցներով իրար միավորված հաշվողական կենտրոնների միասնական պետական սիստեմը, ժողովրդական տնտեսության ամենատարբեր կողմերից եկող տվյալների հիման վրա, ավտոմատորեն կարող է գտնել պլանավորման օպտիմալ տարբերակները, կարգավորել նյութա-տեխնիկական մատակարարումը և այլն։ Բոլորովին վերջերս (1970 թ. սեպտեմբերին) կայացած ՍՍՀՄ պետպլանի նիստում քննարկվեցին պլանավորման ու կառավարման պրակտիկայում հաշվողական տեխնիկան ու տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդները ներդնելու հարցերը։

Ընթացիկ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրված՝ «Աշխատանքներ ծավալել ճյուղերի, տերիտորիալ կազմակերպությունների, միավորումների, ձեռնարկությունների կողմից պլանավորման ու կառավարման ավտոմատացված սիստեմների ստեղծման ու արմատավորման ուղղությամբ, ի նկատի ունենալով հետագայում ստեղծել ինֆորմացիայի հավաքման ու մշակման համապետական ավտոմատացված սիստեմ՝ ժողովրդական տնտեսության հաշվառումը, պլանավորումն ու կառավարումը հաշվողական կենտրոնների պետական սիստեմի և երկրի կապի միասնական ավտոմատ ցանցի բազայի վրա կատարելու համար»։

Պլանավորման մաթեմատիկական մեթոդների ու ԷՀՄ օգնությամբ մշակված փոխադրումների պլանները, սովորական պլանների համեմատությամբ, տալիս են 10—15 տոկոսի տնտեսում, առանձին դեպքերում՝ նույնիսկ մինչև 50—60 տոկոս։ Զգալի խնայողություն են ապահովում նրանց օգնությամբ մշակված արտադրության մասնագիտացման և տեղաբաշխման ընթացիկ ու հեռանկարային, նյութա-տեխնիկական մատակարարման պլանները և այլն, ընդ որում, դրանց իրագործման շնորհիվ հնարավոր է տնտեսել ո՛չ միայն նյութա-տեխնիկական ու ֆինանսական միջոցները, այլև զգալիորեն կրճատել համապատասխան աշխատանքների կատարման ժամկետները։

ԷՀՄ սակայն չի կարելի դիտել միայն որպես հաշվումների միջոցի։ Նրա կիրառության հեռանկարային բնագավառն արտադրության ավտոմատ օպերատիվ կառավարման պրոցեսն է՝ արտադրության ավտոմատացված կառավարման սիստեմի մեջ։ Ոչ հեռու անցյալում ավտոմատ կառավարումն ընդգրկում էր գլխավորապես առանձին մեքենաներ ու հաստոցներ (օրինակ, ծրագրային կառավարմամբ հաստոցները), կազմված էլեկտրոնային կառավարման սարքից և բանող մեխանիզմից։ Այժմ պրակտիկայում ծառացած կարևոր պրոբլեմներից մեկն է դարձել բարդ կոմպլեքսների՝ արտադրամասերի, արդյունաբերական ձեռնարկությունների, ճյուղերի կառավարումն առանձին տեխնոլոգիական պրոցեսների մասշտաբով՝ աշխատանքի օպտիմալ ռեժիմն ավտո-

մատ պահպանելու պայմանով։ Մի շարք դեպքերում ԷՀՄ արդեն պրակտիկայում օգտագործվում են որպես առանձին պրոցեսների և ձեռնարկությունների ավտոմատ կառավարման միջոց։ Օրինակ, էլեկտրոնային մեքենան Կիևից ղեկավարում ու կարգավորում է իրենից մոտ 600 կմ հեռավորության վրա գտնվող Սլավյանսկի սոդայի կոմբինատի ագրեգատի աշխատանքը։ Մեքենան գործարանից (ագրեգատից) անհրաժեշտ ինֆորմացիա ստանալով, հաշվում է ագրեգատի օպտիմալ ռեժիմը և այդ ռեժիմն ապահովելու համար անհրաժեշտ տվյալները (ռեժիմի պարամետրերը) հաղորդում է դիսպետչերական կետ։ Կառավարման այդպիսի սիստեմներն ամենալայն տարածում են ստացել անընդհատ տեխնոլոգիական պրոցեսներով ճյուղերում (մետալուրգիա, քիմիական արդյունաբերություն և այլն)։

Կառավարման ավելի բարդ սիստեմները (օրինակ, ձեռնարկության կառավարումը) բնութագրվում են մարդու մասնակցությամբ պատասխանատու վճիռներ կայացնելով։ Այդպիսի սիստեմներում ինֆորմացիան ստացվում է արտադրության առանձին տեղամասերից՝ հումքի, նյութերի և պատրաստի արտադրանքի պահեստներից, տեխնիկական, արտադրական-պլանային, աշխատանքի և աշխատավարձի բաժիններից, հաշվապահությունից և այլն։ Հեռատայպի օգնությամբ այն մտնում է էլեկտրոնային մեքենայի հիշողական սարք, իսկ հետադարձ ուղղությամբ համապատասխան ազդանշաններ են ուղարկվում ինֆորմացիան ստանալու, ստուգելու և գրանցելու մասին։

Ստանալով ինֆորմացիան, մեքենան կատարում է ներդրված ծրագրի բոլոր հաշվարկները, որոնց հիման վրա ձեռնարկության ղեկավարությունն արձակում է այս կամ այն տնտեսական վճիռը։

Անհրաժեշտ է նշել, որ էլեկտրոնային մեքենայի օգնությամբ կառավարումը կարող է լինել արդյունավետ միայն այն դեպքում, եթե մեքենայում ներդրված հաշվարկների ծրագրերն ամբողջովին համապատասխանում են առաջադրված պահանջներին։ Կառավարման ֆունկցիան կատարելու պրոցեսում ԷՀՄ վրա լուծվող խնդրի բնույթը, նրա էությունը, դրվածքը, խնդրի պայմանները և օպտիմալության հայտանիշը պետք է նախօրոք ձևակերպված ու հիմնավորված լինեն համապատասխան մասնագետների՝ ինժեներների, տնտեսագետների, մաթեմատիկոսների, տեխնոլոգների, արտադրության կազմակերպման և նյութա-տեխնիկական մատակարարման գծով մասնագետների և այլոց կողմից։

Վերջին 10—15 տարիների ընթացքում մաթեմատիկական մեթոդների ու ԷՀՄ կիրառությամբ պլանավորման և կառավարման մի շարք բազմապիսի խնդիրների լուծման դրական փորձն ու արդյունքները վկայում են, որ պլանավորումը և արտադրության կառավարումը կատարելագործելու վաղուց արդեն հասունացած խնդիրն իր զգալի մասով կարող է լուծվել արդեն գործող ԷՀՄ միջոցով։ Սակայն բանը միայն համապատասխան մեքենաներ նախագծելու ու արտադրելու, հաշվողական կենտրոններ ու կապի կատարյալ միջոցներ ստեղծելու մեջ չէ։ Անհրաժեշտ է արմատապես վերակառուցել նախնական հաշվառքի բոլոր ձևերն այնպես, որ ստացվող սկզբնական ինֆորմացիան անմիջականորեն հնարավոր լինի ներդնել ԷՀՄ։ Արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության մասին ինֆորմացիայի ժամանակակից սիստեմը դեռևս հեռու է կատարյալ լինելուց՝ այն ծայրահեղորեն մեծածավալ է և ոչ օ-



պերատիվ. այստեղ ինֆորմացիայի շարժման ճանապարհները երկար են, հատվում ու կրկնվում են և այլն։

Կառավարման ցանկացած պրոցեսի, առավել ևս արտադրության կառավարման ֆունկցիան իրականացնելու համար, նրա հիմնական տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վիճակի մասին ոչ բոլոր տվյալներն ունեն միատեսակ կարևորություն։ Օրինակ, ըստ մոտավոր հաշվումների, ձեռնարկությունից մինիստրություն հաղորդվող ողջ ինֆորմացիայի ծավալի մեջ տվյալ ժամանակաշրջանում ձեռնարկության գործունեությունը բնութագրող ինֆորմացիայի օգտակար ծավալը կազմում է 25—30 տոկոս։

Կառավարման պրոցեսում օգտագործվող ինֆորմացիայի ծավալը չպետք է չափից ավելի մեծ լինի, բայց միևնույն ժամանակ այն պետք է բավականաչափ լրիվ բնութագրի արտադրության ընթացքի և նրա կարևորագույն տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վիճակը, չնայած, կառավարման յուրաքանչյուր սիստեմ, որպես կանոն, օբյեկտիվորեն շահագրգռված է սկզբնական ինֆորմացիայի մեծ քանակություն ունենալ։

Այդ ինֆորմացիայի աղբյուրները, բովանդակությունը և ծավալը չպետք է պատահական (հավանական) բնույթ կրեն, պետք է զերծ լինեն ամեն տեսակ ավելորդ, իներտ հաղորդագրություններից։ Ինֆորմացիայի նկատմամբ այդ պահանջը խիստ կարևոր է ավտոմատ մշակման համար հաշվողական կենտրոններ հաղորդվող սկզբնական ինֆորմացիայի ծավալները նվազագույնացնելու հարցի լուծման առումով։

Կառավարվող օբյեկտների աշխատանքի ու նրա վիճակի մասին օպերատիվ ինֆորմացիայի սիստեմը (ստրուկտուրան) պետք է ամենից առաջ ընդգրկի նրա գործունեության կարևոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։

Մշակման ենթակա ինֆորմացիայի ծավալների նվազագույնացման հիմնական եղանակներից են՝ ինֆորմացիայի կոդավորումն ու ունիֆիկացումը, ինչպես նաև ինֆորմացիայի համապատասխան կրողների վրա այն մեկ անգամ սևեռելը՝ մի քանի անգամ օգտագործելու պայմանով։ Ինֆորմացիայի ունիֆիկացման հետ սերտորեն կապված է կառավարման և պլանային փաստաթղթերի ունիֆիկացումը։

Մեր երկրում տարեկան պատրաստվում և լրացվում է մոտ 4 միլիարդ թերթ փաստաթուղթ, որոնց վրա, շատ հաճախ, թանկարժեք ժամանակ են ծախսում բարձր որակավորում ունեցող մասնագետները։ Դեռ ավելին, մեքենայական մշակմանը հարմարեցված ունիֆիկացված պլանային փաստաթղթերի բացակայությունը զգալիորեն իջեցնում է տնտեսագետների, ինժեներների և պլանային օրգանների այլ աշխատողների աշխատանքի արտադրողականությունը։ Ժողովրդական տնտեսության պլանավորման մաթեմատիկական մեթոդների և ԷՀՄ կիրառության ընդլայնումը, պահանջում է մեքենայական մշակմանը հարմարեցված ունիֆիկացված ձևերի ստեղծումը։

Ներկայումս մշակված են մեթոդական ցուցումներ՝ ունիֆիկացված փաստաթղթերի ձևերի և ցուցանիշների միասնական սիստեմ ստեղծելու հիմնական սկզբունքների վերաբերյալ։ Այդ մեթոդական ցուցումների հիման վրա, 1971 թ. ժողովրդա-տնտեսական պլանի նախագծի համար, ըստ նրա հիմնական բաժինների, արդեն մշակվել են համապատասխան ունիֆիկացված փաստաթղթերի ձևերն ու տեսակները։

Ունիֆիկացված պլանային և կառավարման փաստաթղթերի ու ցուցանիշ-

ների սիստեմի արդյունավետության նախնական գնահատությունը ցույց է տալիս դրանում օգտակար ինֆորմացիայի քանակի ու դրա ճշտության մեծացում, փաստաթղթերի ձևերի թվի զգալի կրճատում (մոտ 45—50 տոկոսով) և այլն։ Այդ սիստեմի կիրառությամբ փաստաթղթերը մոտ 5 տոկոսով կարելի է կրճատել կրկնօրինակումները վերացնելու ճանապարհով, 11 տոկոսով՝ ավելորդ և սակավ օգտագործվող ցուցանիշների լիկվիդացման և 34 տոկոսով՝ փաստաթղթերի ունիֆիկացման շնորհիվ։

Տնտեսագետների հաշվարկների համաձայն երկրի մասշտաբով միայն հրամանների և որոշումների համար բլանկների պատրաստումը կենտրոնացնելու հաշվին կարելի է տարեկան խնայել ավելի քան 800 հազար ռուբլի (տե՛ս «Наука и жизнь», № 9, 1970, стр. 40)։

Կառավարման և պլանային ունիֆիկացված փաստաթղթերի և ցուցանիշների միասնական սիստեմի ստեղծումը դեռևս առաջին քայլն է փաստաթղթերի ու ինֆորմացիայի հոսանքների կրճատման նպատակով։

Էլեկտրոնային հաշվողական և վերլուծական մեքենաների բազայի վրա կառուցված ինֆորմացիայի ավտոմատացված սիստեմը կառավարման պրոցեսի օպերատիվությունը բարձրացնելու և պարզեցնելու հետ միաժամանակ, հնարավորություն կընձեռի զգալիորեն կրճատելու ինֆորմացիայի ստացման և հաղորդման պրոցեսի տևողությունն ու ձեռնարկությունների վիճակագրական հաշվետվությունների ձևերը, մեծացնելու ստացվող ինֆորմացիայի օգտագործման արդյունավետությունը՝ աշխատատար հաշվարկներն ավտոմատացնելու հաշվին, պարբերաբար հետազոտելու ձեռնարկությունների գործունեությունը բնութագրող բազմապիսի ցուցանիշները՝ արտադրության զարգացման օրինաչափությունները վեր հանելու նպատակով, կատարելագործելու տեխնիկա-տնտեսական նորմատիվների և ցուցանիշների սիստեմը, անցկացնելու ձեռնարկությունների աշխատանքի բազմակողմանի վերլուծություն՝ նյութական ու աշխատանքային ռեզերվները հայտնաբերելու նպատակով, բազմակողմանի և օբյեկտիվ պատկերացում կազմելու ձեռնարկություններում հիմնական կարևոր ցուցանիշների պլանների կատարման ընթացքի մասին և այլն։

Դրա գործնական կիրառությունը կարևոր ներդրում կլինի կառավարման պրոցեսների գիտական կազմակերպման գործում, որն, իր հերթին, կնպաստի հասարակական արտադրության ու նրա արդյունավետության աճին՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։



# ՍՍՀՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Մեծ են ու վիթխարի ընթացիկ հնգամյակում Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում առաջադրված խնդիրները։ Դրանք իրենց մասշտաբներով նմանը չունեն և վառ կերպով ցույց են տալիս սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունները, պոտենցիալ հզորությունը, պլանաչափորեն առաջ ընթանալու հնարավորությունները, որոնց իրագործման համար ՍՄԿԿ XXIV համագումարը մշակեց գիտականորեն հիմնավորված միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս։ Այդ կոմպլեքսում առանձնահատուկ տեղ է հատկացված գյուղատնտեսությանը, որը, Լ. Ի. Բրեժնևի խոսքերով ասած, «եղել և դեռ մնում է մեր էկոնոմիկայի առավել բարդ ու դժվարին տեղամասը»։

Նկատի ունենալով այդ հանգամանքը և բարձր զարգացած գյուղատնտեսությունը համարելով կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի անկապտելի մասը, ժողովրդի կենսամակարդակի արագ վերելքի պարտադիր պայմանը, մեր կուսակցությունը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն արել ու անում են ամեն ինչ, որպեսզի կոլտնտեսություններում ու սովխոզներում նշանակալիորեն բարձրանա արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի արտադրողականությունը, տարեցտարի ավելացվի գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքը, աճի հանրային տնտեսությունների շահութաբերությունը, առավել բարեկեցիկ դառնա գյուղի բոլոր աշխատավորների կյանքը։

Գոհունակությամբ պետք է ասել, որ այս ամենի համար կուսակցության կատարած հետևողական աշխատանքը, գյուղի մարդկանց և մեր արդյունաբերության համապատասխան ճյուղերի կոլեկտիվների գործադրած ջանքերն անցած ութերորդ հնգամյակում պսակվեցին հաջողություններով։ Այդ հնգամյակում գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին ծավալը մեծացավ 21 տոկոսով՝ նախորդ հնգամյակի 12 տոկոսի դիմաց։ Կատարվեց պետությանը գյուղատնտեսական հիմնական մթերքների վաճառքի՝ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները, ամրապնդվեց կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, գյուղատնտեսությունը հաստատորեն կանգնեց ինտենսիվացման ուղու վրա։

*Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ նախորդի համեմատությամբ, ութերորդ հնգամյակում Սովետական Միությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը նշանակալիորեն բարձր էին։ Դրանք առավել աչքի էին ընկնում 1970 թվականին, երբ գյուղատնտեսության համախառն արտադրանքը կազմեց 85,8 միլիարդ ռուբլի, որը, 1965 թվականի համեմատությամբ (համադրելի գներով), ավելի էր 14,9 միլիարդ ռուբլով։*

*Հաջողությունները նշանակալից են նաև Սովետական Հայաստանում։ Բավական է ասել, որ 1966—1970 թվականներին հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը, նախորդ հինգ տարիների համեմատությամբ (համադրելի գներով), աճեց մոտ 20 տոկոսով։ Դրա շնորհիվ որոշակիորեն ամրապնդվեց կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, բարձրացավ գյուղի աշխատավորների նյութական բարեկեցությունը, բարելավվեցին նրանց կուլտուր-կենցաղային պայմանները։*

## ՆՈՐ, ԲԱՐՁՐ ԲՆԱԳԾԵՐ

*Անցած հինգ տարում ձեռք բերված հաջողությունները, երկրի տնտեսական պոտենցիալի հզորացումը հիմք տվին կուսակցությանը նոր, խոշոր միջոցառումների դիմելու երկրի գյուղատնտեսության համակողմանի զարգացման համար։ Այդ տեսակետից չափազանց ուգագրավ են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով սահմանված առաջադրանքները, որոնք միանգամայն ռեալ են ու իրագործելի։*

*Դիրեկտիվներում գյուղատնտեսության բնագավառում խնդիր է դրված իններորդ հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը մեծացնել 20—22 տոկոսով, ավելի լրիվ չափով բավարարել բնակչության հարաճուն պահանջմունքները՝ սննդամթերքների և արդյունաբերության պահանջմունքները՝ հումքի նկատմամբ։*

*Այդ խնդրի լուծման համար նախատեսվում է ամենուրեք բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունն այն հաշվով, որ երկրի գյուղատնտեսության տարեկան միջին համախառն արտադրանքը 1971—1975 թվականներին հասնի 96—98 միլիարդ ռուբլու։ Այդ նույն ժամանակաշրջանում գյուղատնտեսությունը, հիմնականում նույն հողատարածություններից, տարեկան միջին հաշվով պետք է 16—18 միլիարդ ռուբլու ավելի արտադրանք տա, քան նախորդ հնգամյակում։ Այդ առումով որոշակի բեկում կկատարվի նաև մեր հանրապետությունում։ Սահմանված առաջադրանքի համաձայն հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը (1965 թ. համադրելի գներով) 1975 թվականին կկազմի 569,2 միլիոն ռուբլի, 1970 թվականի 429,6 միլիոն ռուբլու դիմաց։ Համախառն արտադրանքի միջին տարեկան գումարը 1971—1975 թվականներին կկազմի 498,6 միլիոն ռուբլի, 1966—1970 թվականների՝ 385,4 միլիոն ռուբլու դիմաց։*

*Այդպիսի լուրջ առաջադրանքների կատարման և գյուղատնտեսության զարգացման բնագավառում նոր, բարձր բնագծեր նվաճելու համար, ամենից առաջ, պահանջվում է արմատապես բարելավել հողագործության կուլտուրան, այսինքն՝ գիտության նվաճումների և առաջավոր փորձի հիման վրա բարձ-*



*րացնել հողերի բերքատվությունը, կանխել էռոզիան, ապահովել հանքային և օրգանական պարարտանյութերի ռացիոնալ օգտագործումը, ընդարձակել ոռոգման ցանցը, կիրառել հիվանդություններից, վնասատուներից ու մոլախոտերից բույսերի պաշտպանության նորագույն միջոցառումները, վերացնել բերքի կորուստները, ճիշտ ցանքաշրջանառությունների յուրացման միջոցով կատարելագործել ցանքատարածությունների կառուցվածքը և այլն։ Նշված միջոցառումների կատարման համար պետության ցույց տված օգնության հետ միասին, յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ պետք է գործադրի իր ներքին ռեսուրսները, լավ պահպանի ու բարձր արտադրողականությամբ օգտագործի հողը՝ գյուղատնտեսության արտադրության այդ գլխավոր ու անփոխարինելի միջոցը։*

*«Ինչպես որ առաջ, գյուղատնտեսության մեջ գլխավոր խնդիրներից մեկը մնում է* հացահատիկի *արտադրության ավելացումը։ Հացահատիկի մեր պահանջմունքները տարեցտարի աճում են։ Մենք նկատի ունենք ո՛չ միայն պարենային, այլև ֆուրաժային հացահատիկը, որի արտադրությունը պետք է ընդլայնել, հաշվի առնելով անասնաբուծության արագ աճի անհրաժեշտությունը» (Լ. Ի. Բրեժնև,* ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, *Ե., 1971 թ., էջ 75)։ Ընթացիկ հնգամյակում երկրում հացահատիկի տարեկան միջին արտադրությունը կազմելու է 195 միլիոն տոննա։*

*Հացահատիկի այդպիսի համախառն բերք ստանալու և գյուղատնտեսության զարգացման այդ արմատական պրոբլեմը հաջողությամբ լուծելու համար հնգամյակի տարիներին հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը պետք է բարձրացվի առնվազն 4 ցենտներով։ Երկրի, այդ թվում նաև մեր հանրապետության առաջավոր շրջանների ու տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ ագրոտեխնիկայի հաջող գործադրման, սերմնաբուծության բարելավման, ցանքի ու բերքահավաքի աշխատանքների ժամանակին կատարման միջոցով կարելի է այդ խնդիրը լուծել։ Այս դեպքում լուրջ ջանքեր են պահանջվում այն շրջաններում, ինչպիսիք, ասենք, մեր հանրապետության Ազիզբեկովի, Կրասնոսելսկի, Ղուկասյանի շրջաններն են, ուր տարիներ շարունակ հացահատիկային կուլտուրաների հեկտարի միջին բերքատվությունը մնում է 4—10 ցենտների սահմաններում։*

*Իններորդ հնգամյակում նախատեսված է մեծ չափերով ավելացնել նաև բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, խաղողի, պտղի, բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս մթերքների ու հումքի համախառն արտադրանքը։ Կարտոֆիլի, բանջարեղենի (մանավանդ վաղահաս տեսակների), արտադրության ավելացման նպատակով պահանջվում է դրանց աճի համար ավելի արդյունավետ օգտագործել ոռոգելի հողերը և գետահովիտները, ընդլայնել այդ արտադրանքի ապրանքային արտադրության գոտիները և, միաժամանակ, ստեղծել ջերմատնային նոր տնտեսություններ։ Մեր հանրապետությունում հատկապես զգալի աշխատանք կկատարվի գյուղատնտեսության առաջատար և բարձր եկամտաբեր ճյուղերի՝ խաղողագործության ու պտղաբուծության զարգացման համար։*

*Կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ պարզ ասված է. «Մեր առջև ամբողջ սրությամբ կանգնած է նաև գյուղատնտեսության այնպիսի կարևորագույն պրոբլեմ, ինչպիսին է*

անասնաբուծության հետագա վերելքը։ Բնակչությանն անխափան կերպով առավել արժեքավոր սննդամթերքներ մատակարարելու, այդ մթերքների նկատմամբ սովետական մարդկանց աճող պահանջմունքները բավարարելու համար նոր հնգամյակում պետք է խոշոր առաջընթաց քայլ կատարվի այդ բնագավառում։ Այստեղ անհրաժեշտ է նաև ավելի լրիվ մոբիլիզացնել այն ռեզերվները, որ ունեն կոլտնտեսություններն ու սովխոզները»։

Ելնելով դրանից, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում պահանջվում է ապահովել անասնաբուծության հետագա զարգացումը՝ յուրաքանչյուր տնտեսությունում իրագործելով արդյունավետ միջոցառումների սիստեմ՝ կերի բազայի ամրապնդման, անասունների ու թռչունների ցեղի բարելավման, դրանց գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման համար։ Նախատեսվում է հնգամյակի ընթացքում երկրում մսի տարեկան միջին արտադրությունը հասցնել առնվազն 14,3 միլիոն (սպանդանոցային քաշով), կաթինը՝ 92,3 միլիոն, բրդինը՝ 464 հազար տոննայի, ձվինը՝ 46,7 միլիարդ հատի։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գլխավոր պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Դա չափազանց կարևոր խնդիր է, որի հաջող լուծման համար պետք է համապատասխան միջոցներ ներդնել և կազմակերպված ու հետևողական աշխատանք ծավալել։ Մինչև հնգամյակի վերջը պետական ձեռնարկություններում համակցված կերի արտադրությունը հասցվելու է առնվազն 30 միլիոն տոննայի, սպիտակուցա-վիտամինային խառնուրդներինը՝ մեկ միլիոն տոննայի։ Ավելացվելու է նաև հանքային կերախառնուրդների արտադրությունը և սննդի ու մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մնացուկները լայնորեն օգտագործվելու են կերի նպատակով։

Անասնաբուծական մթերքների արտադրության գործում դեռևս որոշակի դեր են խաղում գյուղական բնակչության սեփական օժանդակ տնտեսությունները։ Դրա համար պահանջվում է որոշված նորմաների սահմաններում խրախուսել այդ տնտեսություններում անասունների ու թռչունների գլխաքանակի ավելացումը, նրանց օգնություն ցույց տալով կերով և անասուններն ապահովելով արոտավայրերով։

Անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման համար առանձնապես առավել լարված աշխատանք պետք է կատարվի մեր հանրապետությունում։ Դրա անհրաժեշտությունը թելադրվում է նրանով, որ հանրապետության շատ տնտեսություններում դեռևս էական թերություններ կան անասունների գլխաքանակի ավելացման, հոտի բարելավման և մթերատվության բարձրացման գործում։ Անհանդուրժելի համարելով նման վիճակը, Հայաստանի կոմկուսի XXV համագումարն իր որոշմամբ պահանջեց «վճռականապես վերացնել հանրային անասնապահության բնագավառում եղած թերությունները, ստեղծել կերի կայուն բազա, ըստ ամենայնի ավելացնել մսի, կաթի, ձվի ու բրդի արտադրությունը, ինչպես նաև ժամանակին ավարտել մսի, կաթի, ձվի արտադրության խոշոր ֆաբրիկաների և կոմպլեքսների կառուցումն ու գործարկումը»։

## ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակում գյուղատնտեսության առջև դրված խնդիրների լուծման վճռական պայմանը—



գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդումն է՝ հողագործության ու անասնապահության քիմիացման, կոմպլեքսային մեքենայացման ու հողերի լայն մելիորացման միջոցով դրա ինտենսիվացման կուրսի հետևողական իրագործումը։

«Գիտությունը և փորձը ուսուցանում են,— ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թ. հուլիսյան պլենումում տված իր զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացումը, նրա տեխնիկական վերազինումն արդի պայմաններում այն վճռական գործոններն են, որոնք որոշում են նրա հետագա զարգացման տեմպերը։ Մենք այդ խնդրի լուծման ուրիշ ճանապարհ չունենք։ Մենք այժմ այնքան ազատ հողեր չունենք, որպեսզի մեծ մասշտաբներով ընդարձակենք ցանքատարածությունները։ Ընդհակառակը, մեզանում նվազում է բնակչության մեկ շնչի ապահովվածությունը վարելահողով։ Իսկ դա նշանակում է, որ հողի հեկտարը տարեցտարի պետք է ավելի ու ավելի շատ արտադրանք տա»։

Հողից շատ արտադրանք ստանալու համար պետք է ընդլայնել պարարտանյութերի օգտագործման ծավալը և գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը հասցնել այնպիսի մակարդակի, որն ապահովի դաշտային աշխատանքների կարճ ժամկետներում կատարումը, բարձրացնի հողագործության ինտենսիվացման աստիճանը։ Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, «Պարարտանյութերի վրա արված ծախսերին և գործիքների ու մեքենաների արժեքին վերաբերող տվյալները հողագործության ինտենսիվության աստիճանի ամենաճշգրիտ վիճակագրական արտահայտությունն են հանդիսանում» (Երկեր, հատ. 22, էջ 38)։

Այս առումով երբ ուսումնասիրում ենք նոր հնգամյակում գյուղատնտեսությանը հատկացվող կապիտալ ներդրումները, միանգամայն պարզ է դառնում, թե ինչպիսի խոշոր միջոցներ են տրամադրվում գյուղատնտեսության հետագա քիմիացման, մեքենայացման, հողերի մելիորացման և այլնի համար։

1971—1975 թվականներին երկրի գյուղատնտեսության զարգացման նպատակով կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը, ամբողջությամբ վերցրած (պետական և կոլտնտեսային), սահմանված է մոտավորապես 129 միլիարդ ռուբլի։ Դա 47 միլիարդ ռուբլով ավելի է, քան անցած հնգամյակում կամ նույնքան, որքան նախորդ երկու հնգամյակները միասին վերցրած։ Այս ամենից բացի, զգալի կապիտալ ներդրումներ են կատարվելու նաև ժողովրդական տնտեսության այն ճյուղերում, որոնք կապված են գյուղատնտեսության նյութա-տեխնիկական ապահովման հետ։ Այսպես, հանքային պարարտանյութերի, գյուղատնտեսական մեքենաների, համակցված կերի, էլեկտրաէներգիայի արտադրության, ինչպես նաև մանրէակենսաբանական արդյունաբերության ու այլնի համար հնգամյակում կապիտալ ներդրումներն ավելանալու են 11,5 միլիարդ ռուբլով և հասնելու են 29,3 միլիարդ ռուբլու։

Գյուղատնտեսության բնագավառում աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման ամենավճռական գործոնը՝ արտադրապրոցեսների հետագա մեքենայացումն է, ողջ գյուղատնտեսության տեխնիկական զինվածության ապահովումը։ Չնայած այդ ասպարեզում մեզ մոտ խոշոր գործ է կատարված, բայց մի շարք պատճառներով գյուղատնտեսությունը, որը ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղ է, իր տեխնիկական զինվածության մակարդակով դեռևս ետ է մնում ար-

*գյունաբերությունից։ Այստեղից էլ այն մեծ ուշադրությունը, որ կուսակցությունը նվիրում է գյուղատնտեսության տեխնիկական զինվածության բարձրացմանը և այնպիսի նպաստավոր պայմանների ստեղծմանը, որոնք ամենուրեք հնարավորություն կընձեռեն այդ ճյուղում առավել չափերով ներդնելու գիտության և տեխնիկայի նվաճումները։*

*Այդ նպատակով նոր հնգամյակում մեծ առաջընթաց քայլ կկատարվի։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն երկրի գյուղատնտեսությունը հնգամյակի տարիներին կստանա 1.700 հազար տրակտոր, 1.100 հազար բեռնատար ավտոմեքենա, 1.500 հազար տրակտորի կցան, 87 հազար էքսկավատոր, 82 հազար բուլդոզեր, 42,5 հազար սկրեպեր, ինչպես նաև 15 միլիարդ ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ, այդ թվում՝ 541 հազար հացահատիկի կոմբայն, 230 հազար սիլոսահավաք և 60 հազար ճակնդեղահավաք կոմբայն, 6 միլիարդ ռուբլու մեքենաներ՝ անասնապահության և կերի արտադրության աշխատանքները մեքենայացնելու համար։ Գյուղատնտեսության մեջ էներգետիկ կարողությունները կաճեն 161 միլիոն ձիաուժով կամ մեկ ու կես անգամ։*

*Մեր գյուղատնտեսությունը տեխնիկական հագեցման նման տեմպեր դեռևս չի ունեցել։ Սակայն գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը չի սահմանափակվում սոսկ նրա քանակական աճով։ Զգալի աշխատանքներ կկատարվեն տեխնիկայի կատարելագործման, երկրի տարբեր բնակլիմայական պայմաններին համապատասխան նոր, առավել արտադրողական մեքենաների թողարկման համար։ Կբարձրանան տրակտորների և մյուս մեքենաների շահագործման ու տնտեսական ցուցանիշները։*

*Կոլտնտեսություններում ու սովխոզներում մեծ քանակությամբ նորագույն տեխնիկայի ստացման հետ միասին կբարելավվի նրա օգտագործումը, պահպանումը, պահեստամասերով ապահովումը, ինչպես նաև ինժեներական ու արտադրական սպասարկումը։ Այս և մյուս միջոցառումների իրագործմամբ գյուղատնտեսության մեջ հնգամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը պետք է բարձրանա 37—40 տոկոսով և զգալի չափով իջնի արտադրանքի ինքնարժեքը։*

*Նոր հնգամյակում լայն ծավալ է ստանալու նաև հողերի մելիորացումը, որը գյուղատնտեսության ինտենսիվացման գլխավոր գործոններից է։*

*1971—1975 թվականներին մելիորատիվ աշխատանքների ծրագրի կատարումն ապահովելու նպատակով նախատեսված են 26,6 միլիարդ ռուբլու պետական կապիտալ ներդրումներ։ Այդ նույն ժամանակաշրջանում մեր հանրապետությունում ոռոգման ցանցի ընդարձակման համար պետական կապիտալ ներդրումները կազմելու են 172,3 միլիոն ռուբլի, նախորդ հնգամյակի 70 միլիոն ռուբլու դիմաց։ Այդպիսի մեծ կապիտալ ներդրումների շնորհիվ հանրապետությունում ոռոգելի կդարձվի ևս 34 հազար հեկտար հողատարածություն և կջրարբիացվի 130 հազար հեկտար ամառային արոտավայր։ Կապիտալ ներդրումների փոխհատուցման և բերքատվության բարձրացման միջոցով գյուղատնտեսական արտադրանքի ավելացման համար պետք է արդյունավետ օգտագործել ջուրը, ոռոգման ողջ սիստեմը։*

*Նկատի ունենալով գյուղատնտեսության վերելքի գործում ոռոգման աշխատանքների հաջող կազմակերպման կարևոր նշանակությունը, ՀԿԿ XXV համագումարը հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունից, կոլտնտեսություններից ու սովխոզներից պահանջեց անհետաձգելի միջոցներ ձեռնարկել ռացիոնալ օգտագործելու ոռոգման ջուրը, կարգավորելու միջտնտեսային և ներտնտեսային ոռոգիչ ցանցը, կանխելու ջրի կորուստները։*



*Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևոր ու արդյունավետ գործոն է նաև քիմիացումը։ Կուսակցության ու կառավարության ձեռնարկած կտրուկ միջոցների շնորհիվ վերջին տարիներին մեր քիմիական արդյունաբերությունը խոշոր չափով ավելացրեց գյուղատնտեսությանը տրվող հանքային պարարտանյութերի ու մյուս քիմիկատների արտադրությունը։ Դրանց արտադրության ծավալն ավելի է մեծանալու ընթացիկ հնգամյակում։ 1975 թվականին գյուղատնտեսության համար հանքային պարարտանյութերի մատակարարումները հասնելու են 72 միլիոն տոննայի, իսկ կերի ֆոսֆատներինը՝ 3 միլիոն տոննայի։*

*Հանքային պարարտանյութերի արտադրության ու մատակարարման ավելացմանը զուգընթաց խնդիր է դրվում՝ ապահովել դրանց լավ պահպանումը, կորուստների կանխումը և արդյունավետ օգտագործումը։ Աստիճանաբար անցնել հանքային պարարտանյութերը մասնագիտացված տրանսպորտով՝ առանց տարայի փոխադրմանը, բեռնման ու բեռնաթափման, ինչպես նաև հողերի պարարտացման աշխատանքների կոմպլեքսային մեքենայացմանը։*

*Գյուղատնտեսության ինտենսիվացումը պահանջում է նաև ստեղծել ու արտադրության մեջ ներդնել գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձր բերքատու սորտեր և հիբրիդներ, բարելավել հոտի կազմը, այն համալրել առավել մթերատու անասուններով, կատարելագործել արտադրության տեխնոլոգիան և լայնորեն օգտագործել գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները։*

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐՈՎ

*Գյուղատնտեսության ինտենսիվացումը ենթադրում է բնական ու տնտեսական պայմանների համաձայն նրա ճիշտ ու նպատակահարմար տեղաբաշխում, արտադրության մասնագիտացում, կենտրոնացում ու աստիճանաբար փոխադրում արդյունաբերական հիմքերի վրա։*

*Գյուղատնտեսության մի այնպիսի ճյուղում, ինչպիսին անասնաբուծությունն է, այդ առումով արդեն որոշակի քայլեր են արված։ Արդյունաբերական հիման վրա մսի, կաթի, ինչպես նաև ձվի արտադրության խոշոր կոմպլեքսների ստեղծման և թռչնաֆաբրիկաների կառուցման նպատակով վերջին տարիներս իրականացված միջոցառումները հնարավորություն են տալիս հիշյալ մթերքների արտադրությունը մեծ չափով ավելացնելով հանդերձ, նվազեցնել կերի ծախսումները, կրճատել սպասարկող անձնակազմը, ավելի արդյունավետ օգտագործել արտադրական շենքերն ու սարքավորումները, բարձրացնել ֆոնդահատույցն ու շահութաբերությունը։*

*Այդ ասպարեզում ուսանելի փորձ են կուտակել ՍՍՀՄ «Թռչնարդ» սիստեմի տնտեսությունները, որոնք 1970 թվականին արտադրել են 10,7 միլիարդ ձու և 224 հազար տոննա միս (կենդանի քաշով)։ Լավ տնտեսություններում յուրաքանչյուր ածան հավից, կոլտնտեսությունների ու սովխոզների միջինի համեմատությամբ, 100 ձու ավելի են ստացել և մեկ միավոր արտադրանքի վրա երկու անգամ պակաս կեր ծախսել։*

ՍՍՀՄ-ում ձվի պետական գնման ամբողջ ծավալում արդյունաբերական թռչնաբուծության տեսակարար կշիռը 1965 թվականի 27 տոկոսի դիմաց, 1970 թվականին կազմել է մինչև 54 տոկոս, թռչունի մսինը՝ համապատասխանաբար, 42 և 61 տոկոս։ 1.000 ձվի արտադրության վրա ծախսվող աշխատանքը պակասել է մինչև 1,2 մարդ-օրով, կերը՝ մինչև 2,7 ցենտներ կերամիավորով, ինքնարժեքն իջել է՝ մինչև 64 ռ. 77 կոպեկով (տե՛ս В. В. Мацкевич, «Сельское хозяйство в новой пятилетке», «Экономическая газета», № 11, 1971 г.):

Արդյունաբերական հիմունքներով թռչնաբուծության զարգացման ասպարեզում որոշակի աշխատանք է կատարված նաև մեր հանրապետությունում։ Վերջին տարիներս կառուցված և շահագործման հանձնված խոշոր թռչնաբուծական ֆաբրիկաները 1970 թվականին արտադրեցին 50 միլիոն ձու և 2.400 տոննա թռչունի միս, որոնց ինքնարժեքը բավականին ցածր էր։

Արտադրանքի ավելացման և ինքնարժեքի իջեցման հետ մեկտեղ, մասնագիտացված և արդյունաբերական հիմքի վրա դրված թռչնաբուծական տընտեսություններն ունեն ևս մեկ կարևոր առավելություն։ Դա այն է, որ այդ տնտեսությունները վերացնում են արտադրության սեզոնայնությունն ու համաչափ ձու և միս մատակարարում սպառողներին։

Սովետական Միության մի շարք հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում որոշակի քայլեր են արվում արդյունաբերական հիմունքներով նաև անասնաբուծական մյուս հիմնական մթերքների արտադրությունը զարգացնելու նպատակով։

Գյուղատնտեսության մեջ կատարվող խոշոր կապիտալ ներդրումների հետ միասին երկրի մեքենաշինության, շինարարական ինդուստրիայի, համակցված կերի և միկրոբիոլոգիայի արդյունաբերության զարգացման առկա մակարդակը հնարավորություն է տալիս նոր հնգամյակում լայնորեն ծավալելու խոշոր անասնապահական կոմպլեքսների և թռչնաֆաբրիկաների կառուցումը։ Դա վճռական ազդակ կհանդիսանա անասնապահության մեջ գիտա-տեխնիկական առաջադիմության արագացման և արտադրանքի ավելացման համար։ Այդ նպատակով ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում պահանջվում է՝ «Մեքենայացված անասնապահական ֆերմաներ կառուցել կոլտնտեսություններում, սովխոզներում, քաղաքների մոտակայքում ծավալել արդյունաբերական հիման վրա անասնապահական մթերքների պետական, կոլտնտեսային ու միջկոլտընտեսային խոշոր համակառույցների, ինչպես նաև թռչնաֆաբրիկաների շինարարությունը։ Կազմակերպել խոշոր եղջերավոր անասունների մատղաշի ու խոզերի ինտենսիվ բտում սովխոզներում, կոլտնտեսություններում, արդյունաբերական և հասարակական սննդի ձեռնարկությունների օժանդակ տնտեսություններում»։

Ելնելով համագումարի դիրեկտիվներից, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը նորերս որոշեցին արդյունաբերական հիման վրա կառուցել և ընդլայնել մսի ու կաթի արտադրության 1.170 խոշոր պետական կոմպլեքսներ և 585 թռչնաֆաբրիկա։ Նույն որոշմամբ նախատեսված է ՍՍՀՄ «Թռչնարդ» սիստեմի տնտեսություններում ձվի արտադրությունը 1975 թվականին հասցնել 19,2 միլիարդ հատի, թռչնամսինը (կենդանի քաշով)՝ 600 հազար տոննայի, մսի արտադրությունը պետական անասնապահական կոմպլեքսներում՝ 1,3 միլիոն (կենդանի քաշով), կաթինը՝ 2,1 միլիոն տոննայի։



Երկրի՝ անասնաբուծական մթերքների պահանջի հիմնական մասը բավարարում են կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնց արտադրանքի ավելացման նպատակով շարունակվելու է ներտնտեսային մասնագիտացումը, կազմակերպվելու են խոշոր արտադրամասեր, բրիգադաներ, ֆերմաներ, ուր ներդրվելու է նոր տեխնոլոգիա։ Օգտագործվելու են բազմապիսի մեքենաներ ագրեգատներ ու սարքավորումներ։ Նույնպիսի միջոցառումներ են անցկացվելու նաև բուսաբուծության ասպարեզում։

Արդյունաբերական հիմունքներով մասնագիտացված խոշոր տնտեսությունների կազմակերպմամբ հանդերձ ձեռնարկվելու է նաև արտադրված մթերքների՝ տեղում պահպանելու և վերամշակելու գործը, որպեսզի առևտրական ցանցին պարբերաբար տրվեն թարմ մթերքներ։

Արդյունաբերական հիմունքներով գյուղատնտեսական մթերքների արտադրության կազմակերպումը նոր, կարևոր էտապ է մեր գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Դա կապահովի կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի հետագա զարգացումը և խոր փոփոխություններ կմտցնի գյուղի սոցիալական կյանքում։ Առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, գիտության նվաճումների արմատավորման շնորհիվ գյուղում կփոփոխվեն աշխատանքի պայմանները, կոլտնտեսականի, սովխոզի բանվորի աշխատանքը կդառնա ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը, կբարձրանա նրանց կուլտուր-կրթական մակարդակը, որակավորումը, կմերձենան քաղաքի ու գյուղի կյանքի և կենցաղի պայմանները։

ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ընկեր Բրեժնևը նշելով, որ առաջիկա տարիներին հետագա զարգացում կստանան գյուղատնտեսական արտադրության մեջ ինդուստրիալ մեթոդների արմատավորումը, ասաց. «Դա օրինաչափ է. խոսքը վերաբերում է այն պրոցեսներին, որոնք հեռանկարում որոշելու են մեր գյուղատնտեսության ապագան։ Բայց այդ մեծ ու կարևոր աշխատանքը կատարելիս մենք պարտավոր ենք մեզ ապահովել սխալներից ու առաջ վազելուց։ Մասնագիտության խորացումը և արտադրությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելը, ամեն մի կոնկրետ դեպքում, պետք է լինի տնտեսապես հիմնավորված, համակողմանիորեն նախապատրաստված»։

* * *

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները նոր, լայն հեռանկարներ են բացել երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման, գյուղի աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար։ Համագումարի որոշումները դարձնելով իրենց աշխատանքի ամենօրյա ծրագիրը, կոլտնտեսականները, սովխոզների բանվորները, գյուղի բոլոր աշխատավորները կրկնապատկված եռանդով պայքար են տանում կուսակցության նախագծումները՝ նոր հնգամյակում իրենց առջև դրված խնդիրները ժամկետից շուտ լուծելու համար։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑԸ

ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցական կազմակերպություններից պահանջեց ամենօրյա հսկողություն սահմանել կուսակցության որոշումների ու դիրեկտիվների իրագործման վրա, բարձրացնել կադրերի, բոլոր կոմունիստների պատասխանատվությունն առաջադրված խնդիրների լուծման գործում։ Կատարման ստուգման հստակ կազմակերպումը կուսակցությունը դիտում է որպես կադրերի դաստիարակության կարևոր միջոց։ Ընդ որում, պահանջվում է, որ այն լինի հետևողական ու սիստեմատիկ։ Կուսակցությունը կատարման ստուգման լավագույն ձև է համարում նաև սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունները վերադաս կուսակցական մարմինների առջև։ Այդ կապակցությամբ հարցերը նախապատրաստելիս ու քննարկելիս՝ առավել բազմակողմանի ու խորությամբ են բացահայտվում կուսկազմակերպության գործունեության հաջողություններն ու թերությունները։

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ ներքևից եկող «ինֆորմացիան օգնում է ավելի լավ կողմնորոշվելու իրադրության մեջ, ավելի լրիվ հաշվի առնելու կուսակցական կազմակերպությունների, աշխատավորների փորձն ու կարծիքը հարցերը լուծելիս»։ Նշելով, որ ներքևից եկող ինֆորմացիան դարձել է ավելի օպերատիվ ու բովանդակալից՝ ընկ. Բրեժնևը կուսակցական մարմինների առջև խնդիր դրեց՝ ավելի բարելավել այն, բարձրացնել դրա ներգործությունը և ավելի լավ օգտագործել որպես ղեկավարման գործիք, դաստիարակության ու վերահսկողության միջոց։

Մեր հանրապետության կուսակցության քաղկոմ-շրջկոմներն այս ասպարեզում կուտակել են աշխատանքի հարուստ և ուսանելի փորձ։ Նրանք բյուրոների, պլենումների նիստերում պարբերաբար լսում են սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունները, ընդհանրացնում ու տարածում առաջավոր փորձը, բացահայտում նրանց գործունեության թերությունները, օգնում կուսաշխատանքի բովանդակության բարձրացմանը։ Այստեղ դրականը պետք է համարել այն, որ օգնությունը տվյալ կազմակերպությանը սկսվում է հաշվետվությունների նախապատրաստման հենց առաջին օրից։

Կուսակցության Հոկտեմբերյանի, Արտաշատի, Ախուրյանի, Կալինինոյի, և այլ շրջկոմներ հատուկ տեղ են հատկացնում ներքևից եկող ինֆորմացիային, սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունների քննարկմանը։ Հաշվետվությունների քննարկումը, սակայն, չպետք է ինքնանպատակ լինի, այն կոչված է լուրջ բեկում մտցնելու սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ։ ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմը այս կարևոր հարցը դիտում է հենց այդ տեսանկյունից։ Այստեղ հաշվետվությունների նախապատրաստման ժամանակ սկզբնական կուսկազմակերպություններին ցույց է տրվում գործնական օգնություն, ամեն մի քննարկում նպաստում է կուսակցական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքի բարելավմանը։

Հաշվետվությունները ցույց են տալիս, որ կուսկազմակերպությունները հետևողականորեն կատարելագործում են աշխատանքի ձևերն ու մեթոդները, տնտեսական ու կուլտուրական շինարարության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում ցուցաբերում լուրջ մոտեցում, կոլեգիալ կերպով լուծում կուսակցական կյանքի բազմատեսակ հարցեր։ Ակնհայտ է, որ տնտեսական մեծ խնդիրների լուծման ժամանակ կուսկազմակերպությունները հանդես են գալիս որպես քաղաքական ղեկավար, որն ուղղություն է տալիս մյուս կազմակերպությունների գործունեությանը։ Հոկտեմբերյանի շրջանի կուսկազմակերպությունների հաշվետվություններից երևում է, որ նրանք հետևողականորեն ձգտում են է՛լ ավելի բարելավելու հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեությունը, արմատավորելու աշխատանքի կազմակերպման գիտականորեն հիմնավորված ձևեր։ Այսպես, անցյալ տարի կուսշրջկոմի բյուրոն քննարկեց «Շրջանի շինարարական կազմակերպություններում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վիճակը»։ Հարցի ընտրությունը պատահական չէր. շինարարության պլանները չէին կատարվում։ Շրջկոմի բյուրոն պարզեց, որ շինվարչություններում պատասխանատու աշխատանքի են առաջ քաշվել այնպիսի մարդիկ, որոնք չունեն ինչպես գործնական հատկանիշներ, այնպես էլ մասնագիտական բավարար ունակություն։ Հաճախ կատարվել է նաև կադրերի անհարկի վերադասավորում, որը բացասաբար է անդրադարձել շինարարության որակի և պլանային առաջադրանքների կատարման վրա։ Այս ամենի հետևանքով ցածր էին շինարարական կազմակերպությունների ցուցանիշները, ձգձգվում էին օբյեկտները շահագործման հանձնելու ժամկետները։

Բացահայտված թերությունները վերացնելու նպատակով կուսշրջկոմը մշակեց, ապա սկզբնական կուսկազմակերպությունների հետ իրականացրեց մի շարք միջոցառումներ։ Առաջին հերթին կատարվեցին կադրերի փոփոխություններ, նրանց ուժերի վերատեղաբաշխում, բարձրացվեց նրանց անձնական պատասխանատվությունը շինարարության վիճակի համար, ամուր հիմքերի վրա դրվեց աշխատանքային կարգապահությունը, վճռական պայքար ծավալվեց բանվորների հոսունությունը կանխելու համար։ Կուսշրջկոմի բյուրոյից հետո շինարարական կազմակերպություններն ամրապնդեցին նյութատեխնիկական բազան, զգալի չափով բարձրացրին շինարարության մեքենայացման աստիճանը, բարելավեցին աշխատանքի կազմակերպումը։

Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանը (դիրեկտոր՝ Կ. Առաքելյան) երկար ժամանակ չէր կատարում արտադրական պլանները։ պատճառը աշխատանքային ցածր կարգապահությունն էր։ Կուսշրջկոմը միջամտեց գործին։ Հարցը քննարկվեց շրջկոմի բյուրոյում, որը վերանայեց ձեռնարկության կադրերը. դիրեկտոր հաստատեց գլխավոր ինժեներ Հ. Անդրեասյանին, արտադրության վճռական տեղամասերն ամրապնդեց բարեխիղճ կոմունիստներով։

Ջանցած երկար ժամանակ՝ գործարանն սկսեց աշխատել ռիթմիկ, կատարել ու գերակատարել առաջադրանքները։

Գյուղական կուսկազմակերպությունների հաշվետվությունների քննարկման ժամանակ մեծ ուշադրություն է նվիրվում գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ կուսակցության դիրեկտիվների ու որոշումների կենսագործմանը։ Շեշտը դրվում է գյուղատնտեսական մթերքների հետագա աճի ապահովման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, տնտեսությունները հաշվենկատ վարելու հարցերի վրա։ Ինչպես երևում է հաշվետվություններից, գյուղական սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ ավելի բնորոշ է գյուղատնտեսական արտադրության զարգացման հարցերի կոմպլեքսային լուծումը։ Նրանք պայքար են ծավալում գյուղատնտեսության վարման կուլտուրայի բարձրացման, ագրոմիջոցառումների հետևողական կենսագործման համար։

Զարմանալի չէ, որ Հոկտեմբերյանի շրջանում նշանակալիորեն աճել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների ջանքերով անցած տարի պլանից դուրս արտադրվեցին մեծ քանակությամբ խաղող, բանջարաբոստանային կուլտուրաներ։ Հացահատիկի բերքատվությունը հեկտարից կազմեց 35 ցենտներ, պետությանը խաղող վաճառելու պլանը կատարվեց 141 տոկոսով, բանջարեղենինը և բոստանային կուլտուրաներինը՝ 135, հացահատիկինը՝ 850 տոկոսով։ Բարձր ցուցանիշների հասան նաև շրջանի անասնապահները։ Նրանք երկուսուկես ամիս շուտ զեկուցեցին հայրենիքին կաթի, մսի, ձվի արտադրության ու վաճառքի տարեկան պլանները կատարելու մասին։ Տարեցտարի աճում են կոլտնտեսությունների ու սովխոզների դրամական եկամուտները։ 1961 թվականի 21.732.400-ից 1970 թ. դրանք հասան ավելի քան 32 միլիոն ռուբլու։

Կուսակցության դիրեկտիվների և սեփական որոշումների կատարումն ապահովելու նպատակով՝ կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները, հաշվետվությունները քննարկելիս, իրենց ուշադրության կենտրոնում են պահում աշխատանքի կազմակերպման հարցերը, գործնական օգնություն ցույց տալիս կոլտնտեսությունների վարչություններին, սովխոզների դիրեկցիաներին, ֆերմաների վարիչներին ու բրիգադավարներին։ Նման օգնությունից միշտ գործը շահում է։ Նշեմ մեկ օրինակ. տարիներ շարունակ շրջանային կուսակցական կոնֆերանսներում, շրջկոմի պլենումի ու բյուրոյի նիստերում իրավացի քննադատվում էր Երվանդաշատի կոլտնտեսության ղեկավարությունը։ Այստեղ ցածր էր գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակը, սկզբնական կուսկազմակերպությունն աչքաթող էր արել կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը, ընկած էր աշխատանքային կարգապահությունը։ Կուսշրջկոմը միջամտեց գործին. լսեց սկզբնական կուսկազմակերպության հաշվետվությունը, վերանայեց կադրերը, կոլտնտեսության նախագահ երաշխավորեց արտադրության հմուտ կազմակերպիչ, գյուղատնտես Ա. Սարգսյանին։ Ժամանակի ընթացքում լուրջ բեկում առաջացավ կոլտնտեսության վարչության գործունեության մեջ, արտադրության հաշվենկատ վարմամբ տնտեսությունը բռնեց վերելքի ուղին։ 1968 թ. համեմատությամբ նրա եկամուտներն անցյալ տարի ավելացան մոտ 2 անգամ։ Կոլտնտեսությունը հնարավորություն ստացավ զբաղվելու գյուղում կուլտուրա-



կան շինարարության ծավալմամբ, աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմամբ։

Կամ մեկ այլ օրինակ։ Մայիսյան սովխոզի սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի հաշվետվությունը քննարկելիս՝ բացահայտվեցին կուսկազմակերպության ու դիրեկցիայի գործունեության լուրջ թերությունները։ 1969 թվականին սովխոզը թերակատարել էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և խոտի կուտակման պլանները։ Դա հետևանք էր այն բանի, որ սովխոզում ընկած էր աշխատանքային կարգապահությունը, ցածր էր հողագործության վարման կուլտուրան, հոգ չէր տարվում այգիները լիարժեք դարձնելու, բանվորական ուժը խելացիորեն տեղաբաշխելու և ռացիոնալ օգտագործելու մասին։ Այսպես, 1969 թ. աշխատուժը օգտագործվել էր 64,4 տոկոսով, խախտվել էր գյուղատնտեսական կուլտուրաների մշակության ագրոտեխնիկան։ Բերքատվության ցածր մակարդակը բացասաբար էր ազդում մթերքների ինքնարժեքի վրա։ Խաղողի մեկ ցենտների ինքնարժեքը, նախատեսված 22 ռուբլի 39 կոպ. փոխարեն, կազմում էր 25 ռուբլի 54 կոպ.։ Թերություններ էին բացահայտվել նաև քաղաքական-մասսայական աշխատանքում, սոցիալիստական մրցությունը կրում էր ձևական բնույթ, անբավարար էին պրոպագանդվում առաջավոր փորձն ու գյուղատնտեսական գիտության նվաճումները։ Կուսկազմակերպության բյուրոն անբավարար էր իրականացնում վերահսկողության իր ֆունկցիան, թույլ պահանջկոտություն էր ցուցաբերում կադրերի նկատմամբ, հաշտվում էր գոյություն ունեցող թերությունների հետ։ Դրանց հետևանքով կուսակցական ժողովներում թույլ էր ծավալվում քննադատությունը, որոշումների մի մասը մնում էր անկատար։

Կուսկազմակերպության հաշվետության քննարկումից հետո կուսշրջկոմի բյուրոն ընդունեց կոնկրետ որոշում։ Կուսկազմակերպության ժողովում կոմունիստներն ընդունեցին իրենց կազմակերպության հասցեին արված իրավացի քննադատությունը, մշակեցին գործնական միջոցառումներ՝ կուսշրջկոմի բյուրոյի և կուսժողովի բացահայտած թերությունները վերացնելու համար։ Բրիգադաներում հրավիրված արտադրական խորհրդակցություններում վերանայվեցին սոցիալիստական պարտավորությունները, գործարար բնույթ հաղորդվեց մրցությանը։ Սահմանվեցին «Առաջավոր բրիգադային», «Առաջավոր կթվորին» և ուրիշ փոխանցիկ դրոշներ ու հուշադրոշներ, նախատեսվեց յուրաքանչյուր տասնօրյակի վերջում ամփոփել մրցության արդյունքները։ Կուսկազմակերպությունը միաժամանակ վերանայեց արտադրական ճյուղերի կադրերը, կատարեց կոմունիստների ուժերի տեղաբաշխում։ Անցավ մեկ տարի, և վիճակը փոխվեց. Մայիսյան սովխոզը 1970 թվականի տնտեսական տարին փակեց բարձր ցուցանիշներով։

Ներկուսակցական աշխատանքը կուսկազմակերպությունների գործունեության կարևոր բնագավառ է։ Դրա հաջողությամբ է պայմանավորված կուսկազմակերպության մարտունակության բարձրացումը։ ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը խորությամբ վերլուծեց ներկուսակցական կյանքի հարցերը, կուսակցությանը, կուսկազմակերպություններին զինեց հետագա գործողության հստակ ծրագրով։ Ընկ. Բրեժնևն ընդգծեց, որ կուսկազմակերպությունները որոշակի հետևություններ են արել կուսակցական կյանքի հարցերի լուծման վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի պահանջներից և իրենց գործունեությունը վերակառուցել դրանց համա-

պատասխան։ Հոկտեմբերյանի շրջանի կուսկազմակերպությունը ևս շոշափելի գործ է կատարել այդ ասպարեզում։ Երվանդաշատի և Բագարանի կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունները քննարկվել են հենց ներկուսակցական կյանքի կապակցությամբ։ Քննարկումների ընթացքում բացահայտվել են այդ բնագավառի լուրջ թերությունները։ Բանն այն է, որ այդ կուսկազմակերպություններում աշխատանքի պլանը կազմվում էր հապճեպ, չէր հաստատվում բյուրոյի նիստում, հարցերի նախապատրաստմանն ու ժողովներում դրանց քննարկմանը քիչ մարդ էր մասնակցում, որի պատճառով այն գործարար բնույթ չէր կրում, որոշումները լինում էին ոչ կոնկրետ, չէին արտահայտում կոմունիստների կոլեկտիվ կամքն ու արտադրության զարգացման շահերը, անտեսված էր որոշումների իրականացման վերահսկողությունը։ Երկու կուսկազմակերպությունների ժողովներում հազվադեպ էին քննարկվում ներկուսակցական կյանքին վերաբերող հարցեր, երբեմն խախտվում էին կուսժողովների հրավիրման ժամկետները։

Կուսշրջկոմի բյուրոյի նիստից անմիջապես հետո շրջկոմի հրահանգիչները եղան տեղերում, օգնեցին բյուրոյի որոշումները սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում քննարկելուն։ Ժամանակի հետ փոխվեց և վիճակը։ Ինչպես Երվանդաշատի, այնպես էլ Բագարանի կուսկազմակերպություններում աշխուժացավ ներկուսակցական կյանքը, բարձրացավ կոմունիստների ակտիվությունը, զարգացավ նրանց նախաձեռնությունը։

Հոկտեմբերյանի կուսշրջկոմը չի զբաղվում միայն թույլ տնտեսությունների կուսկազմակերպությունների հարցերով։ Կուսակցական լավագույն փորձի արմատավորման և նոր ռեզերվների ու հնարավորությունների մոբիլիզացման նպատակով՝ կուսշրջկոմը քննարկում է նաև առաջավոր տնտեսությունների կուսբյուրոների հաշվետվությունը։

Խրախուսելի է, որ կուսշրջկոմը պարբերաբար լսում է նաև կուսկազմակերպությունների հաշվետվությունն աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործը բարելավելու կապակցությամբ։ Հաշվետվությունների քննարկումներն ամեն կերպ նպաստում են կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը, թաքնված ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը, և, ամենակարևորը, մարդկանց քաղաքական դաստիարակությանը։

Կուսակցական-կազմակերպական աշխատանքի մակարդակը մեծ մասամբ պայմանավորված է այն բանով, թե ով է ղեկավարում տվյալ կազմակերպությունը։ Հաշվետվությունները միաժամանակ օգնում են պարզելու. արդյոք կուսբյուրոյի քարտուղարն ունա՞կ է գլխավորելու կուսկազմակերպության գործունեությունը, դրանք նպաստո՞ւմ են քարտուղարների կազմի բարելավմանը։ Հոկտեմբերյանի շրջանում կուսկազմակերպությունների քարտուղարների ճնշող մասն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, աշխատանքի հարուստ փորձ։ Քարտուղարների նման կազմի առկայությամբ հնարավոր է լինում ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերը, բարձրացնել նրանց ավանգարդային դերն ու անձնական պատասխանատվությունը, կազմակերպել ՍՄԿԿ շարքերը լավագույն մարդկանցով համալրելու գործը։

Կուսակցական կազմակերպական աշխատանքի բովանդակության բարձրացման շահերը պահանջում են հաշվետվության ձևը լայնորեն կիրառել նաև սկզբնական կուսկազմակերպություններում։ Հոկտեմբերյանի շրջանում դա



ևս մեծ տարածում է գտել։ Կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում կոմունիստները պարբերաբար հաշիվ են տալիս, թե իրենք ինչպես են կատարում ՍՄԿԿ կանոնադրության պահանջները, ինչպես են ապահովում իրենց ավանգարդային դերը և ղեկավարում վստահված տեղամասերի գործերը։

Հաշվետվությունների քննարկման ժամանակ դրական է բնութագրվում այն փաստը, որ շրջկոմի ապարատի աշխատողները, բյուրոյի անդամները, շրջկոմի քարտուղարներն իրենց ժամանակի մեծ մասն անց են կացնում սկզբնական կուսկազմակերպություններում, ցույց տալիս գործնական օգնություն, մտքեր փոխանակում կոմունիստների և անկուսակցական մասսաների հետ։ Շրջկոմի հրահանգիչները սերտ կապ են պահպանում կուսկազմակերպությունների հետ, գիտեն, թե ինչ է կատարվում այնտեղ, ժամանակին միջամտում են հարցերի լուծմանն ու ընթացք տալուն։

Հաշվետվությունների քննարկման ժամանակ մեծ տեղ է տրվում կադրերի հետ տարվող աշխատանքին, նրանց ռեզերվի ստեղծմանը, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդմանը։ Քննարկումն օգնում է ճիշտ գնահատելու մարդկանց գործունեությունը, կատարելագործելու կուսկազմակերպությունների աշխատանքի ոճն ու մեթոդները։ Այժմ կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը վճռելիս՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ղեկավարվում են ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներով։

Հաշվետվությունների քննարկումն ու կուսակցական ինֆորմացիան կարևոր ձև են՝ քննադատությունն ու ինքնաքննադատությունը ծավալելու, կուսակցության որոշումների կատարման ստուգումն ապահովելու, կուսկազմակերպություններին գործնական օգնություն ցույց տալու, նրանց գործունեությունը բարելավելու համար։ Սակայն, ինչպես ցույց է տալիս փորձը, այդ ձևն ավելի արդյունավետ է այն ժամանակ, երբ հաշվետվությունների նախապատրաստման ու քննարկման ընթացքում չի ցուցաբերվում մակերեսային վերաբերմունք, այլ կատարվում է խոր վերլուծություն ու ընդհանրացում, դրանց հիման վրա ընդունվում համոզիչ, հիմնավորված, գործին օգնող որոշում։ Դրա համար հարկավոր է ունենալ հաշվետվությունների քննարկման որոշակի պլան։ Ամեն մի քննարկում պետք է բխի այս կամ այն կուսկազմակերպությունում, տնտեսությունում, արտադրական ճյուղում գործերի վիճակի բարելավման շահերից ու անհրաժեշտությունից։

Խնդիրն այն է, որ մշտապես կատարելագործվի հաշվետվություններ լսելու փորձը, այն լրացվի նոր կողմերով, դառնա կուսակցական ղեկավարման, վերահսկողության ու դաստիարակության իսկական դպրոց, կարևոր միջոց՝ կուսկազմակերպությունների մարտունակության հետագա բարձրացման և կուսակցության դիրեկտիվների ու որոշումների կենսագործման համար։ Հաշվետվության ամեն մի քննարկում պետք է նպաստի ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից կուսկազմակերպությունների առջև դրված նոր խնդիրների անթերի լուծմանը, իններորդ հնգամյակի մեծ կանխագծումների իրականացմանը։

Խ. Գ. ՍԱՖԱՐՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ՀՈՒՍԱԼԻ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Կուսակցության XXIV համագումարն ընդգծեց, որ իններորդ հնգամյակը կարևոր էտապ կլինի դեպի կոմունիզմ ընթացող սովետական հասարակության հետագա առաջընթացի ասպարեզում: Այդ առաջընթացից անմասն չի մնա նաև Սևանի շրջանը: Հնգամյա պլանով շրջանի արդյունաբերության զարգացման համար բացվել են վառ հեռանկարներ: Առաջիկա հինգ տարում գրեթե կկրկնապատկվի արտադրանքի ծավալը: Նախնական հաշվումներով այն ներկայիս 16 միլիոնից 1975 թ. կհասնի ավելի քան 38 միլիոն ռուբլու: Այդ տարիներին կգործարկվեն արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ, լրիվ կարողությամբ կաշխատեն Գագարինավանի շինարարական խոշոր մեքենաների նորոգման, ապակեէլեկտրամեկուսիչների և գործադիր սարքերի գործարանները, որոնցից յուրաքանչյուրը տարեկան կթողարկի մոտ վեց միլիոն ռուբլու արտադրանք:

Կուսակցությունը տնտեսական մարմինների ուշադրությունը բևեռում է էժան հումքի աղբյուրների որոնման, տեղական հումքն արդյունաբերական նպատակներով օգտագործելու վրա: Այս խնդիրը առավել սրությամբ առաջ քաշվեց նաև ՍՄԿԿ XXIV համագումարում: Տեղական հումքի արդյունավետ օգտագործումն արտադրության աճի և արտադրանքի էժանացման լավագույն ուղերվ է: Հարկավոր է այն ճիշտ օգտագործել: Մինչև այժմ Սևանի ապակեէլեկտրամեկուսիչների գործարանը (ԱԷՄ) հիմնական հումքը՝ ապակեգնդիկները, ներմուծում էր Միության տարբեր քաղաքներից: Մինչդեռ դրանց համար լավ հումք է նաև տեղական բազալտը: Ընթացիկ տարում շահագործման կհանձնվեն գործարանի ապակեգնդիկների և կաղապարման արտադրամասերը, որոնց շնորհիվ հնարավորություն կստեղծվի տեղական բազալտ քարի հարուստ պաշարն օգտագործել ապակեէլեկտրամեկուսիչների հիմնական հումքը՝ ապակեգնդիկները, ստանալու համար:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և բանվորների աշխատանքի պայմանների բարելավման կարևոր միջոց են մեքենայացումն ու ավտոմատացումը: Այս խնդիրը նոր հնգամյակում ևս կլինի մեր կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում: ԱԷՄ գործարանի էլեկտրավառարանների արտադրամասում շուտով կտեղակայվի 400 ֆիլիերանոց 25 նոր էլեկտրավառարան, ներկայիս 200 ֆիլիերանոցի փոխարեն: Տեխնիկական այս միջոցառումների իրականացմամբ ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա մոտ 25, արտադրանքի ինքնարժեքը կիջնի ավելի քան 30 տոկոսով:

Գործադիր սարքերի, տոնածառի զարդարանքների գործարանների և մյուս



ձեռնարկությունների կուսկազմակերպությունները միջոցառումներ են մշակել աշխատանքի գիտական կազմակերպումը կիրառելու, արտադրական պրոցեսները մեքենայացնելու և ավտոմատացնելու, նոր հոսքային գծեր անցկացնելու, արտադրանքի որակը բարելավելու համար:

Սևանի էկոնոմիկայի առաջատար ճյուղերից է ձկնարդյունաբերությունը: Նախատեսվում է նոր հնգամյակում ապահովել դրա աննախադեպ զարգացումը: Հայտնի է, որ վերջին տասնամյակում, լճի մակարդակի իջեցման հետևանքով, զգալիորեն նվազել է ձկան պաշարը: Դա խիստ անհանգստացնում է ինչպես հանրապետական, այնպես էլ շրջանային մարմիններին: Նրանք ուղիներ են որոնում՝ ձկան, հատկապես իշխանի, պաշարները լճում զգալիորեն մեծացնելու համար: Այդ նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և կառավարության մշակած մի շարք միջոցառումների թվում արմատական նշանակություն ունեցավ 1971 թ. մարտի 22-ի «Սևանա լճում ձկան պաշարները ավելացնելու միջոցառումների մասին» որոշումը: Այդ որոշմամբ երկու տարով՝ 1971 թ. ապրիլի 1-ից մինչև 1973 թ. ապրիլի 1-ը դադարեցվում է բոլոր տեսակի լողամիջոցներով ձկան որսը: Կուսշրջկոմի բյուրոն իր հերթին անդրադարձավ այդ կենսական նշանակություն ունեցող հարցին և համապատասխան միջոցառումներ մշակեց՝ ՀԿԿ Կենտկոմի և Մինիստրների սովետի որոշումը կենսագործելու, լճում ձկան պաշարները պաշտպանելու և ավելացնելու և, հատկապես, ապօրինի որսի և ձկնագողության դեմ պայքարն ուժեղացնելու համար: Կուսշրջկոմի բյուրոյի որոշմամբ տարբեր կազմակերպություններին պատկանող բոլոր տեսակի լողամիջոցները կենտրոնացվեցին և հանձնվեցին լճափնյա տնտեսության վարչության տնօրինությանը, պահանջվեց ձուկտեսչությունից, շրջակա գյուղական սովետների գործկոմներից ու շրջանի դատաքննչական մարմիններից՝ խիստ հսկողություն սահմանել ձկան պաշտպանության նկատմամբ և հետևել մշակված միջոցառումների անթերի կատարմանը:

Ձկնարդյունաբերության աշխատողների ջանքերն այժմ ուղղել ենք այն բանին, որ ձուկն ավելի շատ բուծվի ու բազմացվի արհեստական եղանակով: Այդ խնդրի լուծման նպատակով հանրապետության կառավարությունը զգալի գումար է տրամադրել Սևանի ձկնաբուծական գործարանին: Դրանով հնարավոր կլինի նշանակալի չափով մեծացնել ձեռնարկության կարողությունները: Ձկնաբույծները 1975 թ. կաճեցնեն և Սևանա լիճ բաց կթողնեն ավելի քան 25 մլն տարբեր տեսակի ձկնիկներ, 1970 թ. 16 մլն դիմաց: Լճի ջուրը բնականին մոտ մակարդակի վրա պահելու համար ձեռնարկված միջոցները կօգնեն ստեղծելու հատկապես իշխանի բնական բազմացման լավագույն կենսապայմաններ:

Շրջանում կատարվող կապիտալ շինարարությունը միշտ գտնվել է կուսակցական, սովետական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Նրանց օգնությամբ «Սևանշին» տրեստի նոր ղեկավարությունը լրջորեն մտահոգված է նախորդ տարիներում իր աշխատանքում տեղ գտած թերությունների վերացմամբ: Նա կառուցողների ուժերը մոբիլիզացրել է իններորդ հնգամյակի առաջին տարվա կապիտալ շինարարության պլան-պարտավորությունները պատվով կատարելու համար: Առաջին հաջողություններն արդեն առկա են. տրեստի շինմոնտաժային աշխատանքների ընթացիկ տարվա առաջին

եռամսյակի պլանը գլխավոր կապալառուի կողմից կատարվեց 111,5, իսկ սեփական ուժերով՝ 118,4 տոկոսով։

Հարկ է նշել, որ կապիտալ շինարարության խնդիրներն լուծելու համար պետք է լուրջ ուշադրություն նվիրել մի շարք կարևոր հարցերի։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրվում շինարարության առավել կենտրոնացման վայրերում ստեղծել շինարարական ինդուստրիայի շրջանային ու միջշրջանային արտադրական մասնագիտացված բազաներ, ամրապնդել շինարարության նյութա-տեխնիկական բազան։ Շրջանի կուսակցական, սովետական կազմակերպությունները բազմիցս հարց են բարձրացրել հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության առջև՝ «Սևանշին» տրեստի նյութա-տեխնիկական մատակարարման բազաների և շինարարական իրերի կոմբինատի կարողություններն ընդլայնելու, նրանց համապատասխան սարքավորումներով ապահովելու համար։ Սակայն տարիներ շարունակ այս կարևոր հարցերն ուշադրության չեն արժանանում։ Արտառոցն ու զարմանալին այն է, որ մինիստրությունը, փոխանակ անհրաժեշտ միջոցներ տրամադրի և ընդլայնի կոմբինատի արտադրական կարողությունները, վերացրեց մոտ 10 միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն կատարող տրեստին երկաթ-բետոնե կոնստրուկցիաներով, շաղախով և այլ նյութերով սպասարկող միակ շինարարական իրերի կոմբինատը։ Այս փաստը վկայում է, որ մինիստրության ընկերները խոր չվերլուծեցին երևույթը, չցանկացան պարզել, թե ինչպիսի տնտեսական վնաս, շինանյութերի մատակարարման գործում խզում կառաջանա կոմբինատի լուծարքման հետևանքով։ Մեր կարծիքով, ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության ղեկավարները կվերանայեն իրենց որոշումը և կդիմեն գործնական քայլերի։

Նոր հնգամյակում մեր շրջանում նոր թափ ու ծավալ կստանա բնակարանային շինարարությունը։

Նախորդ հնգամյակի 4—5 հազար քմ փոխարեն 1971—1975 թթ. ընթացքում տարեկան շահագործման կհանձնվի 10—12,5 հազար քմ բնակտարածություն։ Բնակարանային շինարարությունը կենսական պահանջ է մեր քաղաքի համար։ Արտադրության աննախադեպ զարգացմանը կուղեկցի բնակչության աճը, իսկ վերջինս կհարուցի մեծ պահանջ բնակարանների նկատմամբ։ Միայն նորակառույց 3-րդ միկրոթաղամասում բնակչությունը կհասնի 6000 մարդու։ Նախատեսվում է մինչև հնգամյակի վերջն այստեղ շահագործման հանձնել 5—8 հարկանի 36 բնակելի շենք։ Նոր միկրոթաղամասը կունենա կուլտուր-կենցաղային սպասարկման բոլոր անհրաժեշտ պայմանները։

Հնգամյակում արմատապես կլուծվի դպրոցաշինարարության հարցը։ Դա սոցիալական առաջադիմության մեր խնդիրների մեջ ունի ուրույն տեղ։ 1971—72 թվականներին կավարտվի Լճաշենի, Ծովագյուղի, Սեմյոնովկայի և Գոմաձոր թաղամասի, իսկ մինչև հնգամյակի վերջը՝ Սևան քաղաքի և Ցայցի գյուղի հանրակրթական նոր դպրոցների շինարարությունը՝ ավելի քան չորս հազար աշակերտական տեղով։ Ծաղկունքում, Գեղամավանում, Նորաշենում, Ցայցիում կկառուցվեն ուսուցչի տներ։ Հնգամյակի ընթացքում միայն Սևան քաղաքում ծնունդ կառնի մշակույթի երկու պալատ, որոնցից մեկը կունենա 600, մյուսը՝ 400 տեղանոց հանդիսասրահ։ Քաղաքը կունենա նաև իր երաժշտական դպրոցի նոր շենքը՝ 350 սովորողի համար, պիոներների պալատը և սպորտային համալիրը՝ 10 հազար տեղով։ Այս ամենը լայն հնարավորություններ



կստեղծեն երիտասարդության գեղագիտական ու ֆիզիկական դաստիարակության համար։

Շրջանում կընդլայնվի նաև նախադպրոցական հիմնարկությունների ցանցը. նոր հնգամյակում շահագործման կհանձնվի 4 մսուր-մանկապարտեզ։ Կավարտվի Սևան—Ցայցի նոր ջրատարի կառուցումը, որով վերջնականապես կլուծվի Ծաղկունք, Դդմաշեն և Ցայցի գյուղերի ջրամատակարարման հարցը։ Դդմաշենում, Ծովագյուղում շարք կմտնեն կապի նոր բաժանմունքներ, Ծովագյուղում՝ մշակույթի պալատ, Նորաշենում և Ցայցիում՝ ակումբներ։ Բնական գազ կստանան Սեմյոնովկան, Ծովագյուղը, Վարսերը և Լճաշենը, կավարտվի շրջանի գյուղերի հատակագծման աշխատանքը։

Իններորդ հնգամյակի դիրեկտիվներում ավելի մեծ տեղ է տրվում աշխատավորների հանգստի կազմակերպմանը։ Այս ասպարեզում մեծ անելիքներ կան նաև մեր շրջանում։ Աշխատավորների հանգիստն արդյունավետ անցկացնելու նպատակով՝ նախատեսվում է գրեթե ամբողջությամբ կառուցապատել հանգստի հանրապետական գոտին, որի լճափնյա երկարությունը մոտ 13 կիլոմետր է։ Ցամաքաբերդի բարձունքի վրա կկառուցվեն 240 տեղանոց հյուրանոց, «Արևիկ» պիոներական ճամբարի երկրորդ և երրորդ շենքերը։ Հայկական այդ նոր «Արտեկը» 1972 թ. կգործի ամբողջ կարողությամբ և միանգամից կընդունի 1350 պիոներ-դպրոցական։ Գեղատեսիլ լճի ափին վեր կհառնեն 2200 տեղանոց տուրիստական հանգրվանի, ՀԱՄԽ-ի հանգստյան տան և մեկ տասնյակից ավելի առողջարանների ու պանսիոնատների հոյակերտ շենքերը։ Այսպիսով, լճափը կդառնա կատարյալ հանգստավայր և ոչնչով չի զիջի առաջնակարգ առողջարաններին։ Ի լրումն այդ ամենի՝ պատշաճ ուշադրություն կնվիրվեն լճակի անտառապատմանն ու կանաչապատմանը։ Հնգամյակի տարիներին Սևանի անտառտնտեսությունը լճի ցամաքած մասերում և շրջակա թեք լանջերին 1.250 հեկտարի վրա կհիմնի անտառային գոտի, կստեղծի 100 հեկտարանոց դաշտապաշտպան անտառաշերտ։

Անտարակույս, մեծ են աշխատավորների նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման, բնակչության սոցիալական առաջադիմության արագացման ասպարեզում ձեռնարկվող կանխագծումները, նշանակալից են կատարված աշխատանքները։ Սակայն, կան նաև այդ կանխագծումների իրականացումն արգելակող խոչընդոտներ։ Օգտվելով առիթից՝ անհրաժեշտ եմ համարում հանրապետության համապատասխան մարմինների ուշադրությունը հրավիրել լճափի կառուցապատման ու կանաչապատման և աշխատավորների հանգստի կազմակերպման հետ կապված մի քանի չլուծված խնդիրների վրա։ Ցավոք հարցերից մեկն այն է, որ լճափում ամեն ինչ կառուցվում է առանց տվյալ հատվածի ճարտարապետական մշակման ու միասնական սխեմի։ Դրա պատճառով առանձին կառույցներ չեն ներդաշնակում Սևանի կուսական բնաշխարհին, շրջակա լեռների ու լճերի գեղեցկությանը։

Հանրահայտ է, որ Սևանա լիճն իրեն է ձգում հազարավոր հանգստացողների։ Հաշված է, որ ամռան ամիսներին յուրաքանչյուր շաբաթ-կիրակի լճափ է այցելում 25—30 հազար մարդ։ Մինչդեռ մինչև օրս լուծված չեն ափի կոյուղու, հեռախոսակապի, ավտոբուսային երթևեկության և սպասարկման մի քանի հարցեր։

Կոյուղու հարցը լուծման կարոտ է նաև Սևան քաղաքում։ Այս առթիվ լուրջ խոսակցություն եղավ կուսակցության շրջանային XXV կոնֆերանսում։ Ձնա-

յած որ դեռևս 1968 թ. սկսվել է Սևան—Քաղսի կոլեկտորի շինարարությունը, սակայն անցած 3 տարիներին, պլանավորված մեկ միլիոն 43 հազար ռուբլու դիմաց, կատարվել է 83 հազար ռուբլու աշխատանք։ Ինչպես առողջարանային քաղաքի զարգացման ու բարեկարգման, այնպես էլ լճի ջրերը աղտոտումից պաշտպանելու համար՝ կարևոր նշանակություն ունեն այդ կառույցի շինարարության արագացումն ու ավարտումը։ Կուսակցության շրջանային կոնֆերանսը խնդրեց ՀՍՍՀ Մինիստրների սովետին՝ ներազդելու «Արմսպեցմոնտաժստրոյ» վարչության վրա, որպեսզի նա փոխի իր վերաբերմունքն այդ կարևոր կառույցի նկատմամբ, արագացնի կոլեկտորի շինարարությունը և կարճ ժամանակամիջոցում շահագործման հանձնի այն։ Այստեղ արժե հիշատակել կուսակցության XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն կարևոր միտքը, որ «Սոցիալիզմի առավելությունները թույլ են տալիս քաղաքների աճի բնական պրոցեսն այնպես տանել, որ դրանց բնակչությունն օգտվի կյանքի ավելի ու ավելի առողջ ու հարմար պայմաններից»։ Մենք պարտավոր ենք լուրջ եզրակացություն անել սրանից։

Սևանն իր տարածքով Հայաստանի նախալեռնային փոքր շրջաններից է։ Այն զբաղեցնում է ընդամենը 378 ք/կմ տարածություն, որի ամենացածր կետը ծովի մակերևույթից 1.766 մետր բարձր է։ Խիստ արտահայտված լեռնային ռելիեֆը վաղուց ի վեր սևանցի հողագործին ստիպել է զբաղվել առավելապես անասնապահությամբ՝ տնտեսության այդ ճյուղին ենթարկելով նաև դաշտավարությունը։ Շրջանում համեմատաբար ընդարձակ տարածություններ են զբաղեցնում ամառային փարթամ արոտավայրերը, որոնք հնարավորություն են ընձեռում պահելու ավելի շատ անասուններ։ Նոր հնգամյակում նախատեսվում է մեր շրջանի տնտեսություններում զգալիորեն ավելացնել անասունների գլխաքանակը։ Մեր պարտքն է չմոռանալ ՍՄԿԿ XXIV համագումարի այն եզրակացությունը, որ անասնապահության հետագա վերելքը գյուղատնտեսության կարևոր պրոբլեմ է և նոր հնգամյակում պետք է առաջընթաց քայլ կատարել այդ բնագավառում։ Այդ պահանջը ելնում է նրանից, որպեսզի բնակչությանն անխափան մատակարարվեն առավել արժեքավոր սննդամթերքներ, բավարարվի այդ մթերքների նկատմամբ սովետական մարդկանց աճող պահանջմունքը։ Կուսակցությունը միաժամանակ ընդգծում է, որ, այդ խնդիրը կատարելու համար, ամենից առաջ, պետք է ամրապնդել «...անասնապահության հիմքը կազմող կերի բազան»։

Սակայն, պիտի ընդունել, որ հանրային անասունների գլխաքանակի ներկա մակարդակի և Սևանի երկարատև ու խստաշունչ ձմռան առկայության պայմաններում սեփական միջոցներով հնարավոր չէ բավարար չափով կեր կուտակել։ Հետևաբար, հարկավոր է գործողության մեջ դնել նոր ռեզերվներ ու հնարավորություններ։ Դրանցից մեկը, ի հաշիվ մյուս կուլտուրաների, բազմամյա և միամյա խոտերի ցանքատարածությունների ընդարձակումն է։ Նոր հնգամյակում պլանավորված է, ներկայիս 2.300 հեկտարի դիմաց, բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը շրջանում հասցնել 3.100 հեկտարի, միջին բերքատվությունը՝ 40 ցենտների։ Դա հնարավորություն կընձեռի հիմնականում լուծելու կերի կայուն բազայի ստեղծման պրոբլեմը։ Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները կկարողանան տարեկան կուտակել 25 հազար տոննա խոտ, 15 հազար տոննա սիլոս, 5 հազար տոննա ծղոտ և 2.000



տոննա հատիկային կեր կամ զգալիորեն ավելի, քան կուտակվում էր մինչև այժմ։

Կերի բազան ամրապնդելու նպատակով՝ շրջանի մի շարք տնտեսություններ, որոնք վերջին տարիներին զգալիորեն ավելացրել են ջրովի հողատարածությունը, որոշել են զարկ տալ գոնգեղի և կերի ճակնդեղի մշակությանը։ Կերային այդ կուլտուրաները մեզ մոտ լավ արդյունք են տալիս և հեռանկարային են։ Դրանով հնարավորություն կստեղծվի զգալիորեն ավելացնել անասունների գլխաքանակը։

Հնգամյակի տարիներին առավել մեծ ուշադրություն է նվիրվելու անասունների մթերատվության աճին։ Շրջանի մի քանի տնտեսությունների օրինակը ցույց է տալիս, որ կաթնատվության բարձրացման հնարավորությունները մեզ մոտ բավականաչափ են։ Միևնույն հողակլիմայական պայմաններում գտնվող Ջկալովկայի կոլտնտեսության և Սեմյոնովկայի սովխոզի անասնապահները վաղուց արդեն միջին հաշվով ամեն մի կովից տարեկան ստանում են 2.000 կգ կաթ, իսկ առաջավոր կթվորուհիները՝ ավելի շատ։ Այդ պոտենցիալ հնարավորությունը նկատի ունենալով՝ մեզ մոտ արդեն մի քանի տարի է, ինչ հետևողական աշխատանք է կատարվում, գիտության նվաճումների ներդրման, առաջավոր փորձի արմատավորման և, հատկապես, ցեղի բարելավման միջոցով, հասնելու կաթի արտադրության նշանակալից ավելացման։ Այդ նպատակով ֆերմաներն աստիճանաբար համալրվում են առավել բարձր մթերատու անասուններով, բարելավվում է ցեղաբուծական գործը։

ՍՄԿԿ XXIV համագումարում նշվեց, որ մեր պլանները, հնգամյակի ընթացիկ հարցերի լուծումը սերտորեն շաղկապվում են գյուղատնտեսական հիմնական հեռանկարային ուղղությունների հետ։ Դրանցից մեկը մեքենայացումն է։ Սակայն ճշմարտությունը պահանջում է ասել, որ շրջանում դեռևս ցածր է անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը։ Առանձին տնտեսություններում անասունների կերի բաշխումը, կիթը, գոմաղբի դուրս բերումը կատարվում են ձեռքով։ Հասկանալի է, դա չի կարող խթանել մթերատվության բարձրացումը, անասունների խնամքի բարելավումը։ Մեքենայացման պահանջը նոր չէ, այն առաջ է քաշվել նաև ՍՄԿԿ Կենտկոմի համագումարին նախորդած պլենումներում։ Ելնելով հարցի կարևորությունից՝ մենք ուսումնասիրեցինք անասնապահական ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացման վիճակը և ընթացիկ տարվա հունվարին լայնորեն քննարկեցինք կուսշրջկոմի բյուրոյում։ Բյուրոն պահանջեց շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպություններից ու ղեկավարներից՝ անասնապահական ֆերմաների մասնակի մեքենայացումից աստիճանաբար անցնել կոմպլեքսայինի։ Այդ և մյուս միջոցառումների իրականացմամբ շրջանի անասնապահները հնարավորություն կունենան հնգամյակի վերջին տարում՝ 1975 թվականին, արտադրել ավելի քան 60 հազար ցենտներ կաթ, 1970 թ. 45,4 հազարի դիմաց, 10 հազար ցենտներ միս, 800 ցենտներ բուրդ և մեկուկես միլիոն ձու։ Մեր տնտեսությունները հնգամյակի ընթացքում 30—35 տոկոսով կավելացնեն անասնապահական մթերքների վաճառքը պետությանը։ Դա, իր հերթին, 40—45 տոկոսով կբարձրացնի կոլտնտեսականների և սովխոզների բանվորների եկամուտները։

* * *

Ձեռնարկված բոլոր միջոցները նպատակ ունեն առավել արդյունավետ օգտագործելու եղած բնական ռեսուրսները։ Սակայն, Սևանի հնարավորությունները բավականաչափ սահմանափակ են, մինչդեռ շրջանի և Սևան քաղաքի զարգացման բուռն տեմպերն առավել մեծ խնդիրներ են դնում գյուղատնտեսության առջև, քան նրա հնարավորություններն են։

Բանն այն է, որ արդյունաբերության աննախընթաց վերելքը մեծ չափով խթանում է բնակչության աճի տեմպերը։ Սևանը՝ նախկին Ելենովկան, իր ստեղծման առաջին տարիներին՝ 1870-ական թվականին, ուներ ընդամենը 900 բնակիչ։ Նախկին այդ փոքրիկ բնակատեղին այժմ դասվում է հանրապետական ենթակայության քաղաքների շարքը։ Առաջիկա տասնամյակում բնակչությունը կաճի ավելի բուռն տեմպերով և կհասնի մինչև 53 հազարի։ Բացի այդ, Սևանը կունենա նաև իր մեծ թվով ոչ մշտական բնակչությունը։ Ինչպես հայտնի է, Սևանա լճի ափերն այժմ արագորեն կառուցապատվում են և վերածվում առողջարանային կենտրոնի։ Մոտավոր հաշվումներով Սևանա լճի ափին, հատկապես ամառային ամիսներին, օրական միաժամանակ կհանգստանա մոտ 30 հազար մարդ։ Այս հանգամանքը թելադրում է առաջիկայում ևս Սևանում ողջ գյուղատնտեսությանը տալ մերձքաղաքային թեքում և, ամենակարևորը, անասնապահական մթերքների արտադրությունը դնել արդյունաբերական ռելսերի վրա։ Կուսակցության XXIV համագումարն այդ խնդիրը նոր հնգամյակում համարեց առաջնային։ Այս առումով Սևանում արդեն մի քանի կանխագծումներ իրականացվում են։ Գագարինավանի մոտակայքում արդեն երկրորդ տարին է, ինչ կառուցվում է հզոր թռչնաֆաբրիկա, որը կունենա մոտ մեկ մլն. թռչուն, տարեկան կարտադրի 50 մլն. հատ ձու, օրական՝ 8 տոննա միս, իսկ Սևանում՝ Հրազդան գետի նախահունում, մի այլ խոշոր կառույց՝ ալրաղաց կոմբինատը, որը խտացրած կերով կապահովի ոչ միայն շրջանում մսակաթնային ուղղություն ստացած անասնապահության պահանջները, այլև կմատակարարի Սևանի ավազանի շրջաններին։

Առաջիկա հնգամյակում շրջանում նշանակալի կզարգանա նաև մերձքաղաքային տնտեսության մեկ այլ կարևոր ճյուղ՝ կարտոֆիլաբուծությունը։ Մինչև վերջերս կարտոֆիլի բերքատվությունը մեզ մոտ ամբողջապես կախված էր բնության շնորհներից։ Այն ցանվում էր բացառապես անջրդի հողերում։ Այդ պայմաններում բարձր բերքի մասին խոսք անգամ լինել չէր կարող։ Որոշվեց այսուհետև մի շարք տնտեսություններում կարտոֆիլի ցանքը կատարել ոռոգելի հողատարածություններում, բարելավել ցանքի, մշակության, բերքահավաքի և սերմնաբուծության գործը։ Մինչև ոռոգման սեզոնի սկսվելը կավարտվի Լճաշենի և Սևանի սովխոզների նոր ջրհան կայանների կառուցումը, որի շնորհիվ ջրովի կդառնա 300 հեկտար վարելահող։ Այսպիսով, շրջանի տնտեսություններում ոռոգելի հողատարածությունները կհասնեն ավելի քան 1.100 հեկտարի։ Այս ամենը վկայում է, որ առաջիկա մեկ-երկու տարում շրջանում արմատապես կբարելավվի կարտոֆիլի արտադրության գործը և մեր շրջանի կարտոֆիլաբույծները հաջողությամբ կկատարեն հնգամյակի վերջին տարում պետությանը 27,5 հազ. ցենտ. կարտոֆիլ վաճառելու առաջադրանքը։

Իր մասշտաբների վեհությամբ նոր հնգամյակը հուսալի հեռանկարներ է բացում Սևանի հետագա զարգացման համար։

Ս. Ս. ՋԱՔԱՐՅԱՆ

ՀԿԿ Սևանի շրջկոմի առաջին քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԴՐԱՄԱԿԱՆ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման ու արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից մեկը, աշխատանքի վերջնական արդյունքների նկատմամբ աշխատողների նյութական շահագրգռվածության ապահովումն է։

Այդ կարևոր նախադրյալի ստեղծումը, առաջին հերթին, պայմանավորված է նյութական խրախուսանքի այնպիսի ձևերի ու սիստեմների մշակմամբ, կիրառվող եղանակների կատարելագործմամբ, որ դրանք լիովին համապատասխանեն տվյալ ժամանակաշրջանի պահանջներին ու խնդիրներին։

ՍՄԿԿ XXIV համագումարն այդ հարցերին մեծ ուշադրություն նվիրեց։ Համագումարի դիրեկտիվներում ասված է. «Բարձրացնել կոլտնտեսային-սովխոզային արտադրության արդյունավետությունը։ Սովխոզներում և կոլտնտեսություններում բարելավել աշխատանքի կազմակերպումը, կատարելագործել աշխատանքի վարձատրության սիստեմը, նպատակ ունենալով բարձրացնել գյուղատնտեսական աշխատողների նյութական շահագրգռվածությունը մթերքների արտադրության ավելացմամբ և դրանց ինքնարժեքի իջեցմամբ»։

Կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության բարելավման գործում սոցիալ-տնտեսական կարևոր նշանակություն ունեցավ 1966 թվականի հուլիսի 1-ից անցումն ամենամսյա երաշխավորված (դրամով և բնամթերքով) վարձատրությանը։ Դրա իրագործման շնորհիվ կարճ ժամանակամիջոցում զգալի չափով բարելավվեց եկամուտների բաշխումը, երաշխավորված վարձատրության ֆոնդի ճիշտ կազմակերպումը և օգտագործումը, բարձրացավ կոլտնտեսականների վարձատրության մակարդակը, դրա մեջ դրամի տեսակարար կշիռը և տարվա ընթացքում վճարումների քանակը։

Դրան զգալի չափով նպաստեց նաև պետությանը վաճառվող մթերքների դիմաց մթերող կազմակերպությունների դրամական ավանսավորումից կոլտնտեսությունների ուղղակի բանկային վարկավորման սիստեմին անցումը, որը կոլտնտեսություններին հնարավորություն ընձեռեց դրամական միջոցների սեզոնային պակասը լրացնել բանկի կարճատև վարկերի հաշվին։ Եթե մինչև 1966 թվականի հուլիսի 1-ը դրամական վարձատրության էին անցել ՍՍՀՄ բոլոր կոլտնտեսությունների 50 տոկոսը, ապա 1970 թվականի վերջին՝ ավելի քան 95 տոկոսը, այսինքն՝ դրանց տեսակարար կշիռը 4,5 տարում աճեց 1,9

անգամ։ Այս տեսակետից մեծ հաջողության են հասել հատկապես Էստոնական, Մոլդավական, Կիրգիզական, Լատվիական և Թուրքմենական հանրապետությունները, որտեղ ներկայումս բոլոր կոլտնտեսությունները, առանց բացառության, անցել են դրամական վարձատրության։ Էստոնական ՍՍՀ կոլտնտեսություններում աշխօրը վերջնականապես վերացվել է 1964 թվականին։

Մինչդեռ, մեր հանրապետության կոլտնտեսություններում այդ սիստեմն անհրաժեշտ չափով չի տարածվել։ Բավական է ասել, որ առ 1-ը հունվարի 1970 թվականի դրությամբ, դրամական վարձատրություն են կիրառել հանրապետության միայն 17 կոլտնտեսություն կամ մոտ 3,5 տոկոսը։ Դրանցից 8-ը դրամական վարձատրության են անցել 1958—1959, իսկ 6-ը՝ 1967—1968 թվականներին։ Ինչպես տեսնում ենք, մեր հանրապետության կոլտնտեսություններում դրամական վարձատրությունն սկսվել է կիրառվել 11—12 տարի առաջ, սակայն, մինչև օրս այն բավարար չափով տարածում չի ստացել։

Ո՞րն է պատճառը, ինչո՞ւ իր դարն ապրած աշխօրային սիստեմը սովորության ուժով դեռևս լայնորեն կիրառվում է մեր հանրապետության կոլտնտեսություններում, երբ շատ հանրապետություններում վաղուց ի վեր այն վերացվել է։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության կոլտնտեսությունների մեծ մասը դրամական վարձատրության կիրառման լայն հնարավորություններ ունեն։ Բավական է ասել, որ կոլտնտեսությունների մեծ մասում վարձատրության ընդհանուր գումարի մեջ դրամը կազմում է 85—95 և ավելի տոկոս։ Այդ տնտեսություններում միանգամայն հնարավոր է լրիվ չափով դրամով վճարել երաշխավորված վարձատրությունը։ Նրանք կարող են, իհարկե, դրամի սեզոնային պակասի դեպքում այն լրացնել պետական բանկի կարճատև վարկերի հաշվին, ինչպես դա արվում է երկրի շատ կոլտնտեսություններում։

Մեր կարծիքով, անհրաժեշտ հնարավորությունների առկայության պայմաններում որոշ կոլտնտեսությունների ղեկավարներ չեն ցանկանում անցնել դրամական վարձատրության, որովհետև այն պահանջում է տնտեսավարման համեմատաբար բարձր մակարդակ։ Դրամական վարձատրության իրագործման պայմաններում ավելի է բարձրանում վարձատրության ավելացման, ամեն ամիս այն կանոնավոր և ժամանակին վճարման նկատմամբ ղեկավար աշխատողներին առաջադրվող պահանջները։ Մինչդեռ, աշխօրի դեպքում վարձատրության ցածր մակարդակը, երաշխավորված վարձատրության ոչ լրիվ և անկանոն վճարումները կարծես արդարացվում են «ինչ որ ստացվել է, այն էլ բաշխվում է» արատավոր մտայնությամբ։ Ղեկավարվելով այդ սկզբունքով, տնտեսության որոշ ղեկավար աշխատողների մոտ հանգստացուցիչ տրամադրություն է ստեղծվում եղած հնարավորությունների և ռեզերվների արդյունավետ օգտագործման, եկամուտների ըստ ամենայնի ավելացման նկատմամբ։

Մեր հանրապետության կոլտնտեսություններում դրամական վարձատրության անբավարար կիրառման պատճառներից մեկն էլ կոլտնտեսությունների ղեկավար աշխատողների մի մասի պահպանողական մոտեցումն է այդ առաջավոր սիստեմի նկատմամբ։ Պետք է ասել նաև, որ նրանց մի մասը հարկ եղած նախաձեռնություն չի ցուցաբերում գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման գործում ո՛չ միայն սկզբնական դժվարություններից խուսափելու, այլև անհաջողության դեպքում ամբողջ պատասխանատվու-



թյունն իրենց վրա չվերցնելու պատճառով։ Այս հանգամանքը պետք է հաշվի առնել և պահանջկոտության հետ միասին այդ ընկերներին համապատասխան օգնություն ցույց տալ՝ տնտեսություններում վարձատրության առաջավոր ձևին անցնելու համար։

Այդ գործում մեծ է շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական օրգանների դերը։ Նրանց կազմակերպական և բացատրական աշխատանքով է մեծապես պայմանավորված գյուղատնտեսական ձեռնարկություններում վարձատրության արդյունավետ ձևերի կիրառումը։ Սակայն նրանք ևս, իրենց հերթին, մինչև օրս հարկ եղած աշխատանք չեն կատարել ինչպես շրջանի, այնպես էլ մեր և Միության մյուս հանրապետությունների դրամական վարձատրություն կիրառող կոլտնտեսությունների փորձն ուսումնասիրելու և անհրաժեշտ պայմաններ ունեցող կոլտնտեսություններում արմատավորելու համար։

Հանրապետության կոլտնտեսություններում դրամական վարձատրության անբավարար տարածման պատճառներից մեկն էլ այն է, որ դրա էության և առավելությունների մասին պրոպագանդիստական թույլ աշխատանք է տարվում։ Դրանով պետք է հիմնականում բացատրել, որ հանրապետության որոշ կոլտնտեսություններում ճիշտ չեն պատկերացնում գոյություն ունեցող դրամական վարձատրության էությունն ու առավելությունները։ Կոլտնտեսությունների ղեկավար աշխատողների և կոլտնտեսականների մի մասն այն սխալ կարծիքն ունի, թե դրամական վարձատրության պայմաններում աշխատանքի վարձատրությունը սահմանափակվում է միայն տարիֆային ու պաշտոնային դրույքներով, առանձին դեպքերում նաև լրացուցիչ վարձատրությամբ, վերանում է կոլտնտեսականների բնամթերքի և զուտ եկամտի մի մասի բաշխումը, որի հետևանքով իջնում է վարձատրության մակարդակը։

Փորձը ցույց է տալիս, որ դրամական վարձատրության իրագործման պայմաններում ո՛չ միայն չի իջնում վարձատրության մակարդակը, այլև արտադրության արագ բարձրացման շնորհիվ զգալի չափով բարձրանում է։ Բավական է ասել, որ եթե 1969 թվականին եկամուտներն ըստ աշխօրի բաշխող հանրապետության կոլտնտեսություններում մեկ մարդ-օրվա վարձատրությունը կազմել է, միջին հաշվով, 3,96, ապա դրամական վարձատրության անցած կոլտնտեսություններում՝ 4,53 ռուբլի, որի մեջ ավելի մեծ տեսակարար կշիռ է կազմում լրացուցիչ վարձատրությունը և զուտ եկամտից կոլտնտեսականներին տրված գումարը։ Դրամական վարձատրություն կիրառող որոշ կոլտնտեսություններում վարձատրության մակարդակն ավելի բարձր է։ Այս բոլորն ասում են այն մասին, որ դրամական վարձատրության վերաբերյալ վերը նշված կարծիքն անհիմն է և չի համապատասխանում իրականությանը։ Ասածից հետևում է, որ դրամական վարձատրության տարածմանը խանգարող պատճառները կարելի է վերացնել նաև կազմակերպական-մասսայական անհրաժեշտ աշխատանք կատարելու միջոցով։

Հարկ է նշել, որ դրամական վարձատրությունն ունի նաև մի շարք այլ առավելություններ՝ աշխօրային սիստեմի համեմատությամբ։ Դրանցից մեկն այն է, որ արտադրական նորմաների գնահատումները և պաշտոնային դրույքները սահմանելով միայն դրամական գնահատումով, ոչ միայն հեշտանում է հաշվառումը և վարձատրության հաշվարկման ու վճարման գործը, այլև վարձատրության չափը դառնում է ավելի որոշակի, շոշափելի ու իրական մեծու-

թյուն, քան աշխօրը։ Իսկ դա չի կարող չնպաստել աշխատավորների ակտիվության և նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Դրամական վարձատրության իրագործման շնորհիվ աշխատանքի վարձատրությունը կոլտնտեսություններում հիմնականում մոտենում է և նմանվում պետական ձեռնարկություններում աշխատողների աշխատավարձին։

Աշխատանքի դրամական վարձատրության պայմաններում վարձատրությունը բոլոր դեպքերում երաշխավորվում է, ինչպես պետական ձեռնարկություններում, տարիֆային ու պաշտոնային դրույքների 100 տոկոսով և, որպես կանոն, լրիվ չափով վճարվում է ամիսը 1—2 անգամ, նախապես սահմանված ժամկետներում։ Ասածից հետևում է նաև, որ դրամական վարձատրության պայմաններում կոլտնտեսականները կատարված աշխատանքի համար տարվա ընթացքում, ո՛չ միայն ամեն ամիս, ավելի բարձր վարձատրություն են ստանում, քան դրամով և բնամթերքով վարձատրության դեպքում, երբ նրանց տրվում է հաշվեգրված երաշխավորված վարձատրության մի մասը, այն էլ որոշ կոլտնտեսություններում 2—3 ամիսը մեկ։

Այս հանգամանքը մեծապես մոբիլիզացնում է աշխատողներին, բարձրացնում նրանց ակտիվությունը և աշխատանքի նկատմամբ նյութական շահագրգռվածությունը։ Դա մոբիլիզացնում է նաև ղեկավար աշխատողների և մասնագետների ուժերը արտադրության և տնտեսավարման մակարդակի բարձրացման, երաշխավորված վարձատրությունը պարտադիր կարգով ամեն ամիս լրիվ չափով և ժամանակին վճարման, առկա ռեսուրսների հաշվենկատ կիրառման գործում։ Տնտեսության ղեկավարներն այդ պահանջների առկայության պայմաններում չեն կարող աշխատել մի կերպ։ Դրամական վարձատրությունը մշտապես պահանջում է և ստիպում բարձրացնել պլանավորման և արտադրության, աշխատանքի, արտադրանքի իրացման ու ֆինանսական գործունեության կազմակերպման մակարդակը։

Դրամական վարձատրությունը զգալի չափով նպաստում է արտադրության խոր մասնագիտացմանը, ճյուղերի ճիշտ զուգակցմանը, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը և դրանց ապրանքայնության զգալի բարձրացմանը, որը կարևոր նշանակություն ունի ինչպես տվյալ տնտեսության զարգացման, այնպես էլ ժողովրդատնտեսական կարիքների ավելի լավ ապահովման համար։ Մինչդեռ, աշխօրային սիստեմի դեպքում կոլտնտեսականներին տարբեր տեսակի բնամթերք տալու նպատակով, հաճախ կոլտնտեսություններն զբաղվում են այն բոլոր մթերքների արտադրությամբ, որ կարող է ստացվել տվյալ կոլտնտեսության հողա-կլիմայական պայմաններում, անկախ այն բանից, թե որքանով է արդյունավետ դրանց արտադրությունը։ Դա զգալի չափով խանգարում է արտադրության ճիշտ մասնագիտացմանը և դրա արդյունավետության բարձրացմանը։ Այդ հանգամանքով պետք է որոշ չափով բացատրել, որ հանրապետության կոլտնտեսություններում, ընդհանուր առմամբ, արտադրության մասնագիտացման մակարդակն ավելի ցածր է, քան սովխոզներում։ Հետևապես, արտադրության մասնագիտացման և կոլտնտեսականներին իրենց վարձատրության դիմաց բնամթերք տալու հարցերը վճռելիս պետք է, առաջին հերթին, հաշվի առնել արտադրության մասնագիտացման տնտեսական բարձր արդյունավետությունը, ինչպես նաև կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային մակարդակի նշանակալի բարձրացումը։ Ներկայումս իրենց նյութական ու կուլտուրական պահանջմունքներն ապա-



հովելու համար կոլտնտեսականներն ավելի մեծ չափով արդյունաբերական ապրանքներ, այդ թվում՝ սննդամթերք են գնում և սպառում։ Դա, ամենից առաջ, արդյունք է նրանց աշխատանքի դիմաց տրվող դրամական վարձատրության բարձրացման։

Այս տեսակետից մոտենալով խնդրին, կարելի է հաստատ ասել, որ դրամական վարձատրությունն ավելի լավ է նպաստում արտադրության մասնագիտացմանը և կոլտնտեսականների պահանջմունքների բավարարմանը։ Այն կոլտնտեսականին հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն ամեն ամիս դրամ ստանալու և դրանով տվյալ ժամանակի անհրաժեշտ պահանջմունքները բավարարելու, այլև իրավունք է տալիս վարձատրության դիմաց վերցնելու տվյալ տնտեսությունում արտադրվող միայն այն մթերքները և այն չափով, որ անհրաժեշտ է իր ընտանիքի պահանջմունքները բավարարելու համար։ Իսկ եկամուտներն ըստ աշխօրերի բաշխելիս կոլտնտեսականը պարտավոր է իր վարձատրության դիմաց ստանալու այն բոլոր մթերքները, ինչ բաշխվում է, անկախ այդ մթերքների որակից և դրանց նկատմամբ նրանց ունեցած պահանջներից։

Անհրաժեշտ է նշել, որ աշխօրի կիրառման պայմաններում ըստ ամենայնի չի բացահայտվում աշխատանքի նորմավորման, վարձատրության գործում եղած թերությունները։ Մինչդեռ, դրամական վարձատրության կիրառման շնորհիվ զգալի չափով բարձրանում է աշխատանքի հաշվառման և վերահսկողության մակարդակը, նպաստավոր պայմաններ ստեղծվում կատարված աշխատանքային և նյութական ծախսումներն ամեն ամիս պլանի հետ համեմատելու, եղած թերությունները բացահայտելու և դրանց վերացման համար ժամանակին միջոցներ ձեռնարկելու։

Այդ բոլորի շնորհիվ առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվում նաև ներտնտեսային հաշվարկի հաջող արմատավորման և հետևողական կենսագործման, ինքնարժեքի ճիշտ հաշվարկման, տնտեսության բոլոր բնագավառների գործունեության վրա ռուբլով գործուն վերահսկողություն հաստատելու համար։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դրամական վարձատրության այս առավելությունների շնորհիվ զգալի չափով ամրապնդվում է աշխատանքային կարգապահությունը։

Մեր կարծիքով, դրամական վարձատրության կարող են անցնել հանրապետության այն կոլտնտեսությունները, որտեղ մեկ մարդ-օրվա հասույթը վերջին 3—4 տարիներին եղել է 3,2—3,5 ռուբլուց ոչ պակաս։ Դրա հետ մեկտեղ այդ կոլտնտեսությունները պետք է կարողանան ամեն ամիս ընդունված տարիֆային դրույքների մակարդակով հաշվեգրված երաշխավորված վարձատրությունը լրիվ չափով վճարել սեփական դրամական միջոցներով, այլապես կխախտվի ամենամսյա երաշխավորված վարձատրության սկզբունքը։

Դրամական վարձատրության կազմակերպման ամենակարևոր և պատասխանատու խնդիրներից մեկը տարիֆային դրույքների ճիշտ սահմանումն է։ Այն պետք է լրիվ համապատասխանի տվյալ կոլտնտեսության տնտեսական զարգացման մակարդակին։ Չի կարելի սահմանել տնտեսական հնարավորությունից ցածր կամ բարձր դրույքներ։ Ցածրի դեպքում կիջնի աշխատանքի նկատմամբ աշխատողների նյութական շահագրգռվածությունը, իսկ բարձրի դեպքում՝ տնտեսությունն ի վիճակի չի լինի այն ապահովել։ Դրանից ելնելով, վերը

նշված վարձատրության մակարդակ ունեցող կոլտնտեսություններում տարի-ֆային դրույքները պետք է սահմանել Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1966 թվականի հուլիսի 20-ի № 305 որոշմամբ հանձնարարվող չափերով, որ-տեղ ձեռքի և կենդանի քարշող ուժի միջոցով կատարվող աշխատանքների տա-րիֆային ցանցի առանձին կարգի գործավարձային դրույքը սահմանված է 1 ռ. 72 կոպեկ: Վարձատրության սովխոզային մակարդակին մոտ և բարձր վար-ձատրություն ունեցող կոլտնտեսություններում տարիֆային դրույքները պետք է սահմանել սովխոզներում ներկայումս գործող տարիֆային դրույքների չա-փով, որտեղ յոթժամյա աշխատանքային օրում ձեռքի և կենդանի քարշող ուժի միջոցով կատարվող աշխատանքների առաջին կարգի գործավարձային դրույքը հավասար է 2 ռուբլի 34 կոպեկի: Իսկ այն կոլտնտեսություններում, որտեղ արդեն սահմանված են տարիֆային ավելի բարձր դրույքներ, դրամական վար-ձատրության պայմաններում դրա մակարդակը չիջեցնելու համար, պետք է պահպանել գործող տարիֆային դրույքները, եթե դրանք համապատասխանում են տնտեսական հնարավորություններին:

Երաշխավորված վարձատրությունից բացի, անհրաժեշտ է սահմանել նաև լրացուցիչ վարձատրություն՝ գյուղատնտեսական մթերքների պլանների կա-տարման և գերակատարման, արտադրանքի որակի բարձրացման, ծախսում-ների կրճատման, ինքնարժեքի իջեցման, առանձին աշխատանքների ժամա-նակին ու որակով կատարման, անասունների անկումների կրճատման, 100 մայր անասունից շատ մատղաշների ստացման համար: Լրացուցիչ վարձա-տրությունը պետք է սահմանել այն հաշվով, որ բոլոր ցուցանիշների համար հասանելիք գումարը, նայած տնտեսության զարգացման աստիճանի, կազ-մի երաշխավորված վարձատրության 20—50 տոկոսը: Լրացուցիչ վարձատրու-թյան չափերը սահմանելիս պետք է ելնել այն կարևոր սկզբունքից, որ հա-վասար նյութական շահագրգռվածության պայմաններ ստեղծվեն տնտեսու-թյան բոլոր բնագավառներում աշխատողների համար: Տնտեսության հնարա-վորություններից ելնելով և հաշվի առնելով կոլտնտեսականների ցանկություն-ները, լրացուցիչ վարձատրությունը կարելի է սահմանել ինչպես դրամով, այն-պես էլ բնամթերքով:

Կարևոր նշանակություն ունեցող հարցերից մեկն էլ դրամական վարձա-տրության պայմաններում կոլտնտեսականներին բնամթերքի վաճառքի կազ-մակերպումն է: Դա կարևոր նշանակություն ունի, մի կողմից՝ գյուղատնտե-սական որոշ մթերքների նկատմամբ կոլտնտեսականների պահանջմունքների բավարարման, մյուս կողմից՝ տնտեսությունում արտադրված մթերքների լրիվ իրացումն ապահովելու համար: Այդ նպատակով դրամական վարձատրության անցած կոլտնտեսություններն ստեղծում են հացահատիկի և մյուս մթերքների բնամթերային ֆոնդ՝ աշխատանքի վարձատրության գումարների դիմաց կոլ-տնտեսականներին վաճառելու համար: Կոլտնտեսականներին բնամթերքի վա-ճառքի կարգը, չափերը և գները սահմանում է կոլտնտեսականների ընդհանուր ժողովը: Դրամական վարձատրության անցած կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ ամենից արդյունավետ և նպատակահարմար ձևն այն է, որ առանձնացված բնամթերքն աշխատանքի վարձատրության հաշվին կոլտնտե-սականներին է վաճառվում հիմնական վաստակի մեկ ռուբլուն ընկնող բնա-մթերքի քանակից ելնելով:

Կարևոր նշանակություն ունի դրամական վարձատրության իրագործման



պայմաններում կոլտնտեսականների միջև զուտ եկամտի մի մասի բաշխման կարգի ճիշտ սահմանումը: Կոլտնտեսությունը, ստացած զուտ եկամտից, պե-տությանը սահմանված չափերով դրամական մուծումներ, հանրային ֆոնդե-րին անհրաժեշտ հատկացումներ կատարելուց հետո, մնացած գումարները պետք է բաժանի կոլտնտեսականներին: Դա կարևոր նշանակություն ունի կոլ-տնտեսային արտադրության զարգացման նկատմամբ կոլտնտեսականների կոլեկտիվ նյութական շահագրգռվածության բարձրացման գործում: Այդ մի-ջոցների ճիշտ բաշխումից է կախված նաև աշխատանքային կարգապահու-թյան ամրապնդումը, հնարավորությունների ու ռեզերվների արդյունավետ օգ-տագործումը, կադրերի որակավորման բարձրացումը: Առաջավոր կոլտնտե-սություններում նշված գումարները կոլտնտեսականներին բաշխվում է, առաջին հերթին, հիմնական վաստակի մեկ ռուբլուն ընկնող գումարից ելնելով: Դրա-նից բացի, հաշվի է առնվում յուրաքանչյուր աշխատողի, օղակի, բրիգադայի, ֆերմայի և աշխատանքային մյուս տեղամասերի ձեռք բերած արդյունքները զուտ եկամտի ստեղծման գործում, նրանց մասնակցության և հնարավորու-թյունների օգտագործման աստիճանը, աշխատողների որակավորումը, տվյալ բնագավառում աշխատանքի ստաժը, մասնակցության չափը և այլ կարևոր ցուցանիշներ: Կոլտնտեսության վարչությունն այդ ցուցանիշներից ելնելով, կարող է հիմնական վաստակի մեկ ռուբլու հաշվով ընկնող գումարները որոշ չափով ավելացնել կամ պակասեցնել:

Այս սկզբունքների և պահանջների լրիվ հաշվառման հիման վրա դրամա-կան վարձատրության ճիշտ կազմակերպումն ու հետևողական կենսագործու-մը մեծապես կնպաստեն գյուղատնտեսական մթերքների արտադրության ա-վելացմանն ու արդյունավետության բարձրացմանը:

Ս. Ե. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
ԱՐԱՔՍՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

## ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ*

Աշխատավարձի սիստեմի հետագա կատարելագործումն այն հզոր լծակ-ներից է, որը խթանում է աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացումը. և դա լիովին հասկանալի է: Վարձատրության կանոնավոր-մամբ ձեռնարկությունը կարողանում է հավասար աշխատանքի դիմաց հավա-սար վարձատրություն տալու միջոցով բարձրացնել աշխատողի շահագրգռվա-ծությունը ինչպես նյութական, այնպես էլ բարոյական իմաստով: Այսպիսի պարագայում, իհարկե, միանգամայն ակնառու է հանրային արտադրության արդյունքների բարձրացման գործում աշխատավորների շահագրգռվածությու-նը: Այդ իմաստով աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձա-տրության սիստեմի կատարելագործման հարցերն անմիջապես առնչվում են արտադրության հետագա զարգացման հետ: Որքան ստույգ ու կատարյալ լինի վարձատրման սիստեմը, որքան այն ճիշտ արտահայտի աշխատողի շահերը, այնքան աշխատողը բարոյապես և նյութապես շահագրգռված կլինի կատա-րած գործի արդյունքի նկատմամբ:

Նյութական շահագրգռվածության սկզբունքը վիթխարի նշանակություն ու-

* Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.

նի աշխատանքի արտադրողականության բարձրացման, մեկ միավոր արտադրանքի վրա կատարվող ծախսերի կրճատման և ժողովրդական տնտեսության անշեղ վերելքի ապահովման գործում։ Զարգացման ներկա ժամանակաշրջանում, երբ տեխնիկական առաջադիմությունն օրեցօր հեղաշրջում է առաջացնում տնտեսական կյանքում, հրամայաբար պահանջվում է կատարելագործել վարձատրության սիստեմը, ճիշտ զուգակցել աշխատողների նյութական և բարոյական շահագրգռվածությունը։ Այս առումով ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. «Աշխատանքի արդյունքներով բանվորների, ծառայողների և ձեռնարկությունների կոլեկտիվների նյութական շահագրգռվածությունն ուժեղացնելուն զուգահեռ ըստ ամենայնի ամրապնդել աշխատանքի բարոյական խթանների դերը»։

Մեզ մոտ անձնական ու հասարակական շահերը միահյուսվում են։ Ճիշտ է. առայժմ աշխատանքը մնում է որպես մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման աղբյուր, սակայն փաստ է, որ մեր օրերի աշխատողն իր առջև դրել է մի այլ վեհ նպատակ՝ ծառայել հասարակությանը, լինել նրա արժանավոր անդամը, նվաճել կոլեկտիվի հարգանքն ու պատիվը։ Թվում է, թե դա եսականություն է, անձնական մոմենտ։ Սակայն այդպես դատել ճիշտ չէ։ Հասարակությանն ավելի շատ օգուտ տալը, հանրօգուտ աշխատանքով փառք ու անուն վաստակելը, ոչ միայն աշխատողի զուտ բարոյական շահն է, այլև հասարակական հանրօգուտ ձգտում։ Չէ՞ որ հանրօգուտ գործունեությամբ փառաբանված մարդը բարձր ու որակյալ արտադրանք տալով, շատ աշխատավարձ է ստանում։ Ահա այս պայմաններում է, որ նյութական ու բարոյական շահագրգռվածությունը զուգորդվում են և նպաստում արտադրողականության բարձրացմանը։

Իսկ եթե հույսը դնենք միայն այն բանին, թե մեզ մոտ մարդիկ աշխատանքի նկատմամբ ունեն սոցիալիստական վերաբերմունք և նյութապես չշահագրգռենք նրանց, գործը մեծապես կտուժի։ Չպետք է մոռանալ, որ աշխատավորության նյութական շահագրգռվածության բարձրացմամբ, ներկա ժամանակաշրջանում, հատկապես գյուղատնտեսության մեջ, կարելի է վճռել շատ ու շատ չլուծված հարցեր։ Նյութական շահագրգռվածության սկզբունքի ճիշտ կիրառման և աշխատավարձի սիստեմի կատարելագործման միջոցով կկարողանանք գյուղի աշխատավորներին կապել գյուղատնտեսական արտադրության հետ, վերացնել հոսունությունը և բավարարել նրանց նյութական ու հոգևոր պահանջմունքները։

Հայտնի է, որ տարիներ առաջ աշխատանքի նկատմամբ այլ վերաբերմունք ուներ անասնապահը, որը շատ ֆիզիկական էներգիա էր գործադրում։ Արտադրապրոցեսների մեքենայացումը և ավտոմատացումն արմատապես փոխեցին այդ վերաբերմունքը, որովհետև թեթևացրին նրա ծանր ֆիզիկական աշխատանքը։ Եթե նա 15—20 տարի առաջ, ձմեռային պայմաններում, մեջքով գոմ էր տեղափոխում կերը, դուրս էր հանում գոմաղբը, ապա այժմ այս ամենը հիմնականում անում են էլեկտրիֆիկացված և ավտոմատացված հարմարանքները, իսկ անասնապահի աշխատավարձը, չնայած նրա աշխատանքի պայմանների որակական փոփոխությանը, ոչ միայն չի իջել, այլ բարձրացել է։ Այս ևս նշանակում է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ միաժամանակ, տեխնիկան թեթևացրել է մարդու աշխատանքը, նպաստել դրա որակավորմանը և, այդպիսով, բարոյապես ներգործել նրա վրա։ Նկատի ունե-



նալով այդ, երկրում հսկայական միջոցներ են ծախսվում գյուղատնտեսության մեջ տեխնիկական առաջադիմության, նրա նյութատեխնիկական բազայի կատարելագործման համար, քանի որ դրանք ուղղակի ներգործում են աշխատողների պրոֆեսիոնալ վարպետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև դրել են հանրային արտադրության արդյունավետության առավել բարձրացման, արտադրության բազմակողմանի ինտենսիվացման անհետաձգելի խնդիրներ։ Մանավանդ յուրաքանչյուր տնտեսության զարգացման տեմպերը հնարավոր է արագացնել արտադրության արդյունավետությունը ամեն կերպ բարձրացնելու, կուտակումներն ու կապիտալ ներդրումները նպատակահարմար ձևով իրականացնելու միջոցով։

Իհարկե, արտադրության ինտենսիվացման մակարդակի բարձրացումը պայմանավորված է ժամանակակից գիտա-տեխնիկական պրոգրեսով, գիտության նվաճումներն արտադրության մեջ համարձակորեն ներդնելով։ Գյուղատնտեսության ինտենսիվացմամբ լայն հնարավորություններ կստեղծվեն մթերքների առատություն ստեղծելու համար։ Սակայն պետք է ասել, որ գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը, առաջավոր փորձի ու գիտության նվաճումների տարածումն ու արմատավորումը ցանկալի արդյունք չեն տա, երբ աշխատողներն նյութապես շահագրգռված չեն։

Հայտնի է, որ արտադրապրոցեսներն անընդհատ կատարելագործվում և առաջ են ընթանում, որ գյուղատնտեսական արտադրության մեջ գիտությունն ու տեխնիկան նորանոր հեղաշրջումներ են առաջացնում և դրան զուգահեռ՝ անընդհատ աճում են աշխատավորության հոգևոր ու նյութական պահանջմունքները։ Սակայն գյուղատնտեսական արտադրության, աշխատանքի կազմակերպման, ինչպես նաև աշխատանքի վարձատրման ներկա ձևերը լուրջ թերություններ ունեն և չեն համապատասխանում ժամանակակից մարդկանց պահանջներին։ Սովխոզներում վարձատրության այժմյան սիստեմի պայմաններում անգամ, երբեմն խախտվում են ինչպես անձնական ու կոլեկտիվ շահերի զուգորդման, այնպես էլ նյութական ու բարոյական շահագրգռության սկզբունքները։

Աշխատանքի վարձատրման ամեն մի նոր հրահանգ, ամեն մի կատարելագործում իր հետ բերել է արտադրողականության աճ, մթերքների քանակի ավելացում ու որակի զգալի բարելավում։ Սակայն գյուղատնտեսության բնագավառում կան առանձին տեղամասեր, որտեղ գործողության մեջ են հնացած տարիֆային դրույքները, իսկ որոշ աշխատողների լրացուցիչ, հավելյալ վարձատրման ու պարգևատրման համար ոչինչ չի նախատեսված։

Պետական տնտեսություններում աշխատող կրտսեր խմբի, ինչպես նաև ղեկավար մասնագետների, գրասենյակային-հաշվային աշխատողների համար հավելյալ վարձատրություն նախատեսված չէ։ Այս հանգամանքը լայն դուռ է բացում աշխատանքում անպատասխանատվության, արտադրության ու հաշվառման գործում անտնտեսվարության համար։ Եվ, իրոք, եթե հաշվապահը կամ նրա օգնականը շատ աշխատեն թե քիչ, ժամանակին ներկայանան աշխատանքի թե ոչ և այդ հանգամանքը չազդի նրանց աշխատավարձի վրա,

մի՞թե նման դեպքում մարդիկ անտարբեր չեն լինի արտադրության նկատմամբ։

Նյութական շահագրգռվածության գործող սիստեմը դեռ իր բոլոր կողմերով չէ, որ համապատասխանում է մեր ժամանակի արտադրության շահերին ու պահանջներին։ Այդ է պատճառը, որ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. «Ուժեղացնել աշխատավորների շահագրգռվածությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության ծախքերի կրճատման և արտադրանքի որակի բարելավման գործում։ Կատարելագործել նյութական խրախուսման ֆոնդերի յուրացումն ու բաշխումը»։

Հայտնի է, որ գյուղատնտեսական աշխատանքներն իրենց տարատեսակներով հանդերձ, փոխադարձաբար պայմանավորված են միմյանցով։ Մի աշխատանքի ուշացումը կարող է ազդել մի շարք այլ աշխատանքների և, ընդհանուր առմամբ, ողջ տնտեսության գործունեության վրա։ Այսպես, կերը պետք է արագ հնձել, չորացնել, հավաքել, տեղափոխել, որպեսզի ոչ մի կորուստ չլինի։ Սակայն, երբ չորացած խոտը ժամանակին չի տեղափոխվում՝ տեղափոխման միջոցները անսարք լինելու հետևանքով, պարզ է, որ անձրևների և այլ պատճառներով կորուստները մեծ կլինեն և որակը ցածր։ Բնականաբար, այդ էլ կանդրադառնա անասունների պահպանության ու խնամքի վրա։ Այդ դեպքում, մի՛թե պարզ չէ, որ կպակասի տնտեսության կերակուտակումների կարողությունը և տնտեսությունը ստիպված կլինի կեր գնել, դրանով իսկ արհեստականորեն բարձրացնել կաթի, մսի և բրդի ինքնարժեքը։

Հետևաբար, դրանից խուսափելու համար, հավելյալ կամ լրացուցիչ վարձատրություն պետք է տալ ո՛չ միայն կթվորուհուն, անասնապահին, ծխախոտագործին, այլև ավտովարորդներին, բեռնաթափողներին և մեքենայական պարկում ու արհեստանոցներում աշխատողներին։ Հայտնի է, որ ներկայումս գյուղատնտեսական աշխատանքների (հատկապես բուսաբուծության) մոտ 75—90 տոկոսը մեքենայացված է։ Եթե ավտոմեքենայի կամ տրակտորի որևէ մաս կոտրվել է, որի պատճառով ընդմիջվել է աշխատանքը, ապա վարորդը, որպեսզի իր պլանը գերակատարի և հավելյալ վարձատրություն ստանա, շահագրգռված կլինի արագ վերանորոգելու այն։ Եթե արհեստանոցում կամ գարբնոցում որևէ մաս արագ ու որակով պատրաստելու համար (որը նպաստում է ընդհանուր արտադրապրոցեսների արագացմանը) վարպետը հույս ունենա, թե պարգևատրում կամ լրացուցիչ վարձատրություն պետք է ստանա, այդ դեպքում, հայտնի է, որ գործն արագ ու որակով կկատարվի։ Իսկ իրականում այդպես չէ։ Դրա հետևանքով արտադրությունում աշխատող մարդկանց որոշ մասը նյութական շահագրգռվածություն հանդես չի բերում և օբյեկտիվորեն վնաս է կրում արտադրությունը։

Աշխատավորների նյութական շահագրգռվածությունը կարելի է և պետք է բարձրացնել նաև աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու միջոցով։ Անհրաժեշտ է ընդգծել, որ մինչև այժմ գոյություն ունեցող բրիգադային սիստեմը հնացել է և չի համապատասխանում արտադրության նյութա-տեխնիկական բազայի զարգացման ու առավել արդյունավետ օգտագործման պահանջներին։

Աշխատանքի կազմակերպման բրիգադային, օղակային սիստեմը որոշ ժամանակաշրջանում իրեն արդարացրել է։ Դա սոցիալիստական գյուղատնտեսական արտադրության կազմակերպման առաջին էտապում էր, երբ աշխա-



տանքների 90—95 տոկոսը կատարվում էր մարդու ֆիզիկական, կենդանի քաշող ուժով։ Իրոք, այդ դեպքում օղակների ու բրիգադների գոյությունն անհրաժեշտ էր։ Սակայն, վերջին տասնամյակներում և, մանավանդ, այժմ, երբ գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեծ մասը, շատ դեպքերում ամբողջապես մեքենայացված են, էլեկտրիֆիկացված ու ավտոմատացված, ապա դաշտավարական բրիգադների, նույնիսկ օղակների դերը կարծես թե պակասել և անգամ ավելորդ է դարձել։ Այն ժամանակ, երբ, օրինակ, Մարտունու շրջանի մեքենա-տրակտորային կայանում կար միայն 50—60 տրակտոր, 10—15 կոմբայն և 10—15 կալսիչ մեքենա (խոսքը մինչև 1945 թվականի մասին է) դրանք օգտագործելու համար ժամանակավորապես ամրացնում էին կոլտնտեսությանը։

Պատահում էր այնպես, որ տվյալ կոլտնտեսությունում դեռևս աշխատանքը չավարտած, տրակտորը կամ կալսիչը փոխադրում էին այլ կոլտնտեսություն։ Կոլտնտեսության ներսում, նույն սեզոնում տրակտորը կամ կալսիչը, հետագայում և կոմբայնը, հերթով ամրացնում էին դաշտավարական բրիգադներին։ Տրակտորիստը պատվեր կատարող անձնավորություն էր, նրան քիչ էր հետաքրքրում աշխատանքի որակը։ Տրակտորային բրիգադայից կախման մեջ գտնվող դաշտավարական բրիգադները պատասխանատու էին ո՛չ թե իրենց, այլ տրակտորային բրիգադայի կատարած աշխատանքների համար։ Վերջիններս էլ պարզ է, իրենց պլանների քանակական կատարման հետևից ընկնելով, վարից հետո հողի մշակման ագրոնոմիական միջոցառումները ո՛չ միայն ճիշտ չէին կատարում, այլև ամեն կերպ խուսափում էին «մանր» գործից։

Ստեղծված էր հակասություն դաշտավարական ու տրակտորային բրիգադների միջև, որի հետևանքով պակասում էր պատասխանատվությունն աշխատանքի նկատմամբ։ Սակայն, գյուղատնտեսական արտադրության զարգացման արդի էտապում, երբ բուսաբուծության մեջ աշխատանքների ավելի քան 80—90 տոկոսը մեքենայացված է, երբ գյուղատնտեսական մեքենաների ողջ պարկը տնտեսության տրամադրության տակ է, ապա գյուղատնտեսական աշխատանքների ղեկավարությունը, ըստ իս, պետք է տրվի աշխատանքների հիմնական կատարողին՝ մեխանիզատորներին։ Հետևաբար, բուսաբուծության մեջ դաշտավարական բրիգադների փոխարեն անհրաժեշտ է ստեղծել տրակտորա-դաշտավարական բրիգադներ (որոշ տնտեսություններում արդեն այդպիսիք կան)։ Այդ դեպքում արտադրության մեջ կբացառվի երկու ղեկավարություն, դրանով իսկ կվերանա նաև անպատասխանատվությունը, հողի լավ օգտագործման համար պատասխանատու կլինի ո՛չ թե դաշտավարական բրիգադավարը, այլ հողի վրա անմիջական աշխատանք կատարողը՝ մեխանիզատոր բրիգադավարը։ Հողը, ինչպես նաև արտադրության մյուս միջոցները՝ տրակտորները, ավտոմեքենաները, կոմբայնները, շարքացանները և գյուղատնտեսական գործիքներն ու սարքավորումները պետք է տրվեն տրակտորա-դաշտավարական բրիգադներին։

Արծվանիստի սովխոզում (Մարտունու շրջան) մեկ տասնամյակ առաջ, երբ գարնան գյուղատնտեսական աշխատանքները կատարվում էին ամիսների ընթացքում, ձգձգվելով և անորակ, այժմ, երբ դաշտավարական վեց բրիգադների փոխարեն ստեղծվել են տրակտորա-դաշտավարական երեք բրիգադներ, գարնանացանը ավելի մեծ ծավալով և բարձր որակով հնարավոր դարձավ կատարել 10—15 աշխատանքային օրում։ Այլ կերպ ասած գյուղատնտեսական

կուլտուրաների մշակությունը և բերքահավաքը որակով ու ժամանակին կատարելը դառնում է մեխանիզատորի միակ պարտականությունը: Եվ քանի որ հետվհետե կատարելագործվում են աշխատանքի վարձատրության տարիֆային դրույքները, լրացուցիչ վարձատրության և պարգևատրությունների չափըուստի, մեխանիզատորները նյութապես շահագրգռվում են բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը:

Տրակտորա-դաշտավարական բրիգադաների ստեղծումը մեծ չափով կօգնի նաև բարձրացնելու աշխատանքի որակը, որին մինչև այժմ շատ քիչ ուշադրություն է նվիրվում: Աշխատողը մտահոգվելով իր առաջադրանքների միայն քանակական կատարմամբ, վարձատրվում և նույնիսկ խրախուսանքի է արժանանում միայն դրա համար: Նա աշխատանքի որակով շահագրգռված չէ, որի պատճառով ժողովրդական տնտեսությունը հաճախ մեծ վնասներ է կրում:

Մարտունու շրջանի Արծվանիստ սովխոզում 1969 թվականի հունվարի մեկից ստեղծվեցին տրակտորա-դաշտավարական բրիգադաներ, որոնց ամրացվեցին և՛ մեխանիզմները, և՛ մշակվող կուլտուրաների տարածությունները: Տարեվերջի արդյունքները ցույց տվին այդ միջոցառման ճշտությունը: Տնտեսությունը ո՛չ միայն կատարեց գյուղատնտեսական բոլոր տեսակի աշխատանքները՝ ագրոտեխնիկայի պահանջների համապատասխան, ժամանակին և բարձր որակով, այլև ունեցավ նյութերի ծախսման խնայողություն, կատարվեցին և գերակատարվեցին բերքատվության, մթերքների համախառն արտադրանքի նախատեսված պլանները և մթերքները պետությանը վաճառելու առաջադրանքները:

Արծվանիստի սովխոզում մշակվող կուլտուրաների հեկտարի միջին բերքատվությունը վերջին երեք տարում (ցենտներով)

| Կուլտուրաների անվանումը | 1968 թ. | 1969 թ. |
| --- | --- | --- |
| Հացահատիկ | 10,5 | 16,3 |
| Կարտոֆիլ | 40,9 | 73,9 |
| Կորնգանի սերմացու | 3,78 | 5,9 |
| Ծխախոտ | 33 | 39,5 |
| Ցանովի և բնական խոտեր (միասին վերցրած) | 17,2 | 18,4 |

Ինչպես տեսնում ենք, տրակտորա-դաշտավարական բրիգադաների ստեղծման և այլ միջոցառումների կիրառման շնորհիվ, նկատելիորեն բարձրացավ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների միջին բերքատվությունը— կարտոֆիլինը՝ մոտ երկու, հացահատիկային կուլտուրաներինը՝ մեկ և կես անգամ, զգալի չափով բարձրացավ նաև ծխախոտի ու ցանովի խոտերի միջին բերքատվությունը: Սակայն, 1970 թվականին, 1969 թ. համեմատությամբ, երաշտի պատճառով որոշ չափով իջավ հացահատիկի միջին բերքատվությունը. երաշտի, ինչպես նաև ալրացող հիվանդության հետևանքով՝ նախորդ տարվա համեմատությամբ ցածր էր նաև ծխախոտի միջին բերքատվությունը: Սակայն տրակտորա-դաշտավարական բրիգադաների ստեղծման ու անասնապահական ֆերմաներում աշխատապրոցեսների մեքենայացման շնորհիվ իջավ գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը և սովխոզը 1969—1970 թթ. տնտեսական տարին փակեց նախատեսվածից ավելի շատ օգուտներով, այն դեպքում,



երբ նախկինում տնտեսական տարիները սովորաբար փակվում էին մեծ վնասներով:

Բուսաբուծության մեջ աշխատանքների կազմակերպման վերոհիշյալ սիստեմի առավելությունները անվիճելի են: Սրան պետք է ավելացնել նաև այն, որ աշխատանքի այդպիսի կազմակերպման դեպքում ավելի է ամրապնդվում կարգապահությունը, տեղի է ունենում նյութերի, վառելիքի և պահեստային մասերի էական խնայողություն:

Պետք է նկատել, որ «Աշխատանքի վարձատրությունը սովխոզներում և մյուս գյուղատնտեսական պետական ձեռնարկություններում» օրինակելի կանոնադրությունում համարյա խոսք չկա աշխատանքի նման ձևի կազմակերպման և այդտեղ ընդգրկված աշխատողների լրացուցիչ վարձատրման կամ պարգևատրման մասին:

Աշխատանքի կազմակերպման վերոհիշյալ ձևն արտադրության մեջ շատ տեղերում իրեն լիովին արդարացնում է և պետք է լրջորեն մտածել ինչպես դրա հետագա կատարելագործման, այնպես էլ աշխատողների վարձատրության բարելավման հարցերի մասին: Տրակտորա-դաշտավարական բրիգադաների անդամները պետք է համոզված լինեն, որ պլանները կատարելիս կվարձատրվեն գոյություն ունեցող կարգի համաձայն. բացի այդ, գերակատարված յուրաքանչյուր ցենտների համար կստանան 25 տոկոս լրացուցիչ վարձատրություն:

Մինչև տրակտորա-դաշտավարական բրիգադաների ստեղծումը 25 տոկոսի լրացուցիչ վարձատրության ձևը առանձնակի արդյունք չէր տալիս, որովհետև միևնույն գործում զբաղված էին ժամանակավոր աշխատողների տարբեր խմբեր, որոնք լրացուցիչ վարձատրությունից շոշափելի օգուտ չէին ստանում: Աշխատանքի կազմակերպման նոր պայմաններում արդեն լրացուցիչ 25 տոկոս վարձատրությունը լիակատար շոշափելի է, որովհետև բուսաբուծության մեջ աշխատանքների ողջ կոմպլեքսն իրագործում են միևնույն մարդիկ, ըստ որում, ավելի փոքր խմբով:

Նյութական շահագրգռվածության դերի բարձրացմանը, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը մեծ չափով կարող է խթանել մի կարևոր միջոցառում ևս: Մեր կարծիքով գյուղատնտեսական աշխատանքների հենց սկզբից աշխատողը պետք է գիտենա, թե որ աշխատանքի և որքան գերակատարման համար ինչքան վարձ պետք է ստանա:

Կարելի է հաստատ ասել, որ եթե գերպլանային արդյունքի ո՛չ թե 25, այլ 45—50 տոկոսը տրվի բանվորներին, որպես լրացուցիչ վարձատրություն, ապա բուսաբուծական մթերքների արտադրության ներկա ցուցանիշները մեկ-երկու տարում մեծ չափով կբարձրանա:

Այսպիսով, գերպլանային արտադրանքի համար լրացուցիչ վարձատրությունը պետք է վճարել մոտավորապես հետևյալ չափերով.

մինչև 10 տոկոս գերակատարելու դեպքում գերակատարվածի 20 տոկոսով, 11—30 տոկոսի դեպքում 30, 31—50-ի դեպքում՝ 40, 51 տոկոսից բարձր գերակատարելու դեպքում՝ 50 տոկոսով:

Հավելյալ վարձատրության այս չափերով պետք է խրախուսել նաև արտադրության մյուս աշխատողներին:

Ժ. Ս. ՍԱՐԳՍՅԱՆ
Մարտունու շրջանի Ծովինարի սովխոզի դիրեկտոր

# ԴԵՊԻ ՀԼԿԵՄ 50 ամյակը

## ՆՈՐԻ ԱՌԱՊԱՐՆԵՐՈՎ

Մի քանի տարի առաջ Կամիտասի փողոցի շենքերից մեկի խաղաղ բնակարանում ընկերական հավաքույթ էր։ Ես ուշադրությամբ լսում էի զրուցակիցներին, քանի որ նրանք գիտության նորագույն ճյուղերից մեկի՝ էլեկտրոնիկայի, ներկայացուցիչներ էին։ Իսկ զրույցը մի քիչ սովորական, առօրեական հունից դուրս էր եկել և կրում էր գիտական, մի քիչ էլ ֆանտաստիկ բնույթ։

— Ես զարմանում եմ հայ գրողների վրա,— վերջապես գրական երանգ մտավ մեր վեճում,— ինչո՞ւ կարգին ֆանտաստիկ գործ չեն ստեղծում, հիմա ֆանտաստիկան շատ կարևոր է, երիտասարդության սիրած գրական ժանրն է,— պատմում էր երիտասարդ գիտաշխատող Կարլեն Հարությունյանը։

Իրոք, ֆանտաստիկ գործեր քիչ են ստեղծվում։ Ինչո՞ւ... Ամեն մեկը ջանում էր պատասխանել հարցին։ Եղան մտքեր, կարծիքներ, որոնց հիմնական եզրահանգումը հետևյալն էր. մեր գրողները թույլ են կապված գիտական աշխարհին, այդ պատճառով էլ նրանք երբեմն ֆանտաստիկայի աշխարհին են վերագրում այն, ինչ վաղուց իրականություն է մեզ մոտ, կամ... Կամ շոշափում են պրոբլեմներ, որոնք հարց է՝ ֆանտաստի՞կ են, թե՞ առասպելական։

— Իսկ ի՞նչ տարբերություն,— նորից փոխվեց զրույցի թեման։

Ֆանտաստիկականը, իրոք, առասպելական չէ, այն պետք է կառուցվի գիտական հիմքի վրա և շոշափի գիտության վաղվա որևէ պրոբլեմ։

Ինչո՞ւ հիշեցի մեր այս զրույցը, տարիներ առաջվա այս հանդիպումը։ Չգիտեմ։ Գուցե այն պատճառով, որ վերջերս նույն Կարլեն Հարությունյանին հանդիպեցի Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտա-հետազոտական ինստիտուտի նորաստեղծ մի բաժնում, որի մասին տարիներ առաջ խոսում էինք որպես ֆանտազիա։

Մարդն ամենամեծ ստեղծագործողն է, ամենաուժեղը բնության մեջ։ Նրա ուժն այն է, որ իր իմաստությամբ հայտնագործում, ստեղծում է մի տեսություն, մեքենա, որն ավելի ուժեղ է լինում, քան ստեղծողներն առանձին-առանձին վերցրած։ Ու ահա մեքենան, գիտական հայտնագործությունը օգնության են հասնում մարդուն։ Մեքենան ինքն է նախագծում նոր մեքենա, մտածում մարդու, գիտնականի նման, ըստեղծում այն, ինչ երեկ ֆանտազիա էր, միայն երազանք։

Մեր դինամիկ ու բարդ դարում գիտությունը զարգանում է ժամ առ ժամ։ Զարգացման այդ տեմպը ջնջել է գիտականի ու ֆանտաստիկականի սահմանը և մարդ-գիտնականին դարձրել ամենամեծ երևակայություն ունեցողն աշխարհում։ Պատահական չէ, որ գիտության զարգացումը ամենից շատ կախված է երիտասարդությունից՝ ամենամեծ երևակայություն և համարձակություն ունեցող մարդկանցից։

Ահա ես նորից Կարլեն Հարությունյանի հետ մտքեր եմ փոխանակում, այս անգամ նրա արտադրամաս-լաբորատորիայում։ Հիշեցնում եմ տարիներ առաջ ունեցած մեր զրույցը։

Ու պատմում է, բացատրում ինձ.

— Մինչև հիմա, հաշվիչ մեքենաների արտադրության ամենաբարդ խնդիրներն անգամ լուծում էր մարդը, այդ նա էր մշակում, կազմում, ծրագրում մեքենան, պարգևում նրան հիշելու, հաշվելու ու մտածելու շնորհքը։ Այժմ մեր խնդիրն է ստեղծել մեքենաներ, որոնք իրենց հերթին նախագծեն, կազմեն նոր մեքենաներ։ Մեքենան մեքենա է ստեղծում։ Սա է մեր նոր խնդիրը։ Իսկ դրա համար քիչ գործ չի կատարվել։ Ամենակարևորը, ստեղծված է լրիվ մի նոր, մեքենաների մեքենայական նախագծման բաժին։ Դա, թերևս, մեր ինստիտուտի ամենաջահել բաժինն է։ Անկեղծ լինելու համար ասենք, որ այդ բաժինը դեռ կազմավորման շրջան է ապրում։ Բայց կարևորն այն է, որ այստեղ հավաքված են երիտասարդ և լավ մասնագետներ, որոնք անպայման հաջողությամբ կլուծեն այդ խնդիրը։ Շուտով, շատ շուտով մենք ո՛չ միայն կունենանք մեքենաների կողմից նախագծված մեքենաներ, այլև այդ պրոբլեմի լուծումը նոր խնդիրներ կդնի, նոր հեռանկարներ կբացի, որոնց մասին այժմ դեռ նույնիսկ որպես ֆանտաստիկ է՛լ չենք խոսում։

Լսում եմ Հարությունյանին և հավատում, հավատում լիովին, հիշելով այդ մեծ ու լավ կոլեկտիվի բաղձալի ծնունդը։ Հիշում եմ, թե ինչպես մի խումբ երիտասարդ ֆիզիկոսներ, մաթեմատիկոսներ, պոլիտեխնիկցիներ եղան ո՛չ միայն Հայաստանի, այլև ամբողջ Միության համար այդ նոր շարժման հիմնադիրները։

Ամեն անգամ, երբ խոսքը վերաբերում է հին ու նոր ժամանակներին, հին ու նոր սերունդներին, հպարտությամբ է խոսվում հեղափոխության մասին. մեր ավագ եղբայրները, հայրերը հեղափոխություն կատարեցին՝ երիտասարդությանը հանձնելով էստաֆետը։ Երիտասարդությունը հայրերից ժառանգեց ո՛չ միայն հայրենասիրությունը, այլև հեղափոխությունը, միշտ առաջ գնալու, կատարելագործվելու անհրաժեշտության զգացումը։ Ջահել սերունդը շարունակեց հեղափոխությունը։ Շարունակեց աշխատանքում, կենցաղում, գիտության ու լուսավորության բնագավառում։ Այո՛, իսկական հեղափոխականներ են այն երիտասարդները, ովքեր տասներեք տարի առաջ, չունենալով փորձ և վարպետություն, չունենալով նախորդներ, փաստորեն եղան սկզբնավորողները գիտական հեղափոխության, որը կիբեռնետիկա կոչվեց, որն աշխարհին տվեց էլեկտրոնային, մաթեմատիկական խելացի մեքենաներ։ Իսկ այդ հեղափոխականներն այն ժամանակ քսան տարեկան էին։ Նրանք իրենց հայրերի նման երազեցին, իրենք հիմնադրեցին, մշակեցին ու կազմեցին ծրագրերը, իրենք կյանք տվեցին այդ ծրագրերին, երազանքներին, որ փոքրիկ «Արագածներից» դարձան «Նաիրիներ» ու «Հրազդաններ», դարձան մաթեմատիկական մեքենաների մեքենայական նախագծումներ։

Այդ երիտասարդությունը դարձավ գիտական, կուլտուրական հեղափոխության հիմնական ուժը։ Նախկինում ժողովուրդը տվել էր ուժեղ անհատականություններ, անհատ գիտնական մեծություններ։ Այժմ ստեղծվում են ինքնատիպ անհատականությամբ օժտված գիտնականների կոլեկտիվներ, գիտությունը մուտք է գործել ժողովրդի, նրա առօրյայի մեջ։

Երկու տարի առաջ էր, ամռանը։ Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի մի խումբ կոմերիտականներ մեկնել էին լճափ՝ հանգստանալու։ Սառնորակ լճակի ափին, խիտ ծառերի ստվերում հետաքրքրական զրույց սկսվեց։ Երիտասարդ գիտնականներից ամեն մեկն իր խոսքն էր ասում, երբեմն հակադրվում ընկերոջը, երբեմն համաձայնում, շարունակում նրա միտքը։

Այդ զրույցին բացառված էին հուշաբերիկներն ու կոնսպեկտները, ամեն մեկը պետք է ասեր՝ ինչ մտածում էր։ Հավաքի այդ պահանջն իրավացի էր. գիտնական ինժեներները պետք է զինված լինեն ո՛չ միայն ժամանակակից գիտությամբ, այլև կարողանան ինքնուրույն կողմնորոշվել իրադրության մեջ, միջազգային հարցերում, արտադրության ղեկավարման գործում։

Սակայն այդ ուրախ հանդիպման և ոչ մի մասնակից, բացի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարից, չգիտեր, որ իր ելույթներով հիմք էր դնում մի նոր նախաձեռնության, որը հետագայում մշակվեց և ստացավ «Երիտասարդ հրապարակախոսի ակումբ» անունը։ Մտածել հասարակական մակարդակով, կատարել հասարակական ընդհանրացումներ— այս է ակումբի ամեն մի անդամին ներկայացվող պահանջը։

Իսկ մինչ այդ կոմիտեում շատ էին մտածել, թե քաղաքական լուսավորության ցանցում նախատեսված «էվրիկա» խմբակի ծրագրում ինչ փոփոխություններ մտցնել, որ այն բավարարի մի կազմակերպության պահանջները, որի անդամները գիտնականներ են, այն էլ XX դարի ամենաառաջատար գիտության՝ կիբեռնետիկայի, ներկայացուցիչներ։ Պարապմունքի այս նոր ձևը ոգևորեց բոլորին։ Մի յուրատեսակ մրցություն էր գնում դրանից հետո, ամեն պարապմունքի նախօրյակին, թե ով ունի խելացի միտք, առաջարկություն և այդ ամենը վարպետորեն, գեղեցիկ ու ազդու ներկայացնելու շնորհք։ Ակումբն իր անդամների առաջ խնդիր էր դնում գիտությունը հաղորդել մասսաներին, օգնել բանվորներին, տեխնիկներին, բոլորին։

Դրանք երկուսն էլ նման են իրար։ Մեկը՝ ինժեներ, մյուսը՝ Երևանի մաթեմատիկական մեքենաների ինստիտուտը։ Նման են, քանի որ ունեն գործունեության նույնքան ստաժ, իրենց աշխատանքային ճակատագրերն սկսել են միանման, հասարակից, շատ փոքրից ու աճել են իրար օգնելով։ Նրանցից երկրորդին՝ ինստիտուտին, վաղուց էի ճանաչում, դեռ այն օրվանից, երբ Հայաստանի կոլտնտեսությունների նախագահների վերապատրաստման հանրապետական դպրոցի անհրապույր շենքում ծնվեց ԵՐՆԻԻՄՄ-ը (Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտ)։ 1957 թվականին ինստիտուտի կոմերիտական կազմակերպությունն ուներ 33 անդամ։ Զուրկ լինելով նույնիսկ սեփական շենքից՝ երիտասարդ ֆանտաստները նախագծեցին իրենց առաջին հաշվիչ մեքենաները։ Դա նրանց բերեց ճանաչում։

Սաշիկի հետ իմ ծանոթությունն ավելի նոր է։ Բայց ես կարողացել եմ ճանաչել նրան ու հասկանալ, որ այդ երիտասարդի անցած ուղին շատ նման է հասակակից սերնդի ճանապարհին։ ԵՐՆԻԻՄՄ-ի հետ սկսել է աշխատանքային կյան-

րը: Սկզբից՝ մոնտաժող, հավաքող, լաբորանտ, տեխնիկ: Այժմ՝ առաջատար ինժեներ...

Երբ տարիներ առաջ պատրաստվեցին «Արագած» մեքենաները, ինստիտուտը կառավարական շնորհավորական հեռագիր ստացավ: Իսկ երբ Ալեքսանդրը պատրաստեց իր առաջին հիմնարքիչը, ինստիտուտի դիրեկցիան այն ցուցադրեց որպես օրինակելի: Հետո նշանակեցին լաբորանտ: Շուտով մասնակցեց «Հրազդան—2» մաթեմատիկական մեքենայի ստեղծմանը:

Ամեն մարդ, գիտնական, թե տեխնիկ, այստեղ, իր տեղամասում, մարտիկ է զգում իրեն, գիտակցում, որ մեծ գործի հեղինակ է ու իր գործի արդյունքն իրեն սիրելի, հարազատ է թվում: Ալեքսանդրը երիտասարդ գիտաշխատողներ Լևոն Պասպանդյանի, Շիրին Սրապյանի հետ ստեղծեց «Նաիրի—2» ունիվերսալ նոր մեքենան: Եվ հիմա ինչպիսի՜ սիրով են ասում.

— Մեր սիրելի «Նաիրի—2»-ը:

— Մեր սիրելի «Հրազդան—2»-ը:

Եվ այդ սիրելի «Հրազդաններն» ու «Նաիրիները» կրում են բազմաթիվ մեդալներ, որոնք շահել են Սովետական Միությունում և արտասահմանում: Բայց նրանց ստեղծողների համար դա էական չէ: Էականն այն է, որ իրենք աշխատավոր ժողովրդի մի մասն են, որոնք ողջ էությամբ նվիրվել են գործին՝ հանուն առաջընթացի և ոչ թե հանուն փառքի:

Շատ խայտաբղետ է այս ինստիտուտի կոմերիտական կազմակերպությունը: Այստեղ, նույն տեղամասում, միևնույն խնդրի վրա աշխատում են գիտությունների թեկնածուն և սովորական խառատը: Իրար կողք-կողքի իր առաջին գյուտն է նշում երիտասարդ գիտնականը և աշխատանքային առաջին մկրտությունն ստանում պրոֆտեխնիկական ուսումնարանի սանը: Դա բխում է ինստիտուտի պրոֆիլից: 700 կոմերիտականների մոտ կեսը գիտական աշխատողներ են, մյուս մասը արտադրության մարդիկ: Այստեղից էլ՝ ամեն մեկի մակարդակին և հետաքրքրությանը համեմատ աշխատանքի կազմակերպման անհրաժեշտությունը:

Երբ ինստիտուտում ստեղծվեց երիտասարդ գիտնականի խորհուրդ, շատերն ասում էին՝ ինչ կա ոգևորվելու, որտե՞ղ չկան նման խորհուրդներ: Բայց շուտով այդ խորհուրդը դարձավ կոմերիտական աշխատանքի կարևոր օղակը, կոմիտեի մի բաժինը: Արտադրության բարդ պրոցեսներն այստեղ պահանջում են գերագույն պատասխանատվություն և համապատասխան գիտելիքներ:

Պատին փակցված հայտարարությունը միանգամից գրավեց բոլորի ուշադրությունը: Կոմերիտմիության կոմիտեն և երիտասարդ գիտնականների խորհուրդն արտադրությունում աշխատող բոլոր երիտասարդներին հրավիրում են մասնակցելու ֆիզիկայի և մաթեմատիկայի նախապատրաստական դասընթացներին: Դրանք կազմակերպվում էին անվճար, հասարակական հիմունքներով: Ամեն մի գիտնական ու ինժեներ պատասխանատու էր մի քանի բանվորի համար: Ցանկացողները շատ էին, դասընթացները մտան հունի մեջ: Ահա թե ինչ է պատմում այդ մասին կոմերիտմիության կոմիտեի նախկին անդամ Սուրեն Մելքոնյանը:

— Մեր լավագույն գիտնականներն ու ինժեներները սիրով, եղբայրաբար մեզ էին տալիս իրենց գիտցածը: Ինքս էլ այդ դասընթացներն եմ ավարտել ու այժմ պոլիտեխնիկական ինստիտուտի կիբեռնետիկայի ֆակուլտետի ուսանող եմ:

Երիտասարդ գիտնական Վանիկ Սարիբեկյանն այնպիսի եռանդով էր օգնում ունկնդիրներին, կարծես տասնյակ տարիների դասախոս էր: Գիտական աշխատողներն իրենց համար այժմ ունեն մշտական հավաքավայր: Դա «Երիտասարդ հրապարակախոսի ակումբն է»: Բայց ԼԿԵՄ կոմիտեին կից գործում են նաև այնպիսի հաստատություններ, որտեղ հավաքվում են համատեղ՝ թե՛ բանվորները և թե գիտնականները: Դրանք են՝ «Հասարակական կարծիքի ինստիտուտը» և «Ուրախ հանդիպումների ակումբը». սովկ զվարճատեղի չեն, դրանք այն օջախներն են, որտեղ կոփվում է գիտնականի և բանվորի ստեղծագործական բարեկամությունը: Կոփվում է մեծ նպատակը՝ նույն գործի համար պայքարի նպատակը: Այդ փոխօգնության շնորհիվ շատ երիտասարդներ, աշխատելով որպես մոնտաժող, խառատ, ֆրեզերող կամ կարգավորող, միաժամանակ սովորում են համալսարանի ու ինստիտուտների երեկոյան բաժիններում:

Ինստիտուտն ունի գիտական մեծաթիվ կադրեր, ունի նաև սովորելու ցանկություն ունեցող հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ, որոնց ուսման ծարավը հագեցնելու համար էր, որ կոմիտեի ջանքերով և պայքարի գնով Երևանի էլեկտրամեխանիկական տեխնիկումին կից բացվեց հատուկ ֆակուլտետ, որը հետագայում դարձավ հաշվիչ մեքենաների տեխնիկում: Այն հսկայական գործ կատարեց հաշվիչ մեքենաների արտադրությունը կարգավորելու, արտադրական կադրերով ապահովելու գործում: ԵՐՆԻՄՄ-ը և «էլեկտրոն» գործարանը ապահովվեցին ո՛չ միայն տեխնիկներով, այլև բանվորական կադրերով. բացվեց էլեկտրոնային հաշվիչ մեքենաների պրոֆտեխնիկական ուսումնարանը, որտեղ ընդունվելու համար հարկավոր է անցնել «բոհական մրցույթով»: Այժմ ինստիտուտ են գալիս ո՛չ թե պատահական մարդիկ, այլ տեխնիկական և գիտական պատրաստություն և մակարդակ ունեցող երիտասարդներ: Հենց այդ մակարդակն էլ պայմաններ է ընձեռում, որ ստեղծվի բանվորների, տեխնիկների, ինժեներ-գիտնականների ամուր, ստեղծագործական և աշխատանքային բարեկամություն:

Հարյուր քսանից ավելի հյուրեր էին եկել ինստիտուտում կայացած կոնֆերանսին: Մոտ յոթանասուն զեկուցում կարդացին երիտասարդները: Գիտական կոնֆերանսի շատ զեկուցումներ վերաբերում էին կիբեռնետիկայի վաղվա օրվան: Նատաշա Զուրյանը, Սերգեյ Դայանը, Սենիկ Մկրտչյանը և շատ-շատ ուրիշներ կատարել են այնպիսի հետազոտություններ, որոնք տարիների քրտնաջան ու լարված աշխատանքի արգասիք են: Բիոնիկա, ծրագրման նոր սիստեմ, հաշվիչ սարքերի կատարելագործում, կառավարման պարզեցում. ահա խնդիրների ոչ լրիվ ցանկը: Իսկ այդ նույն պահին, ինչ-որ մեկն արդեն այնպիսի թեմա է մշակում, որ գուցե հաջորդ կոնֆերանսի խոսակցության նյութ դառնա: Այդ թեմաներից շատերը դեռ այսօր չեն կարող դառնալ իրականություն, բայց ինքնամոռաց գիտնականների համար չկա հանգստություն, նրանց հետաքրքրում է այն ամենը, ինչ վաղը կարող է դառնալ օրակարգի հարց: Նրանք ինստիտուտ են եկել կյանք տալու իրենց նվիրական գաղափարներին, որոնք ունեն սկիզբ, բայց չունեն վերջ: Ամեն երիտասարդ, ոտք դնելով ԵՐՆԻՄՄ, հազար ու մի թելերով կապվում է կոմերիտական կազմակերպության հետ: Վերջինս ամեն ինչի նախաձեռնողն է՝ և՛ գիտական կոնֆերանսի, և՛ հանգստի երեկոյի, և՛ դահուկային մրցումների, և՛ բեկուզ բնակարանային ֆոնդի բաշխման: Կոմերիտական այս կազմակերպությունն ինչ-որ արտոնյալ վիճակում չէ: Եթե կա ինչ-որ արտոնություն, ապա դա նրա աշխատասիրությունն ու եռանդն են:

Երիտասարդ գիտնականը համարձակորեն իր վարկածն է առաջադրում, հետո նույն համարձակությամբ պայքարում, ապացուցում, համոզում: Ընդամենը մի քանի տասնամյակ առաջ, երբ առաջին ավտոմեքենան մուտք գործեց Հայաստան, բոլորն ապշած էին հրաշքը տեսնելով: Ո՞վ կմտածեր, որ տարիներ հետո Հայաստանը ո՛չ միայն կունենար իր սեփական ավտոգործարանը, այլև այստեղ գիտնականների համառ ջանքերով կստեղծվեր էլեկտրամոբիլը, որը գիտական ու տնտեսական հսկայական նշանակություն ունի: Այո՛, մի քանի ամիս է, որ երևանյան էլեկտրամոբիլը շրջագայում է հանրապետությունում: Երևանի գիտնական Հ. Դավթյանի և պոլիտեխնիկական ինստիտուտի մի խումբ գիտնականների ջանքերով ստեղծված այդ ինքնաշարժը նոր էջ կբացի տեխնիկայում՝ փոխարինելով ներքին այրման շարժիչներին: Էլեկտրամոբիլի կատարելագործումը կլուծի միանգամից մի շարք հարցեր. բենզինի, այդ թանկարժեք քիմիական հումքի տնտեսում, օդի ապականության վերացում, աշխատանքի բարձր կուլտուրա:

Իսկ նույն ժամանակ Մեծամորում ու Մատենադարանում իրենց որոնումներն են շարունակում երիտասարդ գիտնականներն ու նրանց հետ՝ Հայաստանի կոմերիտմիության դափնեկիր Ս. Այվազյանը: Մեծամորյան հինավուրց ձուլարանի հայտաբերումն, իրոք, նոր էջեր մարմնավորեց հին աշխարհի պատմության մեջ:

«Հայկական լեռնաշխարհի տերիտորիայում դեռևս հնագույն ժամանակներից հայտնի են եղել ու մշակվել են օգտակար հանածոների գրեթե բոլոր կարևորագույն տեսակները՝ պղինձը, անագը, ոսկին, արծաթը, երկաթը, կապարը, սնդիկը, կվարցը, աղը և այլն: Մասնավորապես անագը համարվում էր հին աշխարհի ամենահազվագյուտ մետաղներից մեկը»,— գրում է «Вокруг света» ամսագիրը: Մի հին, մի անծանոթ «գիտնականի» մտքի զորությամբ մեր նախնիները մշակել ու ամբողջ Եվրոպա և Արևելք են առաքել տարբեր տեսակի մետաղներ, կառուցել մեծամորյան «մետաղագործական կոմբինատը», իսկ հազարամյակներ հետո մեկ ուրիշ գիտնականի ջանքերով մեր պատմության փակ էջերը վերականգնվում ու սերունդներին են հանձնվում: Մեծամորը դառնում է գիտական արշավախմբերի կենտրոն, նոր գիտության հաղթարշավի խնդիրներ է հարուցում:

Շուտով հանրապետության ջահել բազուկներով ու որոնող մտքի զորությամբ հսսակ կառնեն Մեծամորից ոչ շատ հեռու կառուցվող ատոմային էլեկտրակայանը և նոր քաղաքը:

Մեր նախնիներն իրենց պարզունակ աստղադիտակներով հետևել են տիեզերքին ու աստղերին: Մեծամորցի գիտնականները երկնակամարը բաժանել են գիտականորեն և տեսել այն, ինչի մասին հնարավոր կլիներ աշխարհում խոսել հազարամյակ հետո: Իսկ տեսե՞լ են նրանք, արդյոք, այն աստղերը, որ պիտի փայլատակեին հայոց երկնակամարում երկու հազար տարի անց, գիտեի՞ն արդյոք, որ իրենց ստեղծածի ավերն ու ոչնչացումը տեսած սերունդը պետք է հարություն տար իր իսկ՝ մեծամորյան գաղտնիքներին ու երկներ նոր աստղեր, նոր արևներ: Գիտեի՞ն, արդյոք, որ մի օր իրենց հինավուրց մետաղաձուլարանի մոտ ատոմային էլեկտրակայան պետք է ծնվեր ու քաղաք՝ Մեծամոր անունով, որպես հավերժական շարժման ու զարգացման խորհրդանիշ:

Վ. Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

# Կատարելագործել ուսուցումը

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԴԱՍԸՆԹԱՑԸ ԵՎ ԴՊՐՈՑԻ ՀՈԳՍԵՐԸ

Հայ գրականության ավանդման վիճակը միջնակարգ դպրոցում վաղուց է մտահոգում ո՛չ միայն մանկավարժներին, այլև մեր հասարակության լայն շրջաններին։ Հենց դա էլ նպաստավոր մթնոլորտ է ստեղծում այս բնագավառում կատարելու էական բարեփոխումներ, որոնց նախադրյալներն արդեն ակներև են։

Ի՞նչ է արված այս ասպարեզում, որո՞նք են այդ նախադրյալները, և ո՞րն է դպրոցի ամենահրատապ պահանջն առաջիկայում։

Գրականությունն ավանդվում է դըպրոցի IV—X դասարաններում։ Միջին (IV—VII) դասարանների դասընթացն իր ուրույն տեղն ունի ուսումնական առարկաների համակարգում։ Այս շրջանում են ձևավորվում պատանիների բարոյական ու գեղագիտական ըմբռնումները. նրանք շատ զգայուն են գեղարվեստական խոսքի նկատմամբ։ Մյուս կողմից՝ գրական ընթերցանությունն է նրանց լեզվական զարգացման գլխավոր ազդակը։ Գործող դասընթացը, սակայն, որ կաղապարված էր տասնամյակներ առաջ կազմված դասագրքերում, չէր ապահովում նրա բազմակողմանի խնդիրների իրագործումը։ Նոր, լիարժեք դասընթացի ստեղծումը կարելի էր գլուխ բերել գործն սկզբից ևեթ գիտական հիմունքներով կազմակերպելու դեպքում միայն։ Լուսավորության մինիստրության մանկավարժական գիտությունների գիտահետազոտական ինստիտուտում 1967—1969 թթ. մշակվեց նոր, դպրոցի ժամանակակից պահանջներին համապատասխանող այդ դասընթացի ծրագիրը։ Այսօրվա խնդիրների լույսի տակ ուսումնասիրվեցին անցյալում մեզ մոտ գործածված և Ռուսաստանում ու Արևմտյան Եվրոպայում ներկայումս գործող մի շարք լավագույն դասագրքեր միջին դասարանների համար. այդ օգնեց ավելի լավ պատկերացնելու դասընթացի ուսումնական հնարավորությունները։

Կարևորագույն գործնական խնդիրն այս ասպարեզում, դասընթացի բովանդակության հարստացումն էր։ Գիտական աշխատողների կոլեկտիվին մտահոգում էր մանավանդ երեք հանգամանք։

Առաջին. այնպես անել, որ դասընթացում տեղ գտնող բոլոր նյութերը խոսքի արվեստի գեղեցիկ նմուշներ լինեն, որոնց ընթերցումն, իրոք, նպաստի աշակերտների լեզվական գիտելիքների հարստացմանը, գրական ճաշակի զարգացմանը։ Երկրորդ. այդ նյութերից ամեն մեկը համապատասխանի տվյալ տարիքի երեխաների հոգեկան պահանջներին, հետաքրքրական, գրավիչ լինի նրանց համար և, Երրորդ, դըրանք իրենց բովանդակությամբ նպաստեն աշակերտների մտավոր ու հոգեկան զարգացմանը, օգնեն կոփելու բարոյական վսեմ նկարագիր ունեցող քաղաքացիներ։

Դասընթացի նյութի ընտրությանը մասնակցում էին մի խումբ մանկավարժ-մեթոդիստներ, հայ գրականության ուսուցիչներ, գրողներ, գրականագետներ ու լեզվաբաններ։ Նման կոլեկտիվ աշխատանքը, բնականաբար, պիտի կանխեր անձնական նախասիրություններից բխող միակողմանիությունը և նպաստեր դասագրքային նյութի գաղափարական-գեղարվեստական որակի բարձրացմանը։ Նոր ծրագրում ո՛չ միայն ավելի լայնորեն է ներկայացված հայ գրականության ժանրային հարստությունը, այլև մեծացել է այն հայ գրողների տեսակարար կշիռը, որոնք



վաղուց ի վեր ճանաչված են իբրև մեր լավագույն դպրոցական հեղինակներ— Ղազարոս Աղայան, Հովհաննես Թումանյան, Ավետիք Իսահակյան, Վրթանես Փափազյան, Ստեփան Զորյան։ Դասընթացում ավելացել է նաև մեր այն սովետահայ գրողների «բաժինը», որոնց երկերը շատ բան են ասում այդ տարիքի երեխաների սրտին և մտքին— Ակսել Բակունց, Վախթանգ Անանյան, Հովհաննես Շիրազ, Համո Սահյան և ուրիշներ։

Դասընթացի համար խնամքով ընտրված են նաև համաշխարհային մանկապատանեկան դասական գրականության և սովետական ժողովուրդների գըրականության լավագույն նմուշները։ Այս բաժինը կնպաստի աշակերտների գեղագիտական մտահորիզոնի ընդլայնմանը, կօգնի ավելի ճիշտ պատկերացում կազմելու նաև հայրենի գրականության արժեքների վերաբերյալ, զերծ կպահի նրանց ապակողմնորոշող, վնասակար ազգային սնապարծությունից, որով երբեմն վարակվում են պատանիները։ Նոր ծրագրի հիման վրա ստեղծված դասագրքերը լույս են ընծայվել և օգտագործվելու են առաջին ուսումնական տարվանից։ Հասկանալի է, սակայն, որ ամեն մի դասընթաց ըստ ամենայնի կատարյալ կարող է դառնալ դպրոցում գործնական կիրառման տևական փորձաշրջան անցնելուց հետո միայն։

Վերջին երեք-չորս տարում զգալի փոփոխություններ են կատարվել նաև բարձր դասարանների (VIII—X) հայ գրականության դասընթացում։ Նախ՝ տասնհինգ տարվա ընդմիջումից հետո հրատարակվեցին քրեստոմատիաներ VIII և IX դասարանների համար։

Դպրոցական դասընթացի ակնառու մի հաջողություն էր սովետահայ գրականության նոր դասագիրքը (հեղինակ՝ Ս. Աղաբաբյան)։ Բայց, ինչպես այս դասագրքի, նույնպես և բարձր դասարանների ողջ դասընթացի կատարելագործման ոլորտում անելիքներ դեռ շատ կան։

Կատարված վերամշակումների շնորհիվ որակական զգալի փոփոխություն է կրել IX դասարանի դասագիրքը։ Հեղինակը (Հ. Թամրազյան) ավելացրել է նոր, արժեքավոր վերլուծություններ՝ նվիրված Աբու-Լալա Մահարու պոեմին, Մեծարենցի ստեղծագործությանը։ Մեծ չափով բարեփոխված են Հովհ. Թումանյանին, Դ. Վարուժանին նվիրված բաժինները։ Սակայն դասագրքի մի քանի էական թերությունները դեռևս վերացված չեն։ Լուրջ վերամշակման կարիք ունի Տերյանին նվիրված հատվածը։ Ավելորդ է Նար-Դոսի դպրոցական ծրագրով չուսումնասիրվող պատմվածքների և Զոհրապի Այրին և Փոստալը ուսումնական ծրագրից հանված նովելների բովանդակության վերաշարադըրանքը դասագրքում (1970 թ. հրատարակություն)։

Վերջապես այս դասագրքում այժմ ևս քիչ չեն կրկնվող մտքերը, ոչ ճշգրիտ ձևակերպումները, լեզվական տրաֆարետը, որոնք չեն պատշաճում գրականության դասագրքին և հեղինակի ու խմբագրի ավելի խղճամիտ ու հոգատար վերաբերմունքի դեպքում կարող էին չլինել։

Հայ գրականության դպրոցական դասընթացի աքիլեսյան գարշապարը, սակայն, մնում է VIII դասարանի դասընթացը։ Բանն այն է, որ այդ դասարանի ծրագիրը բարդ է և այն թեթևացնելու ու պարզեցնելու համար գործադրված ջանքերը դեռևս գոհացուցիչ արդյունք չեն տվել։ Բավական է հիշել, որ այն ընդգրկում է նախաքրիստոնեական բանահյուսությունից մինչև XIX դարի վերջը ձգվող ժամանակաշրջանը։ Մի կողմ թողնելով այս շրջանի գրականության բազմասեռ ու բազմաբովանդակ բնույթը, հիշենք, որ ուսումնական մի տարվա ընթացքում աշակերտները ծանոթանում են միջին հայերենի և անցողիկ շրջանի գրաբարի այլևայլ երանգներին, Թիֆլիսի բարբառի՝ իրարից շատ տարբեր երկու դրսևորումների (Սայաթ-Նովա և Սունդուկյան), գրական լեզվի փոխարկվող Երևանի բարբառին (Աբովյան, Պռոշյան), արևմտահայերենին (Պեշիկթաշլյան, Պարոնյան, Դուրյան)։ Այս պայմաններում քրեստոմատիան և դասագիրքը առաջին հերթին կոչված են գեթ մասամբ դյուրացնելու «ծրագրային» դժվարությունների հաղթահարումը։ Ցավոք, այս ձեռնարկներն իրենց որոշ կողմերով նաև նոր դժվարություններ են հարուցում ուսուցիչների համար։

Անշուշտ, ուրախալի է քրեստոմատիայի գոյությունը, բայց այն ավելի արդյունավետ կծառայեր իր կոչմանը,

եթե կատարվեին պահանջվող անհրաժեշտ բարեփոխությունները: Համեմատելով լույս ընծայված գիրքը ժամանակին մանկավարժական գիտությունների ինստիտուտին ներկայացված նրա ձեռագրի հետ, տեսնում ենք, որ կազմողը (Ա. Մնացականյան) բարեխղճորեն կատարել է ինստիտուտի հանձնարարած համարյա բոլոր ճավելումները: Դրանով դասընթացի այս կարևորագույն ծրագրային բաժիններն ավելի ամբողջական, աշակերտների համար ուսանելի և հետաքրքրական են դարձել: Ցավոք, նույն շահագրգռությունը չի ցուցաբերված ըստ ինստիտուտի եզրակացության այս ձեռնարկում ավելորդ նյութերը դուրս թողնելու գործում: Այդ վերաբերում է, մանավանդ, միջնադարյան բանահյուսությանը և X—XVIII դարերի հեղինակներին: Եվ, ահա, ժողովրդական ստեղծագործության այնպիսի գոհարների կողքին, ինչպիսիք են՝ Տաղ ջրի վրայ է ասացյալ, Վայրի ճավուկ մի, Կռունկ, ուստի կուգաս, սքանչելի բանաստեղծությունները, տեղ են գտել իրենց գեղարվեստական արժեքով անբաղդատելիորեն ցածրը, երբեմն աշակերտների համար խիստ անհասկանալի տաղեր (Կտրիճ, գնե՛, Ասխս-Մասխս և այլն): Քրեստոմատիայում գնահատելի մի նորույթ է Ղազար Փարպեցու Պատմությունից բերված Արարատյան գավառը պատկերող հատվածը: Սակայն, տվյալ ձեռնարկում կան և ծրագրով չնախատեսված գրվածքներ, որոնք զուր տեղը խճողում են նրա հարուստ ու գեղեցիկ բովանդակությունը: Այսպես՝ Դավթակ Քերթողի (Ողբ ի մահն Ջիվանշիրի՝ մեծի իշխանի), Ներսես Շնորհալու (Ողբ Եդեսիոյ քաղաքի վայելչահիւս չափաբանութեամբ շարադրեալ սրբոյն Ներսես Շնորհալւոյ՝ Հայոց կաթողիկոսի Կլայեցւոյ), Պետրոս Ղափանցու Առ ազգն իւր սիրելի, Զվշտակրութենէ հայրենեաց մերոց ի դեմս զանազանից նմանութեանց ոտանավորները:

Օտար հարստահարողների դեմ մեր ժողովրդի պայքարի գրվածքներն այս ձեռնարկում ներկայացված են հետաքրքրական, պատանիներին հուզող հատվածներով՝ սկսած Հայկի ու Բելի, Արա Գեղեցկի ու Շամիրամի առասպելներից մինչև Աբովյանի Վերք Հայաստանի, Պատկանյանի Արաքսի արտասուքը և Րաֆֆու Սամվելը: Ազգային հպարտության առողջ ու վեհ զգացմունքով տոգորված այդ երկերի կողքին հիշյալ կտորներն ավելի շեշտակի են հնչեցնում սուգի, վշտակրության ու ողբասացության նսեմ մոտիվը միայն: Մյուս կողմից՝ հանրահայտ է, որ դըպրոցական քրեստոմատիայի էջերը չպետք է զբաղեցնեն այնպիսի նյութեր, որ անմիջականորեն հարկավոր չեն տվյալ տարիքի աշակերտներին: Ամենևին հարկ չկար, օրինակ, պահպանել ձեռնարկում մեծ տեղ գրավող գրաբար բնագրերը՝ աշխարհաբար թարգմանությունների կողքին (Խորենացուց, Եղիշեից, Փավստոսից, Կորյունից, Փարպեցուց, Գրիգոր Մագիստրոսից և ուրիշներից): Չէ՞ որ աշակերտները գրաբար չեն սովորում և չգիտեն (ի դեպ, չգիտեն նաև ուսուցիչներից շատերը): Իսկ առանձին դեպքերում բնագրին ծանոթացնելու համար բավական են հին ժողովրդական բանահյուսության մի քանի, համեմատաբար մատչելի ու գեղեցիկ կտորները (Վահագնի ծնունդը, Արտաշես և Սաթենիկ):

Քրեստոմատիայում ցայտուն դրսևորված է սոցիալական բողոքի մոտիվը ոչ միայն XIX դարի, այլև հին ու միջնադարյան գրականության երկերում: Սակայն, ինչպես Ֆրիկի Գանգատը, նույնպես և մինչ այդ զետեղված Խորենացու Ողբը, անշուշտ, պետք է տըրվեին կրճատումներով. չէ՞ որ աշակերտների համար խիստ անհասկանալի, անհաղթահարելի մի պատնեշ է Ողբի կրոնաբիբլիական հատվածը...:

Ոչ մի կերպ չի կարելի արդարացնել այս քրեստոմատիայում մի ուրիշ երևույթ: Խորենացու Պատմության երեք հատվածները (Հայկ և Բել, Արա գեղեցիկ և Շամիրամ, Տիգրան և Աժդահակ) տրված են ոչ թե այնպես, ինչպես բնագրում է՝ արձակ, այլ վերածված չափածոյի, այն էլ նախ գրաբար, ապա՝ աշխարհաբար: Դասագրքի ներածական Երկու խոսքում, ըստ երևույթին կազմողի կողմից, ասվում է, թե այս հատվածները զետեղվել են որպես բանահյուսության բանաստեղծական նմուշներ, որ հավանաբար նախապես չափածո են արտասանվել, դրա համար էլ «տողատված են»: Կարելի է համաձայնել կամ չհամաձայնել նման ենթադրությանը: Բայց չէ որ դպրոցական քրեստոմատիայում նման «բնագրեր» զետեղելուց առաջ անհրաժեշտ է, որ դրանք գիտական լուրջ քննարկման առարկա դարձած և համընդհանուր ճանաչում գտած լինեն:

Չխոսելով քրեստոմատիայի, իբրև ուսումնական օժանդակ ձեռնարկի, այլ էական թերությունների մասին, նկատենք, որ այս առումով այն լրջորեն կշահեր, եթե հիմնավորապես վերամշակվեր գրականության դասավանդման, դպրոցական-ուսուցչական աշխատանքի փորձ ունեցող գիտակ մանկավարժների անմիջական մասնակցությամբ:

Եթե հիշյալ քրեստոմատիան նոր է լույս ընծայված և կարելի է հուսալ, որ առաջիկայում այն կբարեփոխվի, ապա նույնը դժվար է ասել VIII դասարանի հայ գրականության դասագրքի առնչությամբ (հեղինակ՝ Մ. Մկրյան): Տարիներ շարունակ բազմապիսի քննադատական դիտողությունների առարկա է եղել այս ձեռնարկը. շատ են դիտողությունները նրա լեզվի բարդության, խճողվածության վերաբերյալ: Հեղինակը ժամանակ և առիթներ ունեցել է այն վերամշակելու, բայց մամուլի էջերում և ուսուցչական խորհրդակցություններում չի նվազում այս առնչությամբ արտահայտվող դժգոհությունը: Արդարացի՞ է, արդյոք, դժգոհությունը:

Չի կարելի ասել, թե հեղինակն ինքը նշանակություն չի տալիս լեզվի պարզությանը, հստակությանն ու հակիրճությանը: Հակառակը, հենց դասագրքում հիշվում է, որ Խորենացին «խուսափել է երկար ու ճոռոմ արտահայտություններից, և մեջ են բերվում նրա գովատական խոսքերը հօգուտ ոճի «համառոտության և արագաբանության»: Սակայն դասագրքի վերջին (1970 թ.) հրատարակությունը կարդալիս կրկին ցավով տեսնում ես, որ այնտեղ մոռացության է տրված քերթողահոր այս պատվիրանը, որը դասագրքի համար պակաս կարևոր չէ: Ահա մի երկու նմուշ դասագրքի լեզվականորեն ոչ խրթին հատվածներից. «Ճիշտ է, նրա երգիծաբանական գործերում թեպետ հաճախ պակասում է ծիծաղ առաջացնելու նպատակին ուղղված ստեղծագործական չափի զգացումը, որն արտահայտվում է մանավանդ նատուրալիստական պատկերների ու նկարագրությունների առկայությամբ, բայց և այնպես այդ գործերը շատ արժեքավոր են, «Փորսուխին Ավագը», «Բարևագրեր», «Տրացինս», «Վարթևոր», «Օձի խածած» և այլ գործերում Պատկանյանը հանդես է գալիս քաղքենիական խավերին բնորոշ հետամնացության ու տգիտության, ինքնագոհության և այլ արատների անխնա քննադատությամբ» (169):

«Սամվել» վեպի գեղարվեստական մեծ արժեքները պայմանավորող կողմերից է գլխավոր հերոսի կերպարի հաջողվածության հետ միաժամանակ՝ մյուս դրական, ինչպես և բացասական հերոսների կերպարների հաջողվածությունը» (263):

«Ռազմի տեսարանների հաջողվածության գաղտնիքը կապված է մի կողմից այն հանգամանքի հետ, որ հեղինակը, հատկապես ուսումնասիրած լինելով՝ հրաշալի կերպով պահպանում է ժամանակաշրջանի ռազմական գործի ինքնատիպ երանգները, մյուս կողմից այն բանի հետ, որ այդ տեսարաններում, որոնք անչափ հեռու են դեկորատիվ լինելուց, շատ բան է բացահայտվում մասնակից հերոսների ներաշխարհից, այսինքն, այլ խոսքով ասած՝ ռազմի գործողություններում մասսայական հոգեբանության դրսևորման հետ միաժամանակ լայնորեն ցուցադրվում են գլխավոր հերոսները՝ իրենց բնորոշ բնավորության ու գաղափարական գծերով» (265)*:

Սրանք գրքի համեմատաբար պարզ շարադրված գլուխների սովորական, «շարքային» նախադասություններից են: Այսպիսին է դասագրքի լեզվի որակը: Բայց և այնպես, թվում է, բանը ոչ այնքան լեզուն է, որքան հեղինակի բուն մտածողությունը, գրքի լեզվամտածողական հյուսվածքն ընդհանուր առմամբ, որն, ի դեպ, տասնամյակների ընթացքում էական փոփոխության չի ենթարկվել, և որը հենց, ըստ երևույթին, առիթ է տալիս ուսուցիչներին այս ձեռնարկն անվանելու «երկ-

* Ընդգծումները մերն են (Ռ. Ա.):

աշխատանքն այնտեղ պետք է ըստ կարելույն համապատասխանեն տվյալ դասարանների լեզվի ուսուցման սիստեմին: Բայց գրականության դասավանդումը՝ իբրև լեզվական գիտելիքների հարստացման ու լեզվական ճաշակի զարգացման աղբյուր, ներկայումս ավելի մեծ նշանակություն է ստանում դպրոցի բարձր դասարաններում: Ըստ գործող ուսումնական ծրագրի մայրենի լեզվի դասավանդման համակարգն ամբողջացված է համարվում VIII դասարանում: Ենթադրվում է, որ այդ դասընթացը պիտի ապահովի մայրենի լեզվի իմացության գոհացուցիչ մակարդակ: Այս ենթադրությունը, սակայն, գործնականորեն չի արդարանում:

Մեր ուսուցչությունը բազմիցս արտահայտել է իր միահամուռ կարծիքն ու արդարացի պահանջը—մայրենի լեզվի ուսուցումը նորմալ դասաժամերով իբրև մի ամբողջական համակարգ պետք է շարունակվի մինչև դպրոցական պարապմունքի վերջին օրն ավարտական դասարանում: Այդ պահանջը, սակայն, դեռ չի իրականացվել: IX և X դասարաններում տրամադրված կեսական ժամերը ևս, բազմառարկայնության և ուսումնական պլանի խիստ ծանրաբեռնվածության ներկա պայմաններում, միշտ վտանգի տակ են: Սա ժամանակավոր, անցողիկ վիճակ չէ: Ահա թե ինչու ներկայումս հայ գրականության ժամերն են այն պատուհանը, որը բաց պահելով, մենք կարող ենք թույլ չտալ, որ IX և X դասարաններում խամրի աշակերտների հետաքրքրությունը մայրենի լեզվի նկատմամբ և նրանք մինչև բարձրագույն դպրոցի դուռը հասնելը մոռանան նաև նախապես սովորածը: Այս հանգամանքը թե՛ մշակութային և թե՛ ընդհանուր հայրենասիրական պարտք է դնում գրականության ուսուցիչների և, մանավանդ, դասագրքերի հեղինակների վրա: Ուսումնասիրվող հայ գրողների բանաստեղծական լեզվի հմայքը աշակերտների առջև վեր հանելը ներկա հանգամանքներում պետք է դիտվի իբրև գրականության դասընթացի կենտրոնական խնդիրներից մեկը: Ահա թե ինչու խիստ ցանկալի է, որ դասագրքերի հեղինակներն իրենց գրականագիտական կարողությունների ողջ ուժով ընդառաջեն այս խնդրի իրականացմանը, որպեսզի դասագրքերում լեզվին ու ոճին նվիրված բաժինը չներկայանա իբրև սոսկական կցորդ, և ամեն մի դասագրքում լինեն թեկուզ առանձին պատկերների կամ բանաստեղծական հատվածների լեզվաոճական հանգամանալից վերլուծություններ:

Գրականության դասընթացի բարեփոխման ռեալ նախադրյալներն առկա են: Եթե երկար տարիների ընթացքում մայրենի լեզվի և գրականության դպրոցական դասագրքերն առանձին անհատների մենաշնորհն էին, ապա ներկայումս դրանց ստեղծմամբ ու կատարելագործմամբ է զբաղվում մանկավարժ-գիտնականների մի պատկառելի կոլեկտիվ: Բանն այն է, որ նրանք կարողանան համագործակցել և փոխադարձ օգնությամբ առաջ տանել իրենց ստանձնած պատվավոր գործը: Իսկ որ ամենակարևորն է՝ մոտ կանգնեն դպրոցին, հրաժարվեն «մենք առանց այդ էլ գիտենք» ինքնասփոփ մտածողությունից, չհանգստանան էժանագին հաճոյախոսության հանգող առանձին գովասանական գրախոսություններով, այլ գնան դպրոց՝ դասարանում լսելու և տեսնելու, թե ինչպե՞ս է ընկալվում, ի՞նչ է տալիս աշակերտներին իրենց երախայրիքը, տեղն ու տեղը խորհրդակցեն «գործատիրոջ»՝ ուսուցչի հետ, և ըստ այդմ, այդ փորձառությամբ զինված, կատարելագործեն դասագրքերը, հայ գրականության դասընթացն ամբողջովին:



# ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԳՖՀ-ՈՒՄ

Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հասարակական կյանքում էական դեր են խաղում բուրժուական քաղաքական կուսակցությունները, որոնք արտահայտում են մոնոպոլիստական կապիտալիզմի տարբեր խմբավորումների շահերը: Մոնոպոլիստական կապիտալի կամքն արտահայտող կուսակցություններն են քրիստոնեա-դեմոկրատական և քրիստոնեա-սոցիալական միությունները: ՔԴՄ ստեղծվել է 1945 թվականի երկրորդ կեսին: Այն մինչև 1950 թ. ձևավորվել էր միայն Արևմտյան Գերմանիայի անգլիական գոտում, իսկ ամերիկյան ու ֆրանսիական գոտիներում գործում էր առանձին երկրային միավորումներում (լանդտագներում):

1950 թ. հոկտեմբերից ՔԴՄ կազմակերպություններ ստեղծվեցին Արևմտյան Գերմանիայի բոլոր լանդտագներում: Այսպիսով, ձևավորվեց ՔԴՄ միասնական կուսակցությունը, որի վարչության առաջին նախագահն ընտրվեց ռեանշիստ Կ. Ադենաուերը: ՔԴՄ, ՔՍՄ կուսակցություններն իրենց գործունեությամբ լիակատար աջակցություն էին ցույց տալիս ամերիկա-անգլիական օկուպացիոն իշխանությունների քաղաքականությանը: Գերմանիայի պառակտումից հետո ՔԴՄ նոր ստեղծված կառավարության մեջ տիրապետող դիրք գրավեց: Արևմտյան Գերմանիայի ՔԴՄ, ՔՍՄ և ՍԴ, այսպես կոչված՝ մեծ կոալիցիայի կառավարությունը, պետական մոնոպոլիստական կապիտալիզմի տիրապետությունն ամրապնդելու համար, ներքին կյանքում իրագործում էր հակաբանվորական և հակադեմոկրատական քաղաքականություն: Ավելի ուշ, 1965 թ. գարնանը, ԳՖՀ-ում լայնորեն հռչակվեց, այսպես կոչված՝ «ձևավորված հասարակարգ» կոնցեպցիան, որի նպատակն էր ավելի ամրապնդել մոնոպոլիաների տնտեսական ու քաղաքական տիրապետությունը: Դա, փաստորեն, սոցիալական հաշտության մի տեսություն է, որը քարոզում է «դասակարգային շահերի ներդաշնակություն կապիտալիստական հասարակության մեջ»: Քաղաքական այդ գծի շարունակությունն է 1968 թվականին արտակարգ օրենքների ընդունումը: Բոննի կոալիցիոն կառավարության գործունեությունը միտում էր ամրապնդելու մոնոպոլիստական կապիտալի դիրքերը, օրինականացնելու ձեռնարկատերերի՝ բանվորների դեմ կիրառվող միջոցները:

ԳՖՀ-ի նախկին կառավարող կուսակցությունների կողմից «արտակարգ օրենքների» ընդունումը հետապնդում էր նաև ագրեսիվ նպատակներ: Այն է՝ Եվրոպայում և ամբողջ աշխարհում ապահովել գերմանական իմպերիալիզմի-մոնոպոլիստական կապիտալի տնտեսական ու քաղաքական ազդեցության, նրա կորցրած դիրքերի լիակատար վերականգնումը: Բոննի ռեանշիստական շրջանները չեն ընդունում հետպատերազմյան սահմանները. նրանք հատկապես պահանջում են վերանայել Օդեր—Նեյսե գետերով անցնող Գերմանիայի արևելյան սահմանը: ԳՖՀ առաջին կանցլեր, քրիստոնեա-դեմոկրատական կուսակցության նախագահ Կ. Ադենաուերը դեռևս 1949 թ. դեկտեմբերին հայտարարում էր, որ իրենք երբեք չեն հաշտվի Յալտայի և Պոտսդամի միջազգային կոնֆերանսների կողմից որոշված Օդեր—Նեյսե գետերով անցնող Գերմանիայի արևելյան սահմանի հետ:

Ռեանշիստ Ադենաուերի այդ ագրեսիվ կուրսը շարունակեցին Բոննի հաջորդ կառավարողներ Լ. Էրհարդը և Կ. Կիզինգերը, որոնք պահանջում էին Գերմանիան վերամիավորել 1937 թ. սահմաններով, վերացնել ԳԴՀ: ԳՖՀ նախկին կառավարող կուսակցությունները ձգտում են Հյուսիս-ատլանտյան բլոկի օգնությամբ Եվրոպայում հաստատել Արևմտյան Գերմանիայի հեգեմոն դիրքը: Այդ կապակցությամբ արևմտյան պետություններն առանձնահատուկ նպաստավոր պայմաններ ստեղծեցին Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկում արևմտա-գերմանական իմպերիալիզմի ազդեցության ուժեղացման համար: Միջազգային կոմունիստական և բանվորական կուսակցությունների Մոսկվայի խորհրդակցությունում Գերմանիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Ռեյմանը ասաց. «Արևմտագերմանական իմպե-

րիալիզմը վերստին դարձել է համաշխարհային իմպերիալիզմի սիստեմի ամենաամուր հենարաններից մեկը։ Նրա ագրեսիվ բնույթը բխում է իր տնտեսական պոտենցիալից և պատմական զարգացման առանձնահատկություններից։ Արևմտագերմանական իմպերիալիզմի ռազմա-քաղաքական ստրատեգիան անմիջականորեն ուղղված է սոցիալիստական պետությունների դեմ»։

ԳՖՀ մոնոպոլիստական կապիտալի շահերն արտահայտող նախկին կառավարող ՔԴՄ, ՔՍՄ կուսակցությունների ներքին և արտաքին ռեակցիոն քաղաքականությունը վերջին ժամանակաշրջանում լուրջ անհաջողության մատնվեց. դրա վկայությունն են 1969 թ. սեպտեմբերի 28-ին Բունդեստագի ընտրությունները և դրան հաջորդող արևմտագերմանական նոր կառավարության կազմավորումը։ Ընտրությունների ընթացքում ՔԴՄ, ՔՍՄ կուսակցությունները կորցրին մի քանի դեպուտատական տեղեր, Բունդեստագի 496 դեպուտատներից ՔԴՄ, ՔՍՄ կուսակցություններից Բունդեստագում ընտրվեցին 242 դեպուտատ, որոնց օգտին քվեարկեցին ընտրողների 46,1 տոկոսը։ ՔԴՄ կուսակցության լիդերները հույս ունեին, թե ընտրություններից հետո կմնան իշխանության գլուխ և կշարունակեն «սառը պատերազմի» և միջազգային լարվածությունը սրելու իրենց ձախողված քաղաքականությունը։ Այդ պատճառով նրանք նախընտրական կամպանիայի ժամանակ լայն ասպարեզ տվեցին նացիոնալ-դեմոկրատական կուսակցությանը։ ՔԴՄ ձգտում էր կամ շարունակել «մեծ կոալիցիան», կամ կազմել, այսպես կոչված՝ «փոքր կոալիցիա» ազատ դեմոկրատական կուսակցության հետ։ Սակայն իրադարձությունների ընթացքը ցույց տվեց, որ ազատ դեմոկրատները հրաժարվեցին Կիզինգերի հետ բանակցելուց և միանալու համաձայնության եկան սոցիալ-դեմոկրատական կուսակցության հետ։ Այսպիսով, ԳՖՀ գոյության 20 տարվա ընթացքում առաջին անգամ քրիստոնեա-դեմոկրատական կուսակցությունը դուրս մնաց կառավարության կազմից։ ՔԴՄ և ՔՍՄ միլիտարիստական և ռևանշիստական կուրսը ձախողման դատապարտվեց։

Արևմտյան Գերմանիայի կոալիցիոն կառավարության կազմում էր նաև սոցիալ-դեմոկրատական, Գերմանիայի հնագույն քաղաքական կուսակցությունը։ Վերջինս կազմավորվել է 1875 թվականին լասսալականների և էյզենախականների միավորմամբ։ XIX դարի վերջին և XX դարի սկզբներին, իմպերիալիզմի, հասունացող պրոլետարական հեղափոխության դարաշրջանում գերմանական սոցիալ-դեմոկրատական աջ լիդերները հրաժարվեցին պրոլետարիատի դասակարգային պայքարից։ Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ նրանք անցան նացիոնալ-շովինիզմի դիրքերը, պաշտպանեցին գերմանական իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը։ 1918 թվականին Գերմանիայում սկսված հեղափոխության ժամանակ սոցիալ-դեմոկրատիայի օպորտունիստական լիդերները, դավաճանելով բանվոր դասակարգին, զորավիգ դարձան գերմանական իմպերիալիզմին։ Սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարները, հրաժարվելով կոմունիստների հետ ֆաշիզմի դեմ միասնական ճակատ ստեղծել, փաստորեն, վերջինիս համար ճանապարհ հարթեցին իշխանության գլուխ գալու համար։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը Արևմտյան Գերմանիայում ձևավորվեց 1946 թվականի մայիսին։ Վերջինիս ղեկավարությունը Շումախերի գլխավորությամբ դավաճանեց բանվոր դասակարգին, բանվորական շարժման մեջ հանդես եկավ որպես ամերիկա-անգլիական և արևմտա-գերմանական իմպերիալիզմի գործակալ։ Այդ ռեակցիոն գործիչները աջակցում էին Գերմանիայի պառակտման անգլո-ամերիկյան քաղաքականության իրականացմանը։ Գերմանական սոցիալ-դեմոկրատական լիդերները պաշտպանում էին Գերմանիայի ռազմականացման, Արևմտյան Գերմանիան ԳԴՀ և մյուս սոցիալիստական երկրների դեմ ռազմա-քաղաքական պլացդարմ դարձնելու ամերիկյան քաղաքականությունը։

Գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը Բոննի կառավարության մեջ մտավ 1966 թ. աշնանը։ Արևմտա-գերմանական «Վելտ» թերթի վկայությամբ, այդ ժամանակ ՔԴՄ, ՔՍՄ կուսակցությունները «մահամերձ էին», և շտապ պահանջվեց «մեծ կոալիցիայի» թթվածնի բարձը։ Սոցիալ-դեմոկրատիան «արհեստական շնչառություն տալու այդ գործողությունը» լավ կատարեց։ Կազմելով կոալիցիոն կառավարություն, սոցիալ-դեմոկրատական լիդերները հայտարարեցին, թե նրանք «սկզբունքային տարաձայնություններ չունեն Կիզինգեր—Շտրաուսի կուսակցության հետ»։ Սոցիալ-դեմոկրատիայի տակտիկայից խիստ հիասթափվեցին բանվոր դասակարգը, առաջադիմական ուժերը։ Գերմանիայի բանվոր դասակարգը գիտակցում էր, որ դաշինքը խոշոր մոնոպոլիաների կուսակցությունների հետ հակաբնական է, և այդ պատճառով նրանք հրաժարվում են քվեարկել սոցիալ-դեմոկրատիայի օգտին։ Չնայած այս բոլորին, սոցիալ-դեմոկրատական առաջադիմական որոշ գործիչներ և տեղական կազմակերպություններ լիովին համաձայն չէին Բոննի կառավարության ագրեսիվ միլիտարիստական կուրսին, որը չէր համապատասխանում ժամանակակից Եվրոպայի ռեալ իրադրությանը։

Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության տեղական կազմակերպությունների և առանձին ներկայացուցիչների կողմից առաջադիմական, խաղաղասիրական ելույթներ եղան բունդեստագի ընտրությունների նախօրյակին։ Ինչպես հայտնի է, բունդեստագի վերջին ընտրությունների ժամանակ, սոցիալ-դեմոկրատները ստացան 224 պառլամենտական մանդատներ և շահեցին ընտրողների 42,7 տոկոսը (1965 թ. 39,3-ի փոխարեն)։ Ազատ դեմոկրատական կուսակցությունն այժմ բունդեստագում ունի 30 տեղ։ Այդ ընտրություններից անմիջապես հետո սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը բանակցությունների մեջ մտավ ազատ դեմոկրատների հետ, ստեղծելով նոր կոալիցիոն կառավարություն։

1969 թ. հոկտեմբերի 21-ին բունդեստագը ձայների մեծամասնությամբ (254 ձայն) ԳՖՀ կանցլեր ընտրեց սոցիալ-դեմոկրատական կուսակցության նախագահ Վիլլի Բրանդտին, իսկ վիցե կանցլեր և արտաքին գործերի մինիստր ընտրվեց ազատ դեմոկրատական կուսակցության նախագահ Վալտեր Շեելը։

ԳՖՀ ընտրողները կառավարական մանդատներ տվեցին սոցիալ-դեմոկրատական և ազատ դեմոկրատական կոալիցիային, ամենից առաջ, հուսալով, որ նրանք կհասնեն Գերմանիայի և Եվրոպայի ռեալ իրականության ճանաչմանը և իսկական շրջադարձ կստեղծեն արևմտագերմանական կառավարության ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում։

Գերմանիայի Դեմոկրատական Հանրապետության կառավարության նախաձեռնությամբ 1970 թ. մարտի 19-ին Էրֆուրտ քաղաքում կայացավ ԳԴՀ կառավարության նախագահ Վ. Շտոֆի և ԳՖՀ կանցլեր Վ. Բրանդտի հանդիպումը։ Այս հանդիպումը հետպատերազմյան Գերմանիայի կյանքում պատմական իրադարձություն է, որը բանակցությունների հիմք դրեց գերմանական երկու պետությունների միջև։

Արևմտյան Գերմանիայի հասարակական կյանքում նեոնացիստական նացիոնալ-դեմոկրատական կուսակցությունը քաղաքական ասպարեզ է եկել 1964 թվականի վերջերին. Նրա գաղափարական սկզբունքները, ծրագիրն ու տակտիկան ամբողջովին առնված են հիտլերյան զինանոցից։ Նացիոնալ-դեմոկրատական կուսակցության վարչության ղեկավար կազմի ճնշող մեծամասնությունը նախկին ֆաշիստներ են, մինիմում ծրագիրն է հասնել իշխանության։

Ինչպես 1930-ական թվականներին, հիտլերյան ֆաշիզմը գերմանական ժողովրդի գիտակցության մեջ ներարկում էր ռասիզմի և նացիոնալիզմի թույնը, այնպես էլ այժմ նեոնացիզմն իր քաղաքականության հիմքն է դարձրել, այսպես կոչված՝ «գերմանական հոգու մաքրության» շովինիստական տեսությունը։ Դա հաստատվում է նաև ԳՖՀ նշանավոր պատմաբան Ռենգարդ Կյունլինի վերջերս լույս տեսած երկերով։ Կյունլինը հանգել է այն եզրակացության, որ նացիոնալ-դեմոկրատական կուսակցությունը Բոննի առաջատար, կառավարող կուսակցությունների ռևանշիստական և նացիոնալիստական քաղաքականության ծնունդն է, որի երևան գալուն նպաստել է ԳՖՀ-ում դեմոկրատիայի սահմանափակումը։ ՆԴԿ քաղաքական նպատակները, ըստ էության, ավելի բացահայտորեն են արտահայտում և կրկնում ԳՖՀ նախկին կառավարող ՔԴՄ, ՔՍՄ կուսակցությունների հեգեմոնիզմով ու շովինիզմով ներծծված դոկտրինաները։ Արևմտյան Գերմանիայում նեոնացիզմի ակտիվացման գլխավոր պատճառն այն է, որ ազդեցիկ շրջաններն աջակցում և նպաստում են նացիոնալ-դեմոկրատական կուսակցությունների գործունեությանը։

Արևմտյան Գերմանիայի դեմոկրատական և առաջադիմական ուժերը վճռաբար պահանջում են արգելել նեոնացիստական կուսակցությունը, սակայն Բոննի կառավարությունը և ՔԴՄ, ՔՍՄ կուսակցություններն ամեն կերպ պաշտպանում են նացիոնալ-դեմոկրատական կուսակցության գոյությունը։ Քրիստոնեա-սոցիալական միության լիդեր Շտրաուսը ո՛չ միայն հովանավորում, այլև նույնիսկ ձգտում է գործակցել նացիոնալ-դեմոկրատական կուսակցության հետ։

Անհերքելի է, որ նացիոնալ-դեմոկրատները չեն թաքցնում իրենց քաղաքական ընդհանրությունը ԳՖՀ մոնոպոլիստական կապիտալի կուսակցությունների հետ։ Հայտնի է, որ 1968 թ. մարտին կանցլեր Կիզինգերի, այսպես կոչված՝ «ազգի դրությունը մասնատված Գերմանիայում» հարցի վերաբերյալ կառավարական հայտարարությունից հետո, ֆոն Թադենը գոհունակությամբ նշեց, որ կառավարությունը «մոտեցել է նացիոնալ-դեմոկրատների արտաքին քաղաքական հայացքներին»։ Նացիոնալ-դեմոկրատական կուսակցության սոցիալական բազան բնակչության այն նույն խավերն են, որոնք համակրում էին հիտլերյան ֆաշիզմին։ Այդ կապակցությամբ ԳՖՀ սոցիոլոգ Կլաուս Լիպելտան իր 1967 թվականին գրած, Նոր աջ կուսակցությունների համախոհները գրքում արտահայտում է այն միտքը, որ ԳՖՀ բնակչության միջին խավերը՝ մանր ձեռնարկատերերը, առևտրականները, մանր չինովնիկները և ծառայողները, իրենց քաղաքական խակության պատճառով, ենթարկվում են նացիոնալիստական դեմագոգիային։ Մանրբուրժուական այդ խավերն էլ հենց կազմում են նացիոնալ-դեմոկրատական կուսակցության անդամների մեծ մասը։

Տալով ԳՖՀ-ում նացիոնալ-դեմոկրատական

## «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ» ԵՎ ԱՆԴՐՖԵԴԵՐԱՑԻԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

Առաջին համաշխարհային պատերազմի և բուրժուա-ազգայնական կառավարությունների քաղաքականության հետևանքով մեր դարի 20-ական թվականների սկզբներին ոչ միայն ծայրաստիճան քայքայվել էր Անդրկովկասի տնտեսությունը, այլև խաթարվել էին հայերի, ադրբեջանցիների, վրացիների ավանդական կապերն ու բարեկամական համագործակցությունը, գլուխ էին բարձրացրել թունոտ ազգայնականությունը, փոխադարձ անվստահությունը, երկրամասը վերածվել էր ազգային թշնամանքի ու ազգամիջյան կռիվների թատերաբեմի:

Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանության հաղթանակը, սոցիալիստական հիմունքներով ժողովրդական տնտեսության զարգացումը հրամայաբար պահանջում էին վերականգնել, ամրապնդել եղբայրական ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու ռազմական դաշինքը, միավորել նրանց ուժերը հակահեղափոխության դեմ մղվող պայքարում և արտաքին քաղաքական հարաբերությունների ոլորտում:

Վ. Ի. Լենինը, դեռևս 1921 թ. ապրիլի 9-ին Գ. Կ. Օրջոնիկիձեին հասցեագրած հեռագրում, պահանջում էր. «ամբողջ Անդրկովկասի համար ստեղծել մարզային տնտեսական օրգան» (Երկեր, հ. 35, էջ 521): Մի քանի օր անց, Կովկասի կոմունիստներին հղած իր հանրահայտ նամակում, Վ. Ի. Լենինը դարձյալ անդրադառնում է կովկասյան հանրապետությունների տնտեսական համագործակցության ու քաղաքական դաշինքի անհրաժեշտությանը, համարելով դա Անդրկովկասում սովետական իշխանության ամրապնդման ու զարգացման, ազգային խաղաղության ապահովման այնպիսի մի օրինակ, «...որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402):

Ղեկավարվելով առաջնորդի ցուցումներով, Ադրբեջանի, Վրաստանի ու Հայաստանի կոմունիստական կուսակցությունները, ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի, կուսակցական ու պետական ականավոր գործիչներ Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս.Մ. Կիրովի, Ալ. Ֆ. Մյասնիկյանի ղեկավարությամբ, եռանդուն գործունեություն ծավալեցին ստեղծելու տնտեսական, քաղաքական, ֆինանսական ու ռազմական միացյալ օրգաններ, նախապատրաստելու հանրապետությունների միավորումը՝ ֆեդերատիվ հիմունքներով:

Անդրկովկասի ժողովուրդների կյանքի այս բախտորոշ կամպանիայի ընթացքում սովետահայ մամուլը, առաջին հերթին՝ նրա կենտրոնական օրգան «Խորհրդային Հայաստան» թերթը հանրապետության կոմունիստական կուսակցության հզոր զենքն էր: Անդրֆեդերացիայի գաղափարների պրոպագանդման, աշխատավոր զանգվածների շրջանում դրա քաղաքական ու տնտեսական նշանակության լուսաբանման, հասարակական կարծիքի ձևավորման համար «Խորհրդային Հայաստանի» միջոցով կուսակցությունը մասսաների շրջանում պրոպագանդում էր լենինյան ազգային քաղաքականության սկզբունքները: Թերթն անդուլ հետևում էր Անդրկովկասի սովետական հանրապետությունների դաշինքի ստեղծման ոլորտում կատարվող քաղաքական-կազմակերպչական աշխատանքի յուրաքանչյուր քայլին, անմիջապես արձագանքում դրան, առաջնորդողներով, տեսական ու գործնական հոդվածներով հիմնավորում Անդրֆեդերացիայի ստեղծման անհրաժեշտությունը, նրա կարևորությունը հայ, վրաց, ադրբեջանական ժողովուրդների համար: Դեռ 1921 թ. գարնանից թերթի էջերում հաստատուն տեղ գտան **Խորհրդային Անդրկովկասում**, **Կյանքը խորհրդային ֆեդերացիայում** մշտական բաժինները, ուր պարբերաբար նյութեր էին հրապարակվում երեք հանրապետություններում տարվող նախապատրաստական աշխատանքների շուրջը:



Ճիշտ է, թերթն ինքն էլ դեռևս կազմավորման շրջանում էր և, ինչպես վկայում է ականավոր ժուռնալիստ-հրապարակախոս Եղիա Չուբարը, «հրատարակվում էր ոտքի վրա, ընդամենը չորս հաստիքային աշխատողով», բայց և այնպես մեծ դեր խաղաց Անդրկովկասի ժողովուրդների քաղաքական ու տնտեսական դաշինքի նախապատրաստման ու ձևավորման համար մղվող պայքարում:

«Խորհրդային Հայաստանը» (որը մինչև 1921 թ. մայիսի 27-ը լույս էր տեսնում «Կոմունիստ» վերտառությամբ) երեք հանրապետություններում ծայր առած միավորիչ շարժմանը առաջին անգամ անդրադարձավ ապրիլ ամսին իր ընթերցողներին հաղորդելով, որ համաձայնագիր է ստորագրվել Անդրկովկասի երկաթուղիների միավորման մասին: Երկու ամիս անց՝ հունիսին, թերթը տպագրեց մի նոր հաղորդում՝ Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի արտաքին առևտրի միավորման, Անդրկովկասի մասշտաբով արտաքին առևտրի միացյալ օրգան ստեղծելու մասին: Պատմական այս ակտը թերթը համարեց «...առաջին քարը, որ դրեցին խորհրդային կառավարությունները կրկին իրար հետ շաղկապելու համար Անդրկովկասի ցիրուցան ժողովուրդներին» (№ 244, 1921 թ.).

Թերթը հատկապես լայնորեն լուսաբանեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի 1921 թ. հունիսյան և հուլիսյան պլենումների որոշումները: Ինչպես հայտնի է, այդ պլենումներն ուրվագծեցին երեք հանրապետությունների միավորման ուղիները: Հունիսյան պլենումի նախօրյակին (հունիսի 5) **Կովկասյան հանրապետությունների կոնֆերանսը** վերտառությամբ առաջնորդողում այն միտքն էր արտահայտվում, որ կոնֆերանսը մի նոր, խոշոր քայլ կհանդիսանա մենշևիկների, մուսավաթականների և դաշնակների քաղաքականության հետևանքով մեկուսացած, իրենց գոյությունը հազիվ պահպանող ժողովուրդների մերձեցման ճանապարհին. այն «Հին ազգայնական պետությունների փլատակների վրա կստեղծի խորհրդային հանրապետությունների միության հզորավոր և անպարտելի ամրոցը»:

Անդրֆեդերացիայի կազմավորման գործնական աշխատանքները լայն թափ ընդունեցին 1921 թ. աշնանը: «Խորհրդային Հայաստանն» այդ օրերին տպագրեց մոտ 3 տասնյակ հոդվածներ, հաղորդագրություններ, պաշտոնական փաստաթղթեր, դրանց մեկնաբանություններ, ինչպես նաև Ալ. Մյասնիկյանի, Գ. Օրջոնիկիձեի, Ս. Մռավյանի, Ա. Երզնկյանի, Ե. Գարագաշի, Դ. Տեր—Սիմոնյանի, Ե. Չուբարի և պետական ու կուսակցական այլ գործիչների, լրագրողների հոդվածները, որոնցում եղբայրական ժողովուրդների ավանդական փոխադարձ կապերի ֆոնի վրա ցույց էր տրվում Անդրֆեդերացիայի նշանակությունը, լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներից ելնելով հիմնավորում ֆեդերացիայի ստեղծման շահավետությունը:

1921 թ. նոյեմբերի 13-ին թերթում զետեղված էր Ալ. Մյասնիկյանի **Կովկասյան հանրապետությունների ֆեդերացիան** հայտնի հոդվածը, որը փաստորեն ֆեդերացիայի ձևավորման վերաբերյալ ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի որոշման նախագծի մեկնաբանությունն էր: Այդ նախագիծը, ինչպես հայտնի է, Օրջոնիկիձեի հանձնարարությամբ կազմել էր Ալ. Մյասնիկյանը: Հոդվածում ականավոր լենինյանը պարզորոշ պատասխանում է այն հարցին, թե ինչո՞ւ է անհրաժեշտ ֆեդերացիան, ո՞րն է դրա քաղաքական, տնտեսական ու միջազգային նշանակությունն Անդրկովկասի ժողովուրդների կյանքում ընդհանրապես և Արևելքի հեղափոխական-ազատագրական շարժման համար՝ մասնավորապես: Ֆեդերացիան, գրում էր Մյասնիկյանը, խորհրդային իշխանությունն Անդրկովկասում կդարձնի «անդրդվելի, միասնական, միահամուռ և իր հիմքում միասնորեն կազմակերպված», թույլ չի տա, որ բուրժուազիան հանկարծակիի բերի նրան, ջոկ-ջոկ հարվածի նրա առանձին միավորներին՝ Ադրբեջանին, Վրաստանին, Հայաստանին: «Դրա համար էլ,— շարունակում էր նա,— անհրաժեշտ է բուրժուական բլոկին հակադրել խորհրդային հանրապետությունների սերտ դաշնակցությունը, առաջին հերթին ընդհանուր քաղաքականության ռազմական և հակահեղափոխության դեմ անմիջական պայքարի ասպարեզներում» (Ալ. Մյասնիկյան, Ընտիր երկեր, էջ 366):

1921 թ. նոյեմբերի վերջին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն հաստատեց Անդրֆեդերացիայի վերաբերյալ Վ. Ի. Լենինի կազմած նախագիծը, որտեղ մեծ առաջնորդը Անդրկովկասի հանրապետությունների ֆեդերացիայի ստեղծման գաղափարը համարում էր սկզբունքորեն ճիշտ և գործնականորեն իրագործելի: Լենինը, վաղաժամ համարելով նրա անհապաղ ու անմիջական իրագործումը, մի ժամանակ առաջարկում էր. «...ֆեդերացիայի հարցն ավելի լայնորեն դնել կուսակցության ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՈՒ ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ քննարկմանը, եռանդուն պրոպագանդել ֆեդերացիայի ՕԳՏԻՆ և այն ԱՆՑԿԱՑՆԵԼ յուրաքանչյուր հանրապետության խորհուրդների համագումարների միջոցով» (Երկեր, հ. 33, էջ 136):

Ելնելով լենինյան այս ցուցումից, 1921—1922 թթ. ձմռանը Անդրֆեդերացիայի հարցը լայնորեն քննարկվում էր մամուլում, բանվորագյուղացիական, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների ժողովներում, հավաքներում, խորհրդակցություններում, որտեղ

հայաստանի աշխատավորները միահամուռ հավանություն էին տալիս ֆեդերացիայի ստեղծման լենինյան գաղափարին:

«Խորհրդային Հայաստանը» պարբերաբար լուսաբանում էր այդ ժողովների ու հավաքների ընթացքը: Դեկտեմբերի 11-ի առաջնորդողում թերթը, օրինակ, գտնում էր, որ անհրաժեշտ է խորհուրդների ընտրությունների նախապատրաստման և անցկացման շրջանում, ինչպես նաև քաղաքային, գավառային և գավառակային խորհուրդների անդրանիկ նիստերում քննարկվող կենտրոնական հարցերից մեկը դարձնել ֆեդերացիայի խնդիրը, «որի շուրջը պիտի հավաքել գյուղացիական ու բանվորական մասսաներին»: Ըստ որում, ՀԿ(բ)Կ Կենտկոմի օրգանը պահանջում էր միավորման գաղափարը պրոպագանդել ոչ թե վերացական, ընդհանուր ֆրազներով, այլ կոնկրետ ապացուցել ֆեդերացիայի անհրաժեշտությունը մեզ համար թե՛ քաղաքական, թե՛ տնտեսական և թե՛ ֆինանսական տեսակետից:

Ամփոփելով համաժողովրդական քննարկման արդյունքները՝ 1922 թվականի փետրվարի 4-ին «Խորհրդային Հայաստանը» գրեց, որ «Հայաստանի ողջ տերիտորիայով անցավ ֆեդերացիային նվիրված զեկուցումների, միտինգների ու ժողովների ալիքը: Ամեն տեղ, առանց բացառության դրվատում, ողջունում էին ֆեդերացիայի գաղափարները: «Հայաստանում չկա մի ձայն, որը դեմ լինի ֆեդերացիային»,— կարդում ենք թերթում:

Ֆեդերացիայի ստեղծման գաղափարի պրոպագանդման երկրորդ ձևը թերթի նախաձեռնությամբ տպագրված առաջնորդող ու տեսական հոդվածներն էին, կոնսուլտացիաները, հարցազրույցները կուսակցության ու կառավարության ղեկավարների հետ, աշխատավորության նամակները, պաշտոնական փաստաթղթերի մեկնաբանությունները, որոնցում, իրոք, սպառիչ պատասխան էր տրվում այն հարցերին, թե ո՛րն է ֆեդերացիայի էությունը, ինչպիսի՛ն կլինի, ի՛նչ կտա այն աշխատավոր զանգվածներին: Դրանցում, միաժամանակ, մերկացվում էին դաշնակցականների, մենշևիկների և մուսավաթականների հակապրոպագանդան, ձախ ֆեդերալիստների ու ազգայնական այլ տարրերի միտումները:

Դեկտեմբերի 2-ին, տպագրելով Անդրֆեդերացիա ստեղծելու դաշնագրի նախագիծը, թերթը, նույն համարի առաջնորդողում, այն համարում է «կարևոր իրադարձություն երեք ժողովուրդների դարավոր բարեկամության վերականգնման և հետագա զարգացման» համար, որը «բխում է մասսաների ցանկությունից ու ընդհանուր շահերից»:

Մի քանի օր հետո «Խորհրդային Հայաստանը» երկու էջ նվիրեց Անդրֆեդերացիայի կազմակերպման խնդրին: Ֆեդերացիայի շրջանակներում Հայաստանն ավելի ռեալ անկախություն կստանա,— գրում էր թերթը,— քանի որ այն հնարավորություն կընձեռի առավել սուր պայքար կազմակերպելու ներքին ու արտաքին հակահեղափոխության դեմ: Ո՛չ Հայաստանը, ո՛չ Վրաստանը և ո՛չ էլ Ադրբեջանը անջատ-անջատ չեն կարող զարգանալ, չեն կարող դիմագրավել բուրժուազիային և արտաքին թշնամուն: Ուստի, կարդում ենք թերթում. «նրանք պետք է կռվեն մեկ սրով, մեկ մետաղից դարբնած զենքով» (№ 252, 1922 թ.): Մի այլ առիթով ՀԿ(բ)Կ Կենտկոմի օրգանը գրում էր, որ ֆեդերացիան Անդրկովկասի հանրապետություններին ամենևին չի զրկում ինքնուրույնությունից: Նրանք հետագայում ևս ինքնուրույն կմնան իրենց բոլոր ներքին գործերում: Ինքնուրույն կլինեն նրանց լեզուն, կուլտուրան, լուսավորությունը, ժողովրդական միլիցիան, դատարանը, առողջապահությունը, հողաշինարարությունը և այլն:

Ֆեդերացիան կտա նաև քաղաքական ուժ, շարունակում է թերթը,— մենք այլևս մեկուսացած չենք լինի արտաքին աշխարհից և մեր միությունը կլինի Արևելքի նախադռան ինքնատիպ փարոսը հեղափոխական բանվորա-գյուղացիության համար (№ 244, 1921 թ.):

Քննադատելով դաշնակցականներին, որոնք Հայաստանի անկախությունը տեսնում էին անջատվածության մեջ, «Խորհրդային Հայաստանը» գրում էր. «Ո՞վ է այսօր ա՛յն խելառ անկախականը, որ կհանդգնի հրապարակով ասելու, թե ազգային անկախ հանրապետությունը, եթե անգամ նա խորհրդային է, կարող է իր ուժերի վրա հենվելով գոյություն պահպանել միջազգային հզոր տատանումների այս շրջանում:

Վերջապես, որ ամենակարևորն է, թերթն առաջին պլանի վրա էր մղում այն միտքը, որ Անդրկովկասը տնտեսական ամբողջական միավոր է և կարող է զարգանալ միայն ընդհանուր կովկասյան տնտեսական համախմբմամբ, որ միայն ու միայն կոլեկտիվ միջոցներով կարելի է օգտագործել երկրամասի բնական հարստությունները— հողը, ընդերքը, մեղմել պատերազմին ճգնաժամը, հուսալի հիմք ստեղծել ժողովրդական տնտեսության վերականգնման, ապա և՝ սոցիալիզմի կառուցման համար: «Ադրբեջանն առանց Հայաստանի արոտատեղիների, Հայաստանն առանց Բաքվի նավթի, Վրաստանն առանց Նախիջևանի աղի, բոլոր այդ հանրապետություններն առանց Բաթումի ապրել չեն կարող»,— ընդգծում էր թերթը:

Ինչպես սովետական իշխանության բոլոր ձեռնարկումները, այնպես և ֆեդերացիայի ստեղծումը, հանդիպեց Անդրկովկասի բուրժուազգայնական կուսակցությունների՝ դաշնակցականների, մենշևիկների ու մուսավաթականների, ազգայնականորեն տրամադրված խավերի ու մանրբուրժուական տարրերի դիմադրությանը: Նրանք շտապեցին զազրախոսել «կովկասյան ժողովուրդների անկախության կորստի», «Ռուսաստանի կողմից Անդրկովկասը ստրկացնելու» մասին, «Մոսկվայի մեկ հրամանագրով Անդրկովկասը վերածված է Ռուսական ծայրագավառի՝ մշակութային ինքնավարությամբ»,— 1921 թ. դեկտեմբերի 1-ին գրում էր Պոլսի դաշնակցական «Ճակատամարտ» թերթը: Անդրկովկասի ֆեդերացիայի գաղափարը բանվորա-գյուղացիական մասսաների գաղափարը չէ, այլ Խորհրդային Ռուսաստանի թելադրանքը,— ասում էին դաշնակցականների, մենշևիկների ու մուսավաթականների՝ Փարիզում կնքված դաշնագրության կողմնակիցները՝ ահարոնյանները, թոփչիբաշևներն ու ժորդանիաները:

«Խորհրդային Հայաստանը» պարբերաբար մերկացնում էր ազգայնականների պրոպագանդայի դասակարգային էությունը, ճշմարտությունն ասում նրանց, ովքեր դեռ հավատում էին «դաշնակցականների ազգասիրությանը», հետևում նրանց: Դաշնակցականները,— գրում էր թերթը,— անկախություն ասելով հասկանում են հայ բուրժուազիայի անկախություն... Նրանց ասած «հայ ժողովուրդ», «անկախ Հայաստան» հասկացությունները պրոլետարական լեզվով նշանակում են հայ սպեկուլյանտների, հայ կապիտալիստների ազատ, անարգել դիկտատուրա... (№ 244, 1921 թ.): Մինչդեռ Անդրկովկասի հանրապետությունների անկախությունը ֆեդերացիայի շրջանակներում, մի այլ առիթով ընդգծում էր թերթը, անկախություն է հակահեղափոխությունից, համաշխարհային իմպերիալիզմից: «Խորհրդային հանրապետություններն ունեն մեկ ընդհանուր վիճակ, ընդհանուր մեկ վիշտ, ընդհանուր երջանկություն և նրանցից յուրաքանչյուրը հավասարապես պետք է մասնակից լինի դրանց, եթե չի ուզում կրկին ընկնել հակահեղափոխության սև ռեժիմի տակ:— Այս բովանդակությամբ ենք հասկանում անկախությունը» (նույն տեղը): Ընդգծելով այն միտքը, թե խորհրդային ֆեդերացիայի ողջ իմաստը Կովկասի ժողովուրդների ազատությունն ու անկախությունն ապահովելն է, առանձին հանրապետությունների բաժան-բաժան ջանքերի միավորումը, թերթը, ի հեճուկս դաշնակցականների, մի անգամ ևս հայտարարում է, որ Անդրֆեդերացիան»... ոչ թե կովկասյան բյուրոյի ցանկությունն է, այլ տնտեսական ու քաղաքական անհրաժեշտություն ու անխուսափելիություն: Դա օբյեկտիվ պայմանների թելադրանք է, որը բխում է ապրելու, գոյություն ունենալու բնազդից» (նույն տեղը):

1922 թ. մարտի 11-ին, երբ հաջորդ օրը, Անդրֆեդերացիայի ստեղծումն օրինականացնելու համար, բացվելու էր Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի կենտգործկոմների լիազոր կոնֆերանսը, «Խորհրդային Հայաստանը» ներթական առաջնորդողում ֆեդերացիայի ստեղծումը հռչակեց Անդրկովկասի ժողովուրդների քաղաքական ու տնտեսական կյանքի նոր դարաշրջան, նոր էջ երեք հանրապետությունների բանվորա-գյուղացիական զանգվածների պատմության մեջ, քանի որ այն «հզորագույն ազդակ» է լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, ժողովուրդների համագործակցության ու փոխադարձ կապերի ամրապնդման:

Հետագայում, հատկապես Անդրֆեդերացիայի տարելիցներին, նրա կենտգործկոմի նիստերի և այլ առիթներով թերթն անդրադառնում էր ֆեդերացիայի գործունեությանը , ցուցադրում նրա մեծ ծառայությունը երկրամասի ժողովրդական տնտեսության վերականգնման, գիտության ու մշակույթի զարգացման բնագավառում, ջախջախիչ հարված հասցնում դաշնակցականների, մենշևիկների ու մուսավաթականների բացահայտ ու գաղտնի պրովոկացիաներին, մերկացնում նրանց՝ Անդրֆեդերացիայի դեմ ուղղված դավերը: 1930 թ. մարտի 14-ին Անդրֆեդերացիայի կազմավորման 8-րդ տարելիցին նվիրված առաջնորդողում «Խորհրդային Հայաստանը» գրում էր, որ Անդրկովկասյան աշխատավորների ամենասերտ համագործակցության այս փայլուն կոթողը՝ Անդրկովկասի ֆեդերացիան, ութ տարի շարունակ, հակառակ սպիտակ էմիգրացիայի, դաշնակ-մենշևիկ-մուսավաթիստական պրովոկացիաների ու նրանց հովանավորող միջազգային իմպերիալիզմի ոտնձգությունների, անեց, դարձավ քաղաքականապես խիստ ամրակուռ և կարճ ժամանակում վերականգնեց քայքայված ժողովրդական տնտեսությունը:

Այսպիսով, «Խորհրդային Հայաստանը» գաղափարական-կազմակերպչական վիթխարի աշխատանք ծավալեց Անդրկովկասի ժողովուրդների քաղաքական ու տնտեսական դաշինքի ստեղծման գործում, անգնահատելի ծառայություն մատուցեց Հայաստանի կոմկուսին և հանրապետության աշխատավորությանը՝ ֆեդերացիայի գաղափարի պրոպագանդման, այդ գաղափարի կենսագործման, աշխատավորության պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու բնագավառներում:

Գ. Ա. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՄԻՏՈՒՄՆԱՎՈՐ ԵՎ ԱՆՊՏՈՒՂ ՄԻ ՎԵՃԻ ԱՌԹԻՎ

Մեր ամսագրի 1968 թ. մայիսյան համարում հրապարակվեց հեղափոխական շարժման մի խումբ մասնակիցների նամակը, որի հեղինակները պատմա-փաստական բնույթի առարկություններ, դիտողություններ ու ճշգրտումներ արին Ա. Ն. Գևորգյանի հոդվածի առթիվ (տե՛ս «Բանբեր Հայաստանի արխիվների», № 1, 1967 թ.):

Խախտելով սովետական մամուլի վաղեմի տրադիցիաները և առաջնորդվելով տեղայնության ու այլ նկատառումներով, արխիվային վարչության պարբերականի խմբագրությունն իր էջերում բանավեճ սարքեց, ջանալով ապացուցել, որ մեր ամսագրում տպագրված վերոհիշյալ նամակը «զրպարտություն» է և անգամ «կույր զրպարտիչների» հարձակում՝ պատմական ճշմարտության ջատագով Ա. Ն. Գևորգյանի դեմ:

Որքան մեզ է հայտնի, արխիվային պարբերականների իրավասությունից բացառված է վիճարկելի հոդվածների հրապարակումը, մանավանդ՝ հեղափոխական շարժման գործիչներին անհիմն կերպով «զրպարտիչներ» որակելը: Ինքնին բնորոշ է, որ արխիվային պարբերականը վերջին տասը տարվա ընթացքում որևէ մեկ այլ խնդրի շուրջ վիճելի հոդվածներ չի տպագրել:

Ելնելով ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի փաստաթղթերի լրացուցիչ ուսումնասիրությունից, որը կատարված է նրա աշխատակիցների կողմից (ավագ գիտական աշխատող, պատմական գիտությունների դոկտոր՝ Ա. Մ. Եղիազարյանի ղեկավարությամբ), խմբագրությունն անհրաժեշտ համարեց վերստին անդրադառնալ նյութված վեճին, համոզված լինելով, որ կարևոր անցքերի և անձանց գործունեության միակողմանի, մերթ հնարովի և թյուր մեկնությունն իրոք տեղ է գտել Ա. Գևորգյանի հոդվածներում:

Մեր տրամադրության տակ ունենալով ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի պաշտոնական կարծիքը հիշյալ բանավեճի վերաբերյալ, ավելորդ չհամարեցինք ընթերցողների ուշադրությանը ներկայացնել այդ առթիվ գրված Ա. Լալայանի «Հերքում հերքմանց» հոդվածը, որը լիովին համապատասխանում է ՄԼԻ-ի մեզ հղած կարծիքին:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ



## ՀԵՐՔՈՒՄ ՀԵՐՔՄԱՆՑ

«Բանբեր Հայաստանի արխիվների» հանդեսի խմբագրությունը, խախտելով մեր և Ա. Ն. Գևորգյանի միջև ծագած գիտական բնույթի բանավեճն ավարտված համարելու մասին 1965 թ. իր որոշումը, վերոհիշյալ հանդեսի 1969 թ. № 2-ում հրապարակում է «Այդպես չի գրվում պատմությունը» խորագրով հոդվածը՝ ուղղված «Լենինյան ուղիով» ամսագրի 1968 թ. № 5-ում տպագրված մի խումբ ընկերների հետ գրած ճշգրտման կարոտ փաստեր մեր նամակի դեմ:

ժամանակաշրջանի պատմական փաստաթղթերը հրապարակ հանելու և ընթերցողների հետ այդ փաստաթղթերով խոսելու փոխարեն «Բանբեր»-ի խմբագրությունը մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի կողմից ստուգված, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի «Լենինյան ուղիով» ամսագրում հրապարակված պատմական դեպքերի ու փաստերի խեղաթյուրումները վերհանող այդ նամակը որակել է որպես զրպարտություն, իսկ նամակն ստորագրողներին՝ թյուրիմացության մեջ ընկած կույր զրպարտիչներ:

«Բանբեր»-ի խմբագրությունը, ստանձնելով Ա. Ն. Գևորգյանի հոդվածներում տեղ գտած դեպքերի ու փաստերի խեղաթյուրումների պաշտպանությունն ու պատասխանատվությունը, հավաստիացնում է, որ Ա. Ն. Գևորգյանի փաստարկումների ճշմարտացիությունն ստուգված է: Խմբագրությունն այդ պնդում է առանց խորհելու, որ «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը մեր նամակը հրապարակել է արված դիտողությունների, փաստարկումների իսկությունը մանրակրկիտ; հանգամանալից ստուգելուց հետո միայն:

Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի կրկնակի ստուգումից պարզվեց, որ «Լենինյան ուղիով»-ում նշված դիտողությունները հիմնված են պատմական իրական դեպքերն ու փաստերը բնութագրող իրական փաստաթղթերի վրա:

Այդ ցույց տալու համար հարկ ենք համարում մեջ բերել Ա. Ն. Գևորգյանի և «Բանբեր»-ի խմբագրության հոդվածներում արձանագրված «փաստարկումները» և այն փաստաթղթերը, որոնցով հիմնավորում ենք մեր դիտողությունները: Այսպես՝ Ա. Գևորգյանը գրում է.

«1917 թվականի վերջերին... Զանգեզուր է գալիս Երեմիա Բակունցը... կապ է հաստատում այն ժամանակ Գորիսի կայազորային զումարտակում զինվորական ծառայության մեջ գտնվող Մ. Մաշուրյանի, Ք. Մկրտչյանի, Ա. Ղարագյոզյանի (ընդգծումը մերն է— Ա. Լ.), Ար. Մայսուրյանի, Ալ. Դադայանի և ուրիշների հետ:

Բակունցին և նրա ընկերներին հաջողվում է կոմունիստական բջիջ կազմակերպել տեղական կայազորային զումարտակում: ...1918 թվականին ընդհատակում գործող այդ բջիջը ռևոլյուցիոն աշխատանք էր տանում ո՛չ միայն զորամասերի, այլև բնակչության լայն զանգվածների մեջ» («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 209):

Իրականում 1917 թ. Զանգեզուր վերադարձած Ե. Բակունցը, Ա. Ղարագյոզյանը, Ք. Մկրտչյանը, 1918 թվականի սկզբներին, Մ. Մաշուրյանի և Ա. Մելիք-Դադայանի հետ, Գորիսում հիմնում են Զանգեզուրի առաջին կոմունիստական բջիջը, որը 1918 թ. վերջերից դառնում է գավառի կոմունիստների համախմբման կենտրոնը[1]:

Գորիսի կայազորային զումարտակը կազմակերպվել է 1919 թվականի աշնանը[2] և Ա. Ղարագյոզյանը այնտեղ չի ծառայել. 1918 թ. հոկտեմբերին նա Գորիսից տեղափոխվել և բնակություն է հաստատել Շուշի քաղաքում[3]:

Ա. Գևորգյանը գրում է. «Խնձորեսկի օրինակով և կազմակերպության անդամների ակտիվ օժանդակությամբ 1919 թ. գարնանը կոմունիստական բջիջներ ստեղծվեցին Տեղ, Ալիղուլիշեն, Կոռնիձոր, Ղարաքիլիսա, Ախլաթյան, Անգեղակոթ, Աղքենդ և այլ գյուղերում» («Բանբեր», 1965 թ., № 3, էջ 198):

Ամբողջովին մտացածին է: 1919 թ. ապրիլի 5-ին կազմակերպված Խնձորեսկի կոմունիստական բջիջն ապրիլի 5-ին[4] և 26-ին[5], մայիսի 5-ին[6], 20-ին[7] և 27-ին[8] ունեցած ժողովներում Գո-

---

1 Տե՛ս Ք. Մկրտչյանի անձնական գործը ՄԼԻ Հայկական ֆիլիալում:
2 ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 34, գ. 91, թ. 14:
3 Տե՛ս նրա անձնական գործը ՄԼԻ հայկական ֆիլիալում:
4 ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 34, ց. 1, գ. 15, թ. 2:
5 Նույն տեղը, թ. 18:
6 Նույն տեղը, թ. 19:
7 Նույն տեղը, թ. 23:
8 Նույն տեղը, թ. 21:

րիսի և Սիսիանի շրջանների՝ թվարկված գյուղերում կոմունիստական բջիջներ ստեղծելու հարց չի քննարկել և այդ գործում ոչ մի մասնակցություն չի ունեցել: 1919 թվականի գարնանը նա զբաղված է եղել դաշնակցության պառլամենտի նախընտրական կամպանիայի դեմ մղվելիք պայքարի և դաշնակցության ընտրական ժողովները բոյկոտի ենթարկելու հարցերով: Իսկ Ա. Ն. Գևորգյանի թվարկած գյուղերում կոմունիստական բջիջներ ստեղծվել են 1919 թ. նոյեմբերից մինչև 1920 թ. հուլիսն ընկած ժամանակաշրջանում, առանց Խնձորեսկի կոմբջջի միջամտության, տեղի կոմունիստների ջանքերով:

Այնուհետև Գևորգյանը գրում է.

«1920 թվականի մայիսի 5-ին Գորիսում կազմակերպվում է ՌՍԴ(բ)Պ Զանգեզուրի ժամանակավոր կենտրոնական կոմիտե» («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 213):

«1920 թ. մայիսին կազմակերպությունների աճի հետևանքով ընտրվեց ժամանակավոր կենտրոնական կոմիտե» (Բանբեր», 1969 թ., № 2, էջ 205):

Մինչդեռ Զանգեզուրի կենտրոնական կոմիտեի արձանագրության մեջ որոշակի ասված է. «1920 թվականի փետրվարի 15-ին տեղի ունեցավ Ռուսաստանի կոմունիստական կուսակցության Զանգեզուրի կազմակերպության կենտրոնական կոմիտեի նիստը ներկայությամբ 12 ընկերների»[9]: Նիստում կենտկոմի նախագահ Ե. Բակունցի զեկուցման մեջ նշված է, որ գործող կենտկոմն ստեղծվել է 1919 թվականին: Իսկ 1920 թ. մայիսի 5-ին տեղի է ունեցել կենտկոմի կազմի վերընտրություն, սակայն ոչ թե «կազմակերպության աճի հետևանքով», ինչպես գրում են, այլ կենտկոմի անդամների, հատկապես Ե. Բակունցի և Ք. Մկրտչյանի միջև ծագած ներքին տարաձայնության, որը խիստ անդրադառնում էր կազմակերպության գործունեության վրա[10]: Բակունցի փոխարեն կենտկոմի նախագահ ընտրվեց Հակոբ Կամարին, քարտուղար Ք. Մկրտչյանի փոխարեն՝ Մ. Մաշուրյանը:

Այսպիսով Զանգեզուրի կոմունիստական կազմակերպության կենտկոմն ստեղծվել է ոչ թե 1920, այլ 1919 թվականին:

Ա. Գևորգյանը պնդում է.

«1919 թ. ապրիլի 5-ին... Խնձորեսկ գյուղում գումարվեց 11 կոմունիստների խորհրդակցություն... Նույն ժողովում ընտրվում է գյուղական պարտիական ընդհատակյա առաջին կոմիտեն...

Հետագայում, 1920 թվականի ամռանը, գավառային կոմիտեի որոշմամբ, պարտիական ընդհատակյա շրջանային կոմիտեներ են ստեղծվում... Ղափանի և Սիսիանի շրջաններում» («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 210):

Մինչդեռ հանրահայտ է, որ Զանգեզուրի գավառում առաջին անգամ կոմունիստական կուսակցության շրջանային կոմիտեներ ստեղծվել են 1920 թ. հոկտեմբերի 5-ին, շրջանային կուսակցական կոնֆերանսներում[11], երբ գավառում հաստատվել էին սովետական կարգեր:

Ա. Ն. Գևորգյանը գրում է, որ 1920 թ. մարտի 21-ին, Շուշի քաղաքը հրդեհելու հետևանքով, «ընդհատակ անցավ ՌՍԴ(բ)Պ Շուշիի կենտրոնը, որտեղ Ա. Հովհաննիսյանի և Հ. Կամարու խմբագրությամբ հրատարակվում էր բոլշևիկյան «Նեցուկ» թերթը («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 214):

Ինչպե՞ս որակել նման պատմագիտությունը. չէ՛ որ ՌՍԴ(բ)Պ Շուշիի կոմիտեի օրգան «Նեցուկ» շաբաթաթերթը լույս է տեսել 1917 թ. օգոստոս—հոկտեմբեր ամիսներին, ընդամենը երեք ամիս և լույս է տեսել ընդամենը ութ համար: Այդ տարիներին Աշոտ Հովհաննիսյանը Շուշիում չէր (տե՛ս Ա. Հովհաննիսյանի անձնական գործը):

Ըստ Ա. Գևորգյանի, 1919 թվականին «Շուշիի պարտիական կենտրոնը և անձամբ Ս. Համբարձումյանը... Աշոտ Հովհաննիսյանի հետ միասին... կոմունիստներ Ս. Օհանջանյանին և այլոց լեռնային արահետներով ուղարկում են Զանգեզուր՝ տեղի բոլշևիկյան կազմակերպություններին հաղորդելու մոտալուտ հաղթանակի լուրը» («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 212):

Ս. Օհանջանյանը ոչ մի կապ և առնչություն չի ունեցել Շուշիի կոմունիստական կուսակցության կենտկոմի և Ս. Համբարձումյանի հետ և 1919 թվականին նրանց սուրհանդակը չի եղել: Ս. Օհանջանյանը կոմունիստական կուսակցության շարքերն է անցել Գորիսի շրջանի Տեղ գյուղում, 1920 թվականին[12]:

9 Տե՛ս կենտկոմի արձանագրության տեքստը ՄԼԻ հայկական ֆիլիալում, Ն. Արզումանյանի չհրապարակված հուշերում:

10 Տե՛ս Կենտկոմի 1920 թ. մարտի 7-ի արձանագրությունը Ն. Արզումանյանի հուշերում կամ ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 34, ց. 1, գ. 15, թ. 15:

11 ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 8, գ. 1 և ֆ. 33, գ. 40:

12 Տե՛ս Ս. Օհանջանյանի անձնական գործը ՄԼԻ հայկական ֆիլիալում:



Ա. Գևորգյանը գրում է. «Զանգեզուրում ծավալվող աշխատանքի մեջ ներգրավվեցին մեծ թվով երիտասարդներ, որոնց գլխավորում էր Զանգեզուրի ընդհատակյա կազմակերպության ակտիվ գործիչ Գուրգեն Մելիք-Դադայանը (Գումեդին), Զանգեզուրի կոմերիտմիության առաջին կազմակերպության հիմնադիրը» («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 222):

Դժբախտաբար չկան փաստաթղթեր, որոնք համոզեն մեզ այս բանում: Ընդհակառակը, կան գրավոր հիշատակություններ, որոնք սավերարկում են հեղինակի այս թեզը: Մեր կարծիքով Գումեդինի ինքնակենսագրությունը լիակատար հիմք չի տալիս հիմնավորելու Գևորգյանի եզրակացությունը:

Տարիներ առաջ, «Լենինյան ուղիով» ամսագրում հրատարակված Հակոբ Կամարի հոդվածում Ա. Գևորգյանը գրել է, որ 1920 թ. ապրիլին Հ. Կամարին Շուշիից գալիս է Զանգեզուր, «Կամարու շուրջն են համախմբվում... Սուրեն Շադունցը, Ավետիք (Սեյրի) Գուլոյանը (ընդգծումը մերն է— Ա. Լ.) և շատ ուրիշներ» (1958 թ., № 2, էջ 111):

Զանգեզուրի ժամանակավոր կենտրոնական կոմիտեն «իր կազմում ուներ Հ. Կամարին, Ք. Մկրտչյանը, Մ. Մաշուրյանը, Ա. Ղարագյոզյանը և Ա. Գուլոյանը (Սեյրի)»[13]:

Մինչդեռ, Ա. Գուլոյանը և Ս. Շադունցը Զանգեզուրի ընդհատակում, ինչպես և Ա. Գուլոյանը և Ա. Ղարագյոզյանը Զանգեզուրի կենտկոմի՝ 1920 թվականի մայիսի 5-ին վերընտրված կազմում չեն եղել[14]: Ա. Գուլոյանը Զանգեզուր է եկել 1920 թ. սեպտեմբերին և փոխարինել Հ. Կամարուն՝ որպես կուսակցության գավկոմի քարտուղար, ուր աշխատել է մինչև նույն թվականի նոյեմբերի 20-ը:

Ըստ Գևորգյանի «Զանգեզուրի աշխատավորությանը վճռական մարտերի նախապատրաստելու գործում խոշոր դեր խաղաց «Կարմիր Զանգեզուր» բոլշևիկյան ընդհատակյա թերթը, որը խմբագրում էր Հ. Կամարին» («Լենինյան ուղիով», 1958 թ., № 2, էջ 112 և «Բանբեր», 1963 թ., էջ 216):

Իրականում Հ. Կամարու խմբագրությամբ «Կարմիր Զանգեզուր» ընդհատակյա բոլշևիկյան թերթ գոյություն չի ունեցել:

Ա. Ն. Գևորգյանը գրում է. «1920 թ. մայիսյան ապստամբության նախօրյակին բոլշևիկյան պարտիայի Զանգեզուրի կենտրոնական կոմիտեն Խնձորեսկ գյուղում հրավիրեց պարտիական բոլոր կազմակերպությունների ներկայացուցիչների ընդլայնած խորհրդակցություն... զեկուցումով հանդես եկավ... Հակոբ Կամարին:

Ապստամբությունը ղեկավարելու համար Հ. Կամարու գլխավորությամբ ընտրվում է ռազմառևոլյուցիոն կոմիտե» («Լենինյան ուղիով», 1958 թ., № 2, էջ 112 և «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 215—216):

«1920 թվականի մայիսի 27-ի լույս 28-ի գիշերը Խնձորեսկի և շրջակա գյուղերի կոմունիստներն ու ապստամբ գյուղացիները ռազմառևոլյուցիոն կոմիտեի նախագահ Հակոբ Կամարու կարգադրությամբ զինված ներկայանում են Խնձորեսկի կոմիտեին: Հրապարակվում է ռազմառևոլյուցիոն կոմիտեի հրամանը... խրամատավորվել Խնձորեսկի գլխավոր ճանապարհների հանգուցակետերում:

Սկսվում է անհավասար կռիվը մի խումբ ապստամբների և զինված զորքի միջև: Ապստամբներից շատերին հաջողվեց ճեղքել մահվան օղակը, պատսպարվել լեռներում ու քարանձավներում: Շատերն էլ ընկան հերոսի մահով կամ գերեվարվեցին» («Բանբեր», 1963 թ., № 1, էջ 218):

Մինչդեռ Խնձորեսկի կազմակերպությանն ուղարկած՝ Հ. Կամարու մայիսի 27-ի թվակիր նամակը (Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում փաստաթղթերի և նյութերի ժողովածու, 1960 թ., էջ 326) ցույց է տալիս, որ կենտկոմը Խնձորեսկում կոմբջիջների ներկայացուցիչների խորհրդակցություն չի հրավիրել, Հ. Կամարին ապստամբության մասին զեկուցմամբ հանդես չի եկել, ապստամբության կոչ չի արել և ռազմահեղափոխական կոմիտեի նախագահ չի ընտրվել: Հ. Կամարին Խնձորեսկի ապստամբությունը համարում էր վաղաժամ և լավ չնախապատրաստված, քանի որ Խնձորեսկ գյուղը ապստամբության դրոշ է պարզել առանց հարևան գյուղերի և գավառի մյուս շրջանների մասնակցության:

Հ. Կամարին, կանգնելով կատարված փաստի առաջ, մայիսի 27-ին դիմեց Սիսիանի կոմունիստներին[15], իսկ մայիսի 28-ին՝ Խնձորեսկի հարևան գյուղերի կոմունիստներին[16], որ մասնակ-

13 Տե՛ս «Բանբեր», 1963 թ., № 1, էջ 213:

14 Տե՛ս նրանց անձնական գործերը ՄԼԻ հայկական ֆիլիալում:

15 ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 25, գ. 2, թ. 1:

16 Նույն տեղը, ֆ. 25, գ. 1, թ. 13:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Էնգելսը և պատմության խնդիրները: *Հոդվածների ժողովածու: Մ.,* «Наука» *հրատ., 1970, 439 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Աշխատանքի գիտական կազմակերպման մասին *(ժողովածու): Մ.,* Политиздат, *1970, 183 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ադրբեջանի մասին *(ժողովածու): Բաքու, Ադրհրատ., 1970, 12, 382 էջ:*

Լենինյան դեկրետները առողջապահության մասին: *1917—1921 թթ.: Մ.,* «Медицина» *հրատ., 1970, 400 էջ:*

Վ. Ի. Լենինը դեմոկրատիայի և օրինականության մասին: *Մ.,* «Мысль» *հրատ., 1970, 319 էջ:*

Վ. Ի. Լենինը և միջազգային կոմունիստական շարժումը: *Մ.,* Политиздат, *1970, 279 էջ:*

Լենինիզմը և մարքսիստական փիլիսոփայական մտքի զարգացումը արտասահմանում: *Թարգմանությունների ժողովածու: Մ.,* «Прогресс» *հրատ., 1970, 399 էջ:*

ՄԻՆԱՍՅԱՆ Ն. Մ.— Լենինյան դիվանագիտության իրավական հիմունքները: *Ռոստով, Համալս. հրատ., 1970, 231 էջ:*

ՄԱԿ-ը և միջազգային տնտեսական գործակցությունը: *Մ.,* «Мысль» *հրատ., 1970, 478 էջ:*

*Գրքում հեղինակները շարադրել են Միավորված Ազգերի կազմակերպության գործունեությունը 25 տարում:*

Համաշխարհային գյուղատնտեսությունը: *Դասագիրք բուհերի համար: Մ.,* «Колос» *հրատ., 1970, 592 էջ:*

Սոցիալիզմի աշխարհը թվերով և փաստերով: *1969: Տեղեկատու: Մ.,* Политиздат, *1970, 157 էջ:*

ԿԱԴԱՐ ՅԱՆՈՇ— Ընտիր հոդվածներ ու ճառեր: *(1964—1970): Մ.,* Политиздат, *1970, 648 էջ:*

ԶՈՐԻՆ Վ. Ս.— Ամերիկայի անըրագադիր արճաները, *Արևմուտքը մեր օրերում մատենաշարից: Մ.,* Политиздат, *1970, 368 էջ:*

ՊԱՊՅԱՆ Կ. Ա.— Մեծ քիմիայի զարգացումը Հայաստանում: *«Հայաստան» հրատ., 1970, 128 էջ:*

*Ներկա գրքում հեղինակը համառոտակի պատմել է սովետական իշխանության տարիներին Հայաստանում քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների զարգացման ու կազմակերպման մասին:*

ԶՈՒՐԱԲՅԱՆ Ս. Շ.— Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացումը 50 տարում: *Ե., «Հայաստան» հրատ., 1971, 348 էջ:*



Адрес редакции,— Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*Գինը 25 կոպ.:*

ՎՖ 03441 *Պատվեր 1007* *Թղթի չափսը* $70\times108^{1}/_{16}$*: Տիրաժ 12.300*

*Ստորագրված է տպագրության՝ 13/VII 1971 թ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՌՈԲՈՏԸ ՀԱՄՐՈՒՄ Է ԴՐԱՄԸ

*Կալինինգրադի առևտրամեքենաշինական գործարանում պատրաստվել է «МС—3» ավտոմատ դրամհաշվիչը: Այս ռոբոտն ամենայն հմտությամբ համրում և դասդասում է և՛ մետաղադրամը, և՛ թղթադրամը: Մեկ րոպեում այն համրում, դասդասում է 2500 ռուբլի, միաժամանակ դարսելով դրանք հավասարապես— 50—100-ական հատ: Դյուրակիր «МС—3»-ը շատ հարմար է առևտրական ձեռնարկությունների, մետրոպոլիտենի, բանկերի, խնայդրամարկղների համար:*

### ՄԻԼԻԱՐԴԱՎՈՐ ԷԼԵԿՏՐՈՆ-ՎՈԼՏԵՐ

*Երկու միլիարդ էլեկտրոն-վոլտանոց տարրական մասնիկներ են ստացվել ՍՍՀՄ ԳԱ Նովոսիբիրսկի ատոմային ֆիզիկայի ինստիտուտում, նոր սարքի միջոցով: Այս էներգիան մոտ երկու անգամ գերազանցում է Ֆրասկատիի (Իտալիա) նույնատիպ սարքերով ստացված և չորս անգամ՝ Փարիզի գիտնականների ստացած էներգիայից: Նման ռեկորդը, հավանաբար, կպահպանվի մինչև տարվա վերջը, երբ սարքը կտա 3,5 միլիարդ էլեկտրոն-վոլտ էներգիա:*

*Սարքավորման ավարտուն, ողջ կարողությամբ գործարկումը հնարավորություն կընձեռի հայտնաբերելու և ուսումնասիրելու միկրոաշխարհի՝ մինչև օրս անհայտ մասնիկները:*

### ՍՄՈԳԱԿՈՒԼ ՍԱՐՔ

*Արդյունաբերական ծուխը և ավտոմեքենաների արտանետած գազերը միանալով մառախուղին, ստեղծում են քաղաքի վրա կախված թանձր, անշարժ ամպամոզ, որը մեծ չարիք է արդյունաբերական քաղաքների համար: Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում ստեղծված է սմոգակուլ սարք: Երբ այն շարժվում է, 30 մետրանոց պլաստիկ խողովակը պտտվում է աղեղնաձև և ցրում սմոգը չեզոքացնող քիմիկատներ: Ցավոք, մեխանիզմի գործողության շառավիղը սահմանափակ է և լիովին պարզված չէ վնասո՞ւմ են արդյոք այդ քիմիկատները մարդուն, թե՞ ոչ:*

### ՎԱՐՈՐԴՆԵՐԻ ՕԳՆԱԿԱՆԸ

*«Մշուշադիտակ»— այսպես է կոչվում այն սարքը, որը մի քանի տարի հետո կօգտագործեն ավտովարորդները մշուշի դեպքում: Սարքը նախազգուշացնում է վարորդին հնարավոր արգելքների մասին: Ինչպես վկայում է այդ սարքն ստեղծող ամերիկացի Դենիել Դիս Արիոն, մշուշադիտակը տեսնում է նույնիսկ ամենախիտ մշուշի միջից: Որպեսզի սարքը կարողանա որսալ ճանապարհի ասֆալտածածկի արձակած ամենաաննշան ջերմային ալիքները և ճանապարհի ցուցանշանները, Դիս Արիոնը «միացրել է» ուլտրամանուշակագույն ճառագայթներ արձակող «մշուշային աչք», որը տեղակայված է ավտոմեքենայի վրա: Մշուշադիտակն ամրացվում է անմիջապես քամի առաջացնող ապակու վրա, իսկ՝ վարորդի խցիկում, հատուկ էկրանի վրա, պարզ արտացոլվում է ճանապարհը:*

### ԱՐԱԳ ԳՈՐԾՈՂ ԼԻՆՈՏԻՊ

*Անգլիական «Կոմպյուտեր ուիկլի» ամսագրի հաղորդմամբ «Լինոտայպ պոլ» ֆիրման Գլազգոյի «Դեյլի ռեկորդ» թերթին տրամադրել է «Լինոտրոն—505C» ֆոտոշարվածքային մեքենան, որը կառավարում է էլեկտրահաշվիչ մեքենան:*

*Մեքենայում տվյալները գետեղվում են թղթե պերֆոժապավենի, մագնիսական ժապավենի կամ մագնիսական սկավառակի միջոցով: Ֆոտոշարվածքային այդ մեքենան մեկ րոպեում շարում է 100—170 տող: Շարվածքի փորձանմուշի արագ ստացման համար կարելի է օգտագործել լրագրի 80 նիշ լայնությամբ 900 տողը մեկ վայրկյանում տպագրող սարքավորումը:*

